*Հրատարակութիւն՝*

*ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ*

*ՀԱՐԱՋԱՏ ՀԱՍՏՈՒԱԾԻ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ*

---

ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏ ՔՀՆՅ. ՊԷՆՆԷԵԱՆԻ

# ՄԱԼԱԹԻՈՅ

# ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

# ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ

ԵՒ ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋԵԱՆԻ

# ՄԱԼԱԹԻՈՅ ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌԸ



ՏԷՐ ԿԱՐԱՊԵՏ ՔՀՆՑ. ՊԷՆՆԷԵԱՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ ԵՒ ՎԱՂՈՒԱՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*Հոգեկան անհուն գոհունակութեամբ և հրճուանքով է որ փոխանակ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան հիմնադրութեան նպատակին հաւատարիմ ու հարազատ պարբերաթերթ (եռամսեայ) Պալ-Ախտիին մէջ մաս առ մաս դնելու, առանձին գիրքով հրատարակութեան կուտանք բնիկ մալաթիացի Տէր Կարապետ Քհնյ. Պէննէեանի (աշխարհական անունով Համբարձում Պէննէեան) Մալաթիոյ հայութեան տեղագրութեան, ազգագրութեան և հասարակական կեանքին վերաբերեալ այս որքա՜ն գեղեցիկ՝ նոյնքան արժէքաւոր գործը*

*Անհուն գոհունակութեամբ ըսինք, անոր համար որ զօրաւոր կասկած ու տարակոյս ունէինք, որ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան անունը շահագործող. մեր սիրելի ընկերութիւնը պառակտող ու երկուքի բաժնող, այլ նաև պատմական պատասխանատուութեան գիտակցութիւնը չունեցող կրթասիրաց մեր հակառակորդ հատուածի ամենատէր առաջնորդները, գիտակցօրէն թէ անգիտակցօրէն, պիտի չորոշէին հանգուցեալ քահանայի այս պատմական աշխատասիրութեան իրենց քով գտնուած երկրորդ օրինակը, զայն տրամադրելով մեր հայրե-*

նակցական կեանքին, սովորութիւններուն և ապրումներուն անծանօթ գրողի մը քմահաճոյքին, իբր թէ «Մալաթիոյ Ամբողջական Պատմութիւն»ը պատրաստելու համար։

Տէր Կարապետ քհնյ. Պէննէեանի ձեռագիրը որպէս առանձին գիրք հրատարակելով, մենք ի խորոց սրտի կը հաւատանք, որ լաւագոյնս յարգած կ'ըլլանք անոր յաւէտ խնկելի յիշատակը, վերջնական կորուստի վտանգէն փրկած կ'ըլլանք ձեռագիրը և իր գործով անմահացուցած կ'ըլլանք զինքը վաղուայ պատմութեան համար։

Ի՞նչպէս ձեռք բերինք այս ձեռագիրը։ Շատեր կը կարծէին ու կը հաւատային որ այս հեղինակին անունով միայն մէկ ձեռագիր կայ որ կը գտնուի Երուսաղէմի Ս. Յակոբայ մատենադարանին մէջ։

Մինչդեռ, ճշմարտութիւնը այն է, որ հեղինակս քահանան իր ժամանակին նկատի ունենալով որևէ կորուստ կամ վտանգ, պատրաստած է իր գործէն երեք օրինակ ձեռագիր։ Առաջինը ղրկած է Կ. Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանին, երկրորդը Ս. Յակոբայ մատենադարանին, Երուսաղէմ, և երրորդը պահած է իր քով։

Մեծ Եղեռնի սեւ օրերուն նախ ինքը նահատակուած է այնքան խժդժօրէն, ապա իր քով պահած ձեռագիրը հրոյճարակ եղած է թուրք բարենիներու ձեռքով։ Երուսաղէմ ղրկած օրինակը ներկայիս կը գտնուի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը պատրաստող, պատմական պատասխանատուութեան զգացումէն զուրկ մարդոց տրամադրութեան տակ։ Իսկ Պոլսոյ Պատրիարքարանին ղրկուած օրինակը մենք ստացանք պոլսարնակ ծանօթ գրագէտ Թորոս Ազատեանէն, Վիեննայի Մխիթարեան Ուխ-

ալն Հայր Եփրեմ Պօղոսեանի միջոցաւ։

Գրագէտ Թորոս Ազատեան եղած է քարտուղար Պոլսոյ Ազգ. Պատրիարքարանին Գէորգ Արք. Արսլանեանի պատր. տեղապահութեան ժամանակ։

Մենք սրտագին շնորհակալութեան խօսք ունինք թէ՛ Հայր Եփրեմ Պօղոսեանին և թէ գրագէտ Թորոս Ազատեանին։

Հաւատարիմ մնալու համար հեղինակին, ձեռագիրը կը հրատարակենք նոյնութեամբ։ Բայց, մանաւորապէս վաղուայ պատմութեան համար թէ օգտակար և թէ անհրաժեշտ կը նկատենք տալ հետեւեալ ծանօթութիւնները.

Առաջին. — Այս ձեռագրին հետ ստացանք Մալաթիոյ Գաւառաքաղաքին վերաբերեալ 41 ձեռագիր էջնոց աշխատասիրութիւն մը, զոր պատրաստած է բնիկ մալաթիացի Գրիգոր Խանձեան 1899ին։ Ցարդ մեզի ծանօթ ամենաընդարձակ գործն է ասիկա իր տեսակին մէջ և արժանի ճշմարիտ գնահատանքի։ Երկու հանգուցեալ հեղինակները ծանօթ եղած են իրարու գործին ու աշխատանքին։ Այս տեսութեան հիմք կը ծառայէ այն փաստը, որ Գրիգոր Խանձեան իր գործին սկիզբը կը վկայէ թէ մանկական բառերը դուրս ձգած է իր աշխատասիրութենէն այն նըկատումով թէ Համբարձում Պէննէեան, որ վերջը եղաւ Տէր Կարապետ քհնյ. Պէննէեան, ապահիչ կերպով պիտի տայ մանկական բառերը իր աշխատասիրութեան մէջ։ Մենք բաղդատեցինք երկու գործերը իրարու հետ և գտանք որ Գ. Խանձեանի պատրաստած գաւառաբարբառը աւելի ճոխ և ընդարձակ է։ Երանի թէ հեղինակը գրած ըլլար նաև մանուկներու, և կամ իր որակումով մանկական բառերը, առանց վերոյիշեալ նկատումին։

Երախտագիտութեամբ յարգած ըլլալու համար այս երկրորդ հեղինակի արդար իրաւունքը, այս գրքի խորագիրը որոշեցինք այսպէս. «Տէր Կարապետ Քհնյ Գէնճեանի տեղագրական եւ ազգագրական ուսումնասիրութիւնը եւ Գրիգոր Խանձեանի Մալաթիոյ Գաւառաբարբառը»:

Երկրորդ.— Ձեռագրին մէջ հանգուցեալ քահանան կը գրէ թէ Մալաթիոյ մէջ կային 800 թուրք և 700 հայ տուներ, ապա 1800 խանութներ։ Այս թիւերը ճիշդ չեն։ Մինչեւ այսօր ալ ընդհանուր այն համակարծութիւնը կայ որ Մալաթիոյ մէջ կային մօտաւորապէս երկու հազար հայ տուներ։ Թուրքերը, արուարձաններն ալ միասին առած, առկէ շատ ու շատ աւելի էին։ Մինչ տուներու թիւը նըւազ գրուած է, խանութներու թիւը չափազանցուած է։

Երրորդ.— Այս գրքին մէջ յիշուած Խնձէրէի Ջուրը Մեծ Եղեռնի սեւ օրերուն Թուրքերու ջարդարար ու աճրագործ կառավարութիւնը հայ վարպետներ ու գործաւորներու տաժանակիր աշխատանքով բերաւ Թրքական զօրանոցին առջեւը։ Այս նոյն բարենի կառավարութիւնը հրէշային անգթութեամբ մը այդ բոլոր վարպետներն ու գործաւորները խողխողեց նոյն Խնձէրէի Ջուրին ակին մօտիկը գտնուող «Կարըլըխ»ին մէջ։

Չորրորդ.— Այս ձեռագրէն դուրս ձգեցինք Թուրքերէն բառերով և Թրքութիւն բուրող հարաներգ մը, չպղծելու համար գրքի նուիրականութիւնը։

Հինգերորդ.— Բացայայտօրէն նկատեցինք որ հանգուցեալ քահանան Թուրք կառավարութեան գազանային կատաղութեան չմատնուելու համար, քանի մը տեղեր դրած է «օղոստափառ կայսր»ը,

«Սուլթան Համիտը և իր կառավարութիւնը», տեղ մը իբր թէ «իր հպատակներուն հանգստութիւն պարգևելուն համար», տեղ մը՝ Եօզըլը խանը իբր թէ Թոփմա գետի ջուրով ոռոգելու համար, տեղ մը՝ հայ դպրոցները իբր թէ քանդուելուն համար, և վերջապէս տեղ մըն ալ, Աղճատաղի ըմբոստ գիւղերէն Քիւրնէն և Քիւրէճիկը գալած ըլլալուն համար։ Այդ բոլորը պէտք է նկատել բանակոյին տրուած տուրք։ Մենք համոզուած ենք, որ եթէ հանդուցեալ քահանան ազատ երկնքի տակ գրէր իր գիրքը, երբեք պիտի անիծէր կարմիր սուլթան Համիտը և անոր յաջորդող բարենինները։

Վեցերորդ.— Թուրք-եգիպտական պատերազմի ժամանակ Հաֆըզ փաշայի բանակը որ Մալաթիա ձըմեռած էր, քանդած ու տաքնալու համար վառած է վարի քաղաքի բազմաթիւ հայոց տուները։ Ատոր համար է որ ըսուած է թէ Թուրք բանակին անցած տեղը արիւն և աւերակ միայն կը մնայ։ Հեղինակը զգուշութեամբ տարբեր բացատրութիւն տուած է Թուրք բանակի այդ բարբարոսութեան, որը (տուներու քանդումն ու այրումը) պատճառ եղած է որ նոր քաղաքի ամառանոցներու մէջ բնակող բազմաթիւ հայեր չվերադառնան իրենց տուները։

Եօթերորդ.— Մենք նկատեցինք, որ հեղինակը մռայլ գոյներով հարսը որպէս կատարեալ ստրուկ ներկայացուցած է և զուցէ մանուկի դէպքերը ընդհանրացուցած է։ Ճշմարտութիւնը այն է որ Մալաթիոյ մէջ հարսերը ծառայելով մէկտեղ իրենց տան անդամներուն, իրենց յատուկ տեղն ու դիրքը ունէին ընտանիքին մէջ և իրաւազրկուած գերիներ չէին, ինչպէս որ էր Թուրքերու մօտ։

Ութերորդ.— Տէր Կարապետ քհնյ. Պէննէեան,

*առաջինը ըլլալով, կարելի է ըսել, սպառիչ կեր-պով տուած է Մալաթիոյ հայութեան տեղագրութեան և ազգագրական կեանքի պատմութիւնը, իր այս աշխատասիրութեան մէջ։*

*Այս գործին արժէքը աւելի կը բարձրանայ մեր աչքին առջեւ և մեր գիտակցութեան մէջ, երբ նը-կատի կ՚ունենանք որ մեր պաշտելի ծննդավայրը ա-ւերակուած է Թուրք բորենիներու կողմէ, և մեր հայրենի սովորութիւնները, բարքերը և աւանդու-թիւնները մահացուօրէն վտանգուած են օտար եր-կիրներու մեր տարագիր կեանքին մէջ։*

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան հիմնական նպատակին հաւատարիմ ու հարազատ հասուածի նա-խաձեռնութեամբ հրատարակութեան տալով այս ար-ժէքաւոր գործը, կը խոնարհեցնենք մեր գլուխնե-րը հանգուցեալ քահանայի յաւէտ խնկելի յիշատա-կին առջեւ, այն խորունկ հաւատքով որ անոր հայ-րենասէր հոգին անհունօրէն կը հրճուի տեսնելով որ իր մտքի աշխատանքը կը փրկուի վերջնական կո-րուստէ, և իբրեւ առանձինն գիրք հրատարակուե-լով կը փոխանցուի պատմութեան, յաւիտեան ապ-րեցնելու համար Մալաթիոյ հայութեան հետ նաեւ իր անմոռանալի անունն ու յիշատակը։*

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան
Հարազատ Կեդր. Վարչութիւն

| Ատենապետ՝ | Քարտուղար՝ |
|---|---|
| Խ. ԵՍԱՅԵԱՆ | Գ. ՄԵԼԻՏԻՆԵՑԻ |

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ ԿԱՄ ՄԵԼԻՏԻՆԷԻ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

### ԴԱՍ Ա.

**Ի՞նչ է տեղագրութիւնը:**

*Տեղագրութիւնը աշխարհագրութեան առաջին մասը կամ սկզբունքն է, որ կը սորվեցնէ երկրիս մի փոքրիկ մասին, այսինքն գիւղի կամ գիւղախմբի գաւառակի և կամ գաւառի և կամ նահանգի մը բընական և այլևայլ բաժանումներն ինչպէս նաև այդ բաժանմանց տրուած անուններն, բնակչաց թիւը, կրօնքը, բնակութեան տեղերը, կառավարութիւնը, ևայլն։*

**Ի՞նչ է գիւղախումբ բառը:**

*Գիւղախումբ (նահիյէ) կ'ըսուի քանի մը գիւղերու իրարու հետ կազմուելուն, որոց վրայ կառավարութեան կողմէ կը կարգուի թոշակաւոր (միւվագգաֆ) կամ պատուակալ ու ձրի (ֆախրի) տեսուչ մը որ կը կոչուի միւտիր։*

**Ի՞նչ է գաւառակ բառը:**

*Գաւառակ (գազա) կ'ըսուի նահանգին այն ստորաբաժանմանը որ գիւղախումբէն վերադաս է։ Գաւառակի կառավարիչը տեղակալ (գայմագամ) կը կոչուի։*

**Ի՞նչ է գաւառ բառը:**

*Գաւառ (լիվա) կ'ըսուի գաւառակէն վերագոյն եղող ստորաբաժանմանը։ Գաւառի կառավարիչը փոխ կուսակալ (միւթասարրըֆ) կը կոչուի։*

**Ի՞նչ է նահանգ բառը:**

*Նահանգ (վիլայէթ) կ'ըսուի կառավարութեան այն մասին որ վերոգրեալ բաժանմունք իրեն կը վերաբերին։ Նահանգի կառավարիչը կուսակալ (վալի) կ'անուանուի։*

## ԴԱՍ Բ.

### Սահման, դիրք, տարածութիւն եւ բաժանում

**Մելիտինէ կամ Մալաթիա գաւառը Թուրքիոյ ո՞ր նահանգին մէջ կը գտնուի:**

*Կը գտնուի ասիական Թուրքիոյ Մամուրէթ-իւլ Ազիզ նահանգի մէջ. այս նահանգը կը բաղկանայ երեք գաւառներէ, որք են.*

*ա. Գաւառ Մամուրէթ-իւլ-Ազիզ կամ Խարբերդ որ երկու գլխաւոր մասերէ կը բաղկանայ. մին բուն քաղաքը որ լերան վրայ է, միւսը քաղաքին հարաւային կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ հարթ ու գեղեցիկ դաշտի վրայ շինուած որ Մէզրէ կ'ըսուի և նորաշէն ու պարտէզներով զարդարեալ է։ Կառավարութեան պաշտօնատունը հոս շինուած է։ Սոյն գաւառակին կը վերաբերին Կապան Մադէն, Արապկիր և Ակն գաւառակները։*

*բ. Գաւառ Տէրսիմ որուն կը վերաբերին գաւառակք Խոզաթ (որ է գաւառակեդրոն), Չմշկածագ, Մեծկերտ կամ Մանազկերտ, Օվաճըգ, Փախ և Քըզըլ Քիլիսէ։*

*դ. Գաւառ Մալաթիա, որուն կը վերաբերին Մալաթիա (որ է Գաւառակեդրոն), Հիւսնը Մանսուր կամ Ատը Եաման, Պինգախ, Քեախթա և Աղճադաղ գաւառակները։*

**Մամ իւլ Ազիզ Սանճագի սահմանը ո՞րն է;**

*Հետեւեալ նահանգներն են. հիւսիսէն ու հիւսիս-արեւելքէն՝ Կարին կամ Էրզրում. հարաւ-արեւելքէն Տիգրանակերտ կամ Տիարպէքիր. հարաւային արեւմուտքէն Բերիա կամ Հալէպ և հիւսիս-արեւմուտքէն Սեբաստիա կամ Սըվազ։*

**Մելիտինէ Մամ իւլ Ազիզի ո՞ր կողմը կը գտնուի**

*Կը գտնուի անոր հարաւ-արեւմտեան կողմը և սահմանն է հիւսիսէն՝ Կապան Մատէն, սահմանակից ունենալով Մելաս (Թօխմա) գետը. հիւսիս-արեւելքէն ու բուն արեւելքէն՝ Խարբերդ, սահմանագիծն է Եփրատ գետը. հարաւ-արեւելքէն Քեախթա, սահմանագիծն է Շիրոյի լեռները. հարաւէն՝ Հիւսնի Մանսուր, սահմանագիծն է Ակտ-իւլ-Խարաբի լըճակը. հարաւ-արեւմուտքէն Պիհէսնի, սահմանագըլուխն է Խարապ Շէհիր և արեւմուտքէն՝ Աղճադաղ, սահմանագիծն է Սուլթան սու գետակ։*

**Մելիտինէ գաւառի ամբողջ տարածութիւնը ո՞րչափ է եւ ի՞նչ բաժանումներ ունի:**

*Մելիտինէ գաւառի ամբողջ տարածութիւնն է* 3757464 *արտավար և կը բաժնուի հինգ գլխաւոր մասանց որք են.*

*ա. Մելիտինէ գաւառակ ունի* 83500 *բնակիչ։*
*բ. Հիւսնի Մանսուր* « » 14000 »
*գ. Պիհէսնի* » » 16000 »
*դ. Քեախթա* » » 13000 »
*ե. Աղճադաղ* » » 13000 »

*Ընդամէնը մէկ գաւառ և* 139500 *բնակիչ։*

առաջինը ըլլալով, կարելի է ըսել, սպառիչ կերպով տուած է Մալաթիոյ հայութեան տեղագրութեան և ազգագրական կեանքի պատմութիւնը, իր այս աշխատասիրութեան մէջ։

Այս գործին արժէքը աւելի կը բարձրանայ մեր աչքին առջեւ և մեր գիտակցութեան մէջ. երբ նըկատի կ'ունենանք որ մեր պաշտելի ծննդավայրը աւերակուած է Թուրք բարբարոսներու կողմէ, և մեր հայրենի սովորութիւնները, բարքերը և աւանդութիւնները մահացուօրէն վտանգուած են օտար երկիրներու մեր տարագիր կեանքին մէջ։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան հիմնական նպատակին հաւատարիմ ու հարազատ հաստուած ի նախաձեռնութեամբ հրատարակութեան տալով այս արժէքաւոր գործը, կը խոնարհեցնենք մեր գլուխները հանգուցեալ քահանայի յաւէտ խնկելի յիշատակին առջեւ, այն խորունկ հաւատքով որ անոր հայրենասէր հոգին անհունօրէն կը հրճուի տեսնելով որ իր մտքի աշխատանքը կը փրկուի վերջնական կորուստէ, և իբրեւ առանձին գիրք հրատարակուելով կը փոխանցուի պատմութեան, յաւիտեան ապրեցնելու համար Մալաթիոյ հայութեան հետ նաեւ իր անմոռանալի անունն ու յիշատակը։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան
Հարազատ Կեդր. Վարչութիւն

Ատենապետ՝ Խ. ԾՍԱՑԵԱՆ

Քարտուղար՝ Գ. ՄԵԼԻՏԻՆԵՑԻ

# ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԿԱՄ ՄԵԼԻՏԻՆԷԻ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

### ԴԱՍ Ա.

**Ի՞նչ է տեղագրութիւնը:**

*Տեղագրութիւնը աշխարհագրութեան առաջին մասը կամ սկզբունքն է, որ կը սորվեցնէ երկրիս մի փոքրիկ մասին, այսինքն գիւղի կամ գիւղախմբի գաւառակի և կամ գաւառի և կամ նահանգի մը բընական և այլևայլ բաժանումներն ինչպէս նաև այդ բաժանմանց տրուած անուններն, բնակչաց թիւը, կրօնքը, բնակութեան տեղերը, կառավարութիւնը, ևւայլն:*

**Ի՞նչ է գիւղախումբ բառը:**

*Գիւղախումբ (նահիյէ) կ'ըսուի քանի մը գիւղերու իրարու հետ կազմուելուն, որոց վրայ կառավարութեան կողմէ կը կարգուի Թօշակաւոր (միւվագգաֆ) կամ պատուակալ ու ձրի (փախրի) տեսուչ մը որ կը կոչուի միւտիր:*

**Ի՞նչ է գաւառակ բառը:**

*Գաւառակ (գազա) կ'ըսուի նահանգին այն ստորաբաժանմանը որ գիւղախումբէն վերադաս է: Գաւառակի կառավարիչը տեղակալ (գայմագամ) կը կոչուի:*

**Ի՞նչ է գաւառ բառը։**

*Գաւառ (լիվա) կ'ըսուի գաւառակէն վերադաս եղող ստորաբաժանմանը։ Գաւառի կառավարիչը փոխ կուսակալ (միւթասարրըֆ) կը կոչուի։*

**Ի՞նչ է նահանգ բառը։**

*Նահանգ (վիլայէթ) կ'ըսուի կառավարութեան այն մասին որ վերոգրեալ բաժանմունք իրեն կը վերաբերին։ Նահանգի կառավարիչը կուսակալ (վալի) կ'անուանուի։*

# ԴԱՍ Բ.

## Սահման, դիրք, տարածութիւն եւ բաժանում

**Մելիթինէ կամ Մալաթիա գաւառը Թուրքիոյ ո՞ր նահանգին մէջ կը գտնուի։**

*Կը գտնուի ասիական Թուրքիոյ Մամուրէթ-իւլ Ազիզ նահանգի մէջ. այս նահանգը կը բաղկանայ երեք գաւառներէ, որք են.*

*ա. Գաւառ Մամուրէթ-իւլ-Ազիզ կամ Խարբերդ որ երկու գլխաւոր մասերէ կը բաղկանայ. մին բուն քաղաքը որ լերան վրայ է, միւսը քաղաքին հարաւային կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ հարթ ու գեղեցիկ դաշտի վրայ շինուած որ Մէզրէ կ'ըսուի և նորաշէն ու պարտէզներով զարդարեալ է։ Կառավարութեան պաշտօնատունը հոս շինուած է։ Սոյն գաւառակին կը վերաբերին Կապան Մատէն, Արաբկիր և Ակն գաւառակները։*

*բ. Գաւառ Տէրսիմ որուն կը վերաբերին գաւառակք Հօզաթ (որ է գաւառակեդրոն), Չմշկածագ, Մեծկերտ կամ Մանազկերտ, Օվաճըգ, Փախ և Քըզըլ Քիլիսէ։*

*գ. Գաւառ Մալաթիա, որուն կը վերաբերին Մալաթիա (որ է Գաւառակեդրոն), Հիւսնը Մանսուր կամ Ատը Եաման, Պինդախ, Քեախթա և Աղճատաղ գաւառակները։*

**Սամ իւլ Ազիզ Սանճագի սահմանը ո՞րն է;**

*Հետեւեալ նահանգներն են. հիւսիսէն ու հիւս. արեւելքէն՝ Կարին կամ Էրզրում. հարաւ-արեւելքէն Տիգրանակերտ կամ Տիարպէքիր. հարաւային արեւմուտքէն Բերիա կամ Հալէպ և հիւսիս-արեւմուտքէն Սեբաստիա կամ Սըվազ։*

**Մելիտինէ Սամ իւլ Ազիզի ո՞ր կողմը կը գտնուի**

*Կը գտնուի անոր հարաւ-արեւմտեան կողմը և սահմանն է հիւսիսէն՝ Կապան Մատէն, սահմանակից ունենալով Մելաս (Թօխմա) գետը. հիւսիս-արեւելքէն ու բուն արեւելքէն՝ Խարբերդ, սահմանագիծն է Եփրատ գետը. հարաւ-արեւելքէն Քեախթա, սահմանագիծն է Շիրայի լեռները. հարաւէն՝ Հիւսնի Մանսուր, սահմանագիծն է Ագա-իւլ-Խարայի լըճակը. հարաւ-արեւմուտքէն Պիհէսնի, սահմանագըլուխն է Խարապ Շէհիր և արեւմուտքէն՝ Աղճատաղ, սահմանագիծն է Սուլթան սու գետակ.*

**Մելիտինէ գաւառի ամբողջ տարածութիւնը ո՞րչափ է եւ ի՞նչ բաժանումներ ունի։**

*Մելիտինէ գաւառի ամբողջ տարածութիւնն է* 3737464 *արտավար և կը բաժնուի հինգ գլխաւոր մասանց որք են.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *ա. Մելիտինէ* | *գաւառակ* | *ունի* | 83500 | *բնակիչ։* |
| *բ. Հիւսնի Մանսուր* | « | » | 14000 | » |
| *գ. Պիհէսնի* | » | » | 16000 | » |
| *դ. Քեախթա* | » | » | 13000 | » |
| *ե. Աղճատաղ* | » | » | 13000 | » |

*Ընդամէնը մէկ գաւառ և* 139500 *բնակիչ։*

# ԴԱՍ Գ.

## Ստորաբաժանումն Մելիտինէ գաւառակի

**Մելիտինէի կեդրոնական մասը (քաղաքը) քանի՞ տուն բնակիչ ունի եւ ի՞նչ ազգերէ կը բաղկանայ**

*Մելիտինէն կը բաղկանայ* 800 *տուն թուրք և* 200 *տուն հայ ազգերէ։ Իր բոլոր թաղերովը ունի* 1800 *խանութ,* 11 *պանդոկ,* 25 *փուռ և թոնիր,* 6 *բաղնիք,* 16 *սրճարան,* 23 *զօրանոց,* 60 *մզկիթ (մեծ և պզտիկ)* 6 *եկեղեցի,* 50 *վարժարան (խառն)։ Հոս է նաև կառավարական պաշտօնատունն, զինուորական հիւանդանոցը, ռազմամթերանոցը, զօրանոցը։*

**Մելիտինէ քաղաքը ե՞րբ եւ որո՞ւ ձեռօք հիմնարկուած է:**

*Մելիտինէ որ յունարէն Մեղրածորան կը նշանակէ, Փոքր Ասիոյ հին և պատմական քաղաքներէն է։ Ասոր հիմնարկութիւնը ոմանք Կաթոռն տիեզերակալ դշխոյին ոմանք ալ հռովմայեցւոց Մելիտոն իշխանին կը վերագրեն։ Ճշգրիտ պատմութիւն չը գտնուելուն ստուգումի կը կարօտի սա։ Սակայն իր մէջէն գտնուած հեթանոսական և քրիստոնէական դարերու հնութիւնք կ՚ապացուցանեն թէ* 4—5000 *տարուան քաղաք է։ Այս քաղաք ի հնումն խիստ մեծ համբաւ և հարստութիւն ունենալուն, մինչեւ մեծազօր Օսմանեանց տիրապետութեան անցնիլը* (1495—1500 *Յ. Ք.*) *մերթ այս, մերթ այն, այսինքն հռովմայեցւոց, ասորւոց, Պարսից իշխանութեանց տակ շատ նեղութիւններ կրած է, ինք յետ այնու մինչ ցօրս ամենայն հանգստութիւն կը վայելէ։*

**Ի՞նչ է հին եւ նոր Մելիթինէն եւ ի՞նչ փոփոխութիւն կամ փոխադրութիւն ունեցած է:**

*Մելիտինէ ի սկզբան գլխաւոր երկու փոփոխու-թիւն ունեցած է. Նոր Մելիտինէի մէջ՝ մին հարա-ւէն դէպի հիւսիս այսինքն Պէկտաղի ստորոտէն Զարմուղա և միւսը արեւելքէն արեւմուտք, այսին-քըն արդի չուկայէն Տէլիքլի Տաղ կամ Չէքմիւկի անուանեալ դաշտը որուն յայտնի ապացոյցն է այն շրջանակին մէջ տեսնուած հին շէնքերու աւերակ-ներն ու հիմերը:*

*Յետ այն երկու փոփոխումներու* (1000—1500 *Ն. Ք. զՔ.) փոխադրուած է զհին Մելիտինէ: Հին Մե-լիտինէն՝ արդի Մելիտինէէն դէպի հիւսիս երկու և Եփրատի աջ եզերքը դէպի հարաւ երեք ժամ հեռա-ւորութեամբ ընդարձակ ու գեղեցիկ դաշտի վրայ շինուած պարսպապատ քաղաք է, ուր բնակած են մինչեւ դարուս առաջին մասի վերջերը:*

**Վերջին փոխադրութիւնն ե՞րբ եւ ի՞նչ պատճառաւ տեղի ունեցած է:**

1958*ին Օսմ. Պետութեան Եգիպտոսի Սուլթա-նին հետ Նիզիպի վրայ ունեցած պատերազմին և ապստամբ քուրդերը նուաճելու համար երբ Հաֆիզ փաշա հրամանատարութեամբ բազմաթիւ զօրաց կուգայ Մելիտինէ կը հասնի, աշնան վերջերն ըլլա-լով՝ կ'ուզէ հոս ձմեռել: Ուստի քաղաքացիք կը հարկադրուին մնալ Ասպուզի*(*) *ընդարձակելով իրենց*

---

(*) Ասպուզի՝ աս պիզի եւ ասպ իզի թուրքերէն բառերու աղաւաղեալն է որոց առաջինը կը նշանակէ «նիտք մերոյ», իսկ երկրորդին համար կ'ըսեն թէ աս-պուզիցիներն Նոր Մելիտինէին, բնաւ նոր քաղաք չեն գաղթեր: Անոնք թէ ձմեռը եւ թէ գարունը մինչեւ քա-

*այգեստան կամ ամառանոցները։*

*Ձմեռն երկար ու սաստիկ ըլլալով թէ զօրքը և թէ մէջի քաղաքացիները կը ստիպուէին իւրաքանչիւրն իրենց բնակած տան մէկ կողմը քակել ու վառել։ Երբ յաջորդ գարունը զօրքը մեկնելէ ետքը քաղաքացիք կ'ուզեն վերադառնալ ու շինել կամ նորոգել տուները, խստիւ կ'արգիլուի կառավարութենէն որ ալ եւս չփոխադրուին ի հին քաղաք։*

*Ցորէ անդի սկսած է նոր քաղաքն վերահաստատուիլ, մեծնալ և բարգաւաճիլ, իսկ հին քաղաքըն իր սքանչելի գեղեցկադրութենէն և հոյակապ ու փառաւոր շէնքերէն մերկացած ու զրկուած, պարիսպի մնացորդքը գետնին հետ հարթ հաւասար եղած՝ աւերակաց մէջէն տխուր տեսարան մը կը պարզէ այցելուին աչաց առջեւ, որովհետեւ ամբողջ շէնքերն փլցնելով և պարիսպն քակելով աւազն ու նիւթը կը փոխադրեն նոր քաղաք՝ տուները շուկան, աղօթարանները եւայլն շինելու։ Հին քաղաքի շէնքերէն դեռ կանգուն կը գտնուին Ս. Ստեփաննոսի եկեղեցին, Ուլուճամի(*) ըսուած փառաւոր մզկիթը, հինգ քարաշէն աշտարակներ, Ալաճա*

---

դաքացւոց իրենց ամառանոցները դառնալու ատեն շատ վնաս կը հասցնեն, անոնց պարտէզներու ծառերը կտր-րել եւ ցանքերը քակելով: Քաղաքացիք այս վնասին առաջքը առնելու համար կառավարութեան դիմելով կը խնդրեն որ ասպուզիցիներն այլ քաղաք գաղթեն: Կառավարութիւնը հրաման կ'ընէ եւ կը ստիպէ միանգամայն որ անոնք այլ գաղթեն: Բայց նոքա ամբողջ մէկտեղ կը պատասխանեն կառավարութեան. *«Ես պիզի, կէթմէզիզ»* ու չեն գաղթեր:

(*) Գործ Իկոնիոյ իշխաններէն՝ Սելճուգեանց:

*Գափու (*) պանդակը, Աղ-Տուրուզ (**) ըսուած պարըսպադուռը, եւայլն:*

**Նոր Մալաթիա քանի՞ մասերու բաժնուած է:**

*Նոր Մալաթիա բաժնուած է հետեւեալ թաղերու որք են. Սանճագտար, Ուճպաղլար, Գըրչուալ, Պէօյիւք Հիւսէյին պէկ, Կիւչիւկ Հիւսէյին պէկ, Գարնուկ, Թէք Մէզար, Ֆիհրատիյէ, Սերայ, Խալէֆ-իւտտին, Սարըճը Օղլու, Եէնի համամ, Գալէմ քեար, Սոլ Քէօփրիւ, Չըքըմ, Ժամկոչ, Խարսողա, Չոթալ պէնտ, Մնաւար, Թարխաօղլու, Սոնտրլեր. Չրթրղ, Գըզըլ քէզիլ, Թէք Չէլմէ, Ճըրճըր Քէօշէ, Չավուշ օղլու, Կէօկ Սօգու, Տապաղխանէ, Նիալի, Ալոթէպէլի, Նիտաթի, Իսկէնտէր, Նուրիձա, Ասլան պէկ օղլու. Իզզէթիյէ, Հաճի Խալիլ Ջամէ, Իչեաղ. Պէնտ Պալը, Չարմուղը, Չուգուր տէրէ. Գախտան Ջամիյէ. Շէյխ Պայրամ, Ապտ-իւլ-Ջաֆա, Չիլեսիզ. Մուսթաֆա փաշա. Հաճի Ապտի Ջամէ, Շիֆա, Սամանլը օղլու, Շաքիր փողոց, եւայլն: Ընդ ամէնը 53 թաղ, որ չորս պողոտաներու եւ բազմաթիւ փողոցներու մէջ զետեղուած են: Այս չորս պողոտաներէն մին կը պարունակէ բոլորովին հայոց տուները, երկուքը տաճկաց եւ մին ալ թէ հայոց եւ թէ*

---

(*) Գործ՝ Սուլթան Մուրատ Չորրորդի զինակիրներէն Մուստաֆա փաշայի:

(**) Աղ-Տուրուզ, Ս. Թորոս անուան աղաւաղեալ ձեւն է: Պարիսպին վերոգրեալ դուռը այս անուամբ կը յիշուի, որոյ ներքին կողմը հրապարակ մը կայ խոշոր քարերով ու ծառերով շրջապատեալ, ուր կը տեսնուի Ս. Թորոս անուն եկեղեցւոյ հետքը: Ասկից 50—60 քայլ անդին է Ս. Ստեփաննոսի եկեղեցին:

տաճկայ, և այս տուները այնպիսի դրութեամբ մ՚է շարուած որ երեք ժամ երկայնութիւն և մէկուկէս ժամ լայնութիւն ունեցող տարածութեան մը ամբողջ տեղը գրաւած է։ Ըսել կ՚ուզենք թէ՝ եթէ այն շըրջանակին մէջ հիմնական շէնքերու հարիւրապատիկն ալ շինուի, դարձեալ կը պարունակէ։ Որովհետև մէն մի տուն իրեն յարակից ունի ընդարձակ պարտէզ մ՚ալ որ որմով կամ ցանկով կցուած են իրարու, որով փողոցներէ շատը անել են։ Եթէ փողոցները բաց ըլլային և հաղորդակցութիւն ունենային իրարու հետ, յայնժամ հինգ վայրկեանէն երթալու տեղ մը 15—20 վայրկեանէն և այսր մոլոր ճամբաներով երթալու դժուարութիւնը չէր ունենար։

**Որո՞նք են քաղաքի արուարձանները:**

Քաղաքի արուարձաններն են Աստֆի, Վարի պանոշի, Պարղուշի, Թէժոէ և Գիլեյիկ այգեգիւղերն։ Այգեգիւղից բնակիչք որչափ որ քաղաքացի կը նըկատուին, բայց իրենք արհեստէ զուրկ և միայն իրենց պարտէզներու և այգեստաններու բերքէն ապրելնուն համար բուն քաղաքացիներէն այգեգիւղացի կը կոչուին։ Թէ քաղաքը և թէ արուարձանք ինչպէս նաև Զըրմըղտի և Քիւնտիպէկ անուանեալ յարակից գիւղերն բոլորովին ժայռալից են, այնպէս որ երբ օտար մը որ հեռուստ կը նշմարէ ու կը դիտէ այն սահման, խիտ և ընդարձակ անտառ մը կը կարծէ և մինչև որ քաղաքին մէջտեղ չմտնէ, որևէ շէնք կամ բնակութիւն ըլլալն ու չըլլալը չի տեսներ ու հասկնար։ Այդ կարծուածը անտառ չէ, այլ պարտէզներ, պարտէզներ որ խճողեալ են քաղցրապտուղ ծառոց, բարտեաց, ուռենեաց հիւաքանչ չորքովը, պարտէզներ՝ որոց բերքն ու արդիւն հազարաւոր ոսկիներ կը կորզեն շրջակայ բոլոր քա-

*դաշտերէ ու գիւղերէ, և պարտէզներ վերջապէս որ Մելիտինէի կեանքն ու ամէն ինչն է։*

## ԴԱՍ Դ.

**Քանի՞ են Կեդրոնին գիւղօրէք եւ ի՞նչ բաժանումներ ունի։**

*Կեդրոնին գիւղօրէք 150ի մօտ են, որ կը բաժնուին հետեւեալ չորս մասանց.*

*ա. Իր շրջակայ գիւղերով գաւառակեդրոն*
*բ. Պալիանի գիւղախումբ*
*գ. Ծուպաս գիւղախումբ*
*դ. Իզօղլու գիւղախումբ*

*Ասոնցմէ միայն Իզօղլուն Մուվազզաֆ մուտիր ունի, միւս երկուքը պատուակալ, այսինքն գիւղապետներու տեսչութեամբն է։*

### ԳԻՒՂՕՐԷՔ ԿԵԴՐՈՆԻ

| ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ | | ժամ |
|---|---|---|
| *Սամանքէօյ,* | *դէպ յարեւմուտք* | 1 |
| *Շահնալխան* | » | 2 |
| *Քէսէրիկ* | » | 2 |
| *Բիրբիրիմլէր* | » | 2.30 |
| *Տէվէճէլօղլու Չիֆթլիկի* | » | 2.30 |
| *Գուշ Տօղան* | » | 4 |
| *Քիւնտիւպէկ* | » | 3 |
| *Չորմքար (8 հայատուն)* | » | 2 |
| *Վերին Գարակէօզ* | *դէպ հարաւ* | 2 |
| *Վարի Գարակէօզ* | » | 2 |
| *Չամուրլը* | » | 1.30 |
| *Վերին Պանազի* | » | 1 |

| | | |
|---|---|---|
| Օրտաւգը (10—15 տուն հայ) դէպ Արեւելք | | 1 |
| Վարի հին քաղաք (10 տ. հայ) դէպ Հիւսիս | | 2 |
| Մեզերէ | » | 1 |
| Դիլէկ | » | 2 |
| Հիլան | » | 2.45 |
| Խաթուն Սուեր | » | 2 |
| Պօռան | » | 3 |
| Գառը Չայըրը | » | 3.30 |
| Հասըրճըլար | » | 3.30 |
| Պիլաիմ | » | 3 |
| Ալիշար | » | 3 |
| Մահմուտի | » | 4 |
| Քիւլլիւ Մազարա | » | 4 |
| Մանտարէ | » | 4 |
| Միխիրի Տէրէսի | » | 7 |
| Ջէրմէկի | » | 6 |
| Քէօմիւշ խան | » | 5 |
| Էկրի Պիւք | » | 5 |
| Թէճիրլի | » | 5 |
| Տէտէ Գալխըն | » | 4 |

Վերջին վեց գիւղերը Մեղասի միւս կողմը (Կապան Մատէնի հողոյն մէջ) գտնուելով՝ մերթ Մատէնի և մերթ Մալաթիոյ վրայ կը փոխադրուին։

Ջըրմըգար և Քիւնտէպէկ գիւղերը, մէկ մէկ աւան կը համարուին։ Երկոցուն այգիք և պարտէզք հաւասար են քաղաքի ամբողջ պարտէզներուն։

## ԳԻԽՂՕՐԷՔ ՊԱԼԽԱՆԻ

| ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ | | ժամ |
|---|---|---|
| Գատիր Ուշաղը | դէպ արեւմտեան հարաւ | 5 |
| Խաշալա | » » | 6 |

| | | |
|---|---|---|
| Սէյտ Թուշտա դէպ արևմտեան կող. | | 5 |
| Ճաֆանա | » | 4 |
| Գարլանկաւն | » | 5 |
| Քիլիսէ | » | 5.15 |
| Մամաղար | » | 5.30 |
| Պուտալա Ուշաղը | » | 6 |
| Ջէյտան | » | 6.30 |
| Կէօզէնէ | » | 7 |
| Մէլէտա Կէլերի | » | 10 |
| Հին գեղ | » | 10 |
| Քէլ Խալիլ | » | 11.30 |
| Չըգլըգ | » | 12 |
| Փորղա վերի գիւղ դէպ Հարաւ | | 8.30 |
| Փորղա վարի գիւղ | » | 8 |
| Ջէրնի | » | 9 |
| Պիւկէզի | » | 9 |
| Քիւրէ | » | 10 |
| Սու Չըրըկի | » | 7 |
| Րաֆա | » | 7 |
| Գուլթարպլար | » | 10 |
| Բիրհէմզիկ | » | 8 |
| Գօզլուգ վերին | » | 5 |
| Գօզլուգ վարի | » | 5 |

## ԳԻԽՂՕՐԷՔ ՃՈՒՊԱՆԻ

| ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ | | Ժամ |
|---|---|---|
| Աթա Պէկ դէպ Հիւս. Արևելք | | 4 |
| Իմամ Օղլու | » | 4.30 |
| Քիլիսիկ | » | 4.30 |
| Րուստ Ուշաղը | » | 4.45 |
| Գուլ Ուշաղը վերին | » | 5 |

| | | |
|---|---|---|
| Գուլ Ուշաղըվարի դէպ Հիւս. Արել. | | 5 |
| Գըզ Մուհամմէտլի | » | 6 |
| Մամուքան | » | 6 |
| Ճեշման | » | 6 |
| Գարա Տէփէ | դէպ Արեւելք | 3 |
| Մէյտանճըգ | » | 6 |
| Հագգ Վիրաը | » | 3·30 |
| Զօլագ Ջամէ Զիֆթլիյի | » | 2·30 |
| Եարմճա Խան | » | 2·30 |
| Գարա Քէօյ | » | 2 |
| Եէնի Քէօյ | » | 3·30 |
| Քէօփէկօրղ Քէօյ | » | 4 |
| Պէքի չիւչ | » | 5 |
| Տիշէրճի Պիւք | » | 4 |
| Քէշօլար | » | 2·30 |
| Պուլղուրը | » | 2 |
| Հաճի Խալիլ Ջամէ Զիֆթլիյի | » | 3 |
| Թըրընճը | » | 3 |
| Սէվսէրէկ | » | 5 |
| Զօլագլը | » | 4 |
| Իսպանտէրէ | » | 5 |
| Թալապին | » | 6 |
| Քրամին | » | 6 |
| Ալխան Ուշաղը | » | 6 |
| Կիւլիւմ Ուշաղը | » | 10 |
| Փօլ Ուշաղը—Խալիքան | » | 8 |
| Սէքիւլէն | » | 7 |
| Ալմալը—Մամուրագ | » | 4 |
| Սէօկիւտ | » | 4 |
| Եափրագլը բունար | » | 4 |
| Պալըգլը տէրէ | » | 4 |

# ԳԻՒՂՕՐԷՔ ԻԶՕՂԼՈՒԻ

| ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ | | ժամ |
|---|---|---|
| Նէրախպան վերին | դէպ յԱրեւելք | 8 |
| Կէվլնիս | » | 8 |
| Պանրի | » | 8 |
| Բօրօթ | » | 8·30 |
| Ծաֆրլար | » | 8·30 |
| Ջէքան | » | 9 |
| Պութան | » | 10 |
| Գօզլուգ | » | 10 |
| Պէքիրան | » | 9 |
| Հանատայ | » | 12 |
| Պրաւօղուն | » | 11·30 |
| Արապ ուշաղը | » | 11 |
| Աղայի ապխուշ | » | 9 |
| Տէպէքէօյ | » | 8 |
| Թէսիրիկ | » | 10 |
| Մանմուստան | » | 9 |
| Մսատիքան վերին | » | 8 |
| Մսատիքան վարի | » | 7·45 |
| Պէնտ | » | 8 |
| Տարը ծպան | » | 8 |
| Ջանադծը | » | 8 |
| Խըրընկայ | » | 7 |
| Գալայ | » | 10 |
| Գըղըլան | » | 8 |
| Կեավուրան | » | 8 |
| Տօսթան | » | 8·30 |

*Բաց աստի կան երեւելի չափ գիւղեր զորս չենք նշանակած, վերագրելով գիւղերէ ոմանց վերաբերեալ-նուն համար։*

*Այս գիւղօրէք շինուած են մեծաւ մասամբ դաշտի մէջ, ձորերու զառեւէջքը եւ լերանց կողե-րու ու բլուրներու վրայ։*

## ԴԱՍ Ե.

### Կլիմայ Եւ Օդ

**Մելիթինէ Գաւառակի կլիման ի՞նչպէս է:**

*Մելիտինէ գաւառակի թէ կեդրոնական մասին (քաղաքին) եւ թէ գիւղերու կլիման է բարեխառն գեղեցիկ եւ առողջարար։ Կլիմայի այս հանգաման-նաց գլխաւոր պատճառն է հիւսիսային հեզասահ եւ զովարար զեփիւռն եւ Տաւրոսի լեռնաշղթայքը որ շրջապատած են ամբողջ գաւառակը, արգիլելով խոր-շակին եւ ցուրտ քամիին որ տուն ուրեք չարժեն իրենց թեւերը այս գաւառակին վրայ, որով հա՛ն ո՛չ ամառը խիստ տաք եւ ո՛չ ձմեռը խիստ ցուրտ կ՚ըլ-լայ, այլ տարւոյն չորս եղանակներն ալ գեղեցիկ պարբերութեամբ մը կը յաջորդեն միմեանց։*

*Բայց պէտք չէ մոռնալ թէ՝ քաղաքին, արուար-ձանաց, ինչպէս նաեւ Դիլեկի, Օրտազըի, վերին Պանազըի, եւայլն օդը՝ բաղդատմամբ միւս տեղերու ծանր է. վասնզի այս տեղեր՝ թէ՛ խիստ ծառալից եւ թէ՛ խոնաւ են. ուստի անպակաս են յօդացաւ, թանչ (մայասըլ), տենդ (սըթմա), աչացաւ եւայլն։*

# ԴԱՍ Զ.

## Լեռնք

**Այս գաւառակին մէջ գտնուած լեռնք [illegible] են:**

*Այս գաւառակի մէջ կայ Տորոսի շղթաներէն հատ մը, այն է «Պէկ տաղ»ը որ ձգուած Հար. Արեւմուտքէն հիւսիսային արեւելք. Քաղաքը սոյն լերան ստորոտն է շինուած:*

*Պէկ Տաղի մշակելի հողը քիչ է. Բայց Քիւնտիւզէկ, Զըրմօրաը, եւ վերին Գանազի այգեկուզացոց այգիներէն, վերջին տարիներս քաղաքին վրայ ալ այգի տնկել ձեռնարկած են:*

*Սակայն սոյն լեռ խիստ անուանի է իր արօտավայրերով եւ մարմանդներով, եւ կաղնեայ և ցրրգիի խիտ ու ընդարձակ անտառներով, եւ բազմերանգ ու երփնագոյն ծաղիկներով ու խոտերով:*

*Գարունը երբ ա՛լ ձիւները հալելով՝ խոտերը իրենց գլուխը գետինէն դուրս հանեն, սոյն լերան վրայ կուգան Ալիքան, Մոլիքան, Թաշըքան եւ Հիւնիւ անուրի վաչկատուններէն (վրանի տակ բնակող) Թարրասար բռուած Քիւրտ ցեղերը, ուր չորս-հինգ ամիս մնալով՝ զով ու առողջարար օդն ծծել, վճիտ եւ սառնորակ աղբերակաց ու առուակաց ջուրերը խմել եւ իրենց բազմաթիւ ոչխար ու տաւարներն արածելէ ետքը, աշնան ցուրտ հովերն փչել եւ ձիւնն գալ սկսելուն պէս՝ կը չուեն կ'երթան իրենց ձմեռանոցները:*

*Սոյն լերան մէջ մի կտոր մեղուարածութիւն կը կատարուի, եւ այս ոչ այն Քիւրտեր են, այլ երբ թթի քաղցուն (չիրէ) կը փռուի տանիքներու վրայ՝ մեղուները չընչելու համար քաղաքացիք ալ*

իրենց փեթակներն կը փոխադրեն, ուր մեղուք հիւթալի ծաղիկներէն առատ մեղր կը պատրաստեն. այնպէս և ոչ մէկ լերան ու անդեայ մեղրը չհամե-մատիր սորա թէ առատութեան և թէ գեղեցկու-թեանը։ Ինչպէս մեղրը՝ նոյնպէս ալ թէ ոչխարաց միսը անուշահամ ու համեղաճաշակ և թէ պանիրն, կարագը և իւղը խիստ անուշանի է։

Տուրոսի այս չղթան նոյն գաւառակի մէջ իր ունեցած ճիւղերու համեմատ մասնաւոր անուն ըն-դունած է, ինչպէս Խալիքանի և Մոլուքանի մէջ Աղ Տաղ ու Գիւրիւճիւկ, Իզօղլըի մէջ Իզօղլու Տաղ, Պալիանի մէջ Մերիամի, և այլն։

Այս գաւառակի լերանց մեծ մասը մարած հը-րաբուխներ են ինչպէս է հին Մելիտինէի արևել-եան կողմը Մալըրայ բլուրը, Քիւնտիւպէկի լեռը, Փարզափի լեռները, Ասի Բունարի լեռը, Ճանպէկի լեռը, և այլն։

## ԴԱՍ Է.

### Բլուրք եւ Հողակոյտք

**Սոյն գաւառակի մէջ ի՞նչ բլուրներ եւ հողակոյ-տեր կը գտնուին:**

Սոյն գաւառակ որ հնագիտաց ուշադրութիւնը գրաւած է, ունի իր տակ և վրան շատ մը հնա-քրքրական նիւթեր պարունակող հողակոյտներ և բլուրներ, որք են՝

Ասլան Տեփեսի — որ հարիւր մէթր բարձրու-թեամբ հողակոյտ մըն է, կը գտնուի Օրտուզըի տակ։ Գագաթը ընդարձակ գերեզմանատուն է հայոց որուն տապանագիրները անընթեռնելի եղած են քարերը մամռացած ըլլալուն պատճառաւ։

Բողաքացիք և Օրտըղրցիք տանիքները ծեփե-
լու համար սար ստորոտէն չուրջանակի փորելով
հողը կը տանին. ասիկա ալ իր պատճառն ու օգու-
տը ունի. այն է թէ՝ հողը բարակախառն ըլլալով
ծեփուելէ ետքը չաղախին խառնուած յարդը կանաչ-
նալէ և անձրևի կաթիլները յարկին տակիջնելէ
կ'արգիլէ։ Սոյն բրուածոց ժամանակ կը գտնուէին
հին հողամաններ, սրաքանձև երկաթներ, արհեստա-
ւորաց գործիքներ, եւայլն։ Ինչպէս նաև այս սա-
րի բլրոյն չրջակայ արտերէ միայն մէջէն գտնուած
էր հնութեանց պատուականագոյններէն զարմանալի
քար մը զոր Պոլիս կոյար. Թանգարանը տարուեցաւ։

Այս քարի երկայնութիւնն էր մէկ մէթր, լայ-
նութիւնը 3/4 և բարձրութիւնը կէս մէթր։ Չորթ
մակարդակին (երես) վրայ ամենայն ճարտարութեամբ
քանդակուած է ձիու լծուած կառք մը. կառքին վը-
րայ աղեղնաւոր մը կանգնած ձիուն առջնակողմը
կեցող առիւծի մը կուրծքին նետ մը արձակած և
վէս պարանոցը ետ դարձնելու ատիճան նետահար
ընելէ զատ, դարձեալ աղեղը լարելով՝ պատրաստ է
նետաձգութեան։ Ձիուն փորին տակ՝ (անշուշտ ա-
ռիւծի երկիւղէն) շուն մը ինքզինքը կը պահուըտէ.
միւս բաց տեղերն ալ լիք է պալարաձև (գալարթ-
մա) հին նշանագրերով։

Երկրորդ խան — Ասիկա ալ Օրտուզրի վրայ ըն-
դարձակ բնարլուր մ'է (այժմ այգիք)։ Ասոր վրայ
ինչպէս իր անունէն ալ յայտնի է, կը տեսնուի ա-
ւերակ պանդակ մը և այլ շէնքեր։ Նոյնպէս գագա-
թը կը տեսնուի բերդի կամ պարսպի մը հիմունքը
որոց բոլորտիքէն և ւերակոյց տակէն յաճախ կը
գտնուին մարդկանց ոսկորոտիք, հողամաններ և
մեծ ու քանդակեալ քարեր։

*Սոյն բլուր՝ (ի հին քաղաք փոխադրուելէ առաջ) Մոլաթիացւոց ամառանոցն ըլլալու ծառայած է։ Բայց յայնժամ՝ ինչպէս հիմա ալ, իր մէջ խմելու գով ջուր չգտնուելով՝ Ս. Լուսաւորիչ վանքի ջուրը ագուգաններով ու փողրակներով իջեցուցած են, որ տակաւին տեղ տեղ կ'երեւան այդ ագուգաններու հետքը։*

*Հիւսիւկ Տէփէսի — Ասիկա ալ Նոր Մէլիտինէէն դէպ յԱրեւելք երեք ժամ հեռաւորութեամբ Պալըը Ջայի ալ եզերքը 90 — 100 մէթր բարձրութեամբ մեկ հողակոյտ (երլմա) մ'է։ Նախորդ դարուն մէջ մարդիկ ոմանք թաղեալ գանձ (տէֆինէ) գտնելու յուսով սար գագաթէն բաւական պեղած ու խորած են, բայց ոչինչ գտնելով ետ քաշուած են յուսահատ։ Անկէց 6—7 տարի առաջ դարձեալ ոմանք, (այս անգամ կառավարութեան արտօնութեամբ) փորձ փորձած և հին ծակերէն ու կողերէն նոր ծակեր ալ բանալով ու խորելով խորշ ընդ խորշ (քէօշէ պուճագ) իջած են մինչեւ յատակը։ Այս վերջիններն ալ նոյնպէս՝ բաց յարոյրեայ (թուճ) ապարէ մը և լայնամանեակ ոսկի մատանիէ մը՝ ոչինչ գտած են։ Կը պատմեն թէ յատակը կը տեսնուէր մարդկանց շատ մը ոսկորտիք, հողամաններ, դիւրաբեկելի (քէվէքէ) քարէ արձաններ, երկաթ նետեր, եւայլն։*

*Քէսիրիկ Տափէսի — Ասիկա ալ նոյնպէս հողակոյտ մ'է 70—80 մէթր բարձրութեամբ որ կը գտնուի քաղաքէն մէկուկէս ժամ հեռի Սամոն գիւղի դաշտին մէջ, որուն աջեւէն կը բղխի վճիտ և առատորակ ջուր մը, այն է՝ «Սըրմա Բունարը»։*

*Այս բլրակի ալ թէ՛ գագաթէն եւ թէ կողերէն շուրջանակի ծակեր բացուած ըլլալն յայտնի է։ Տանիք ծեփելու համար անկէց ալ քաղաք հող կը տանին։*

*Աղ Սէքիւ — Աղ Սէքիւն Ջըրմըգարի գեմը սուր և բարձր բնաբլուր մ'է։ Հովիւք՝ սոյն բլրոյն վրայ բնաւ ոչխար չեն արածեր, զի եթէ երբեք արածին, ոչխարք՝ հոն գտնուած տեսակ մը դառն խոտը ուտելով՝ անմիջապէս կը մեռնին։*

*Աղ Սէքիւի աջ կողմը (գիւղին վերեւ) կը գըտնուի Մեզարլըգ ըսուած բլուրը ուր կայ տեսակ մը աւազախառն ճերմակ հող որ կրնայ համեմատիլ կրի ալխատկութեանն։ Մալաթիոյ տանց բոլոր տեղը սոյն հողով կը ծեփեն։*

*Իմամ Տէփէսի — Սա ջալ հին քաղաքին գլուխ հիւսիսային արեւելք երկու ժամ հեռաւորութեամբ Եփրատի եզերքը (ուր կը խառնուի Գալլը գետակը) բաւական մեծ հողակոյտ մ'է։ Ըստ տեղական աւանդութեան՝ այս բլրոյն ստորոտը գետակին մէջ թաղուած կայ թագաւորի մը գերեզմանը, որ սոյն բըլուրը հաստատած է հոս։*

*Փուչ Տօղան տէփէսի — Այս բլուրը կը գտնուի համանուն գիւղի տակ։ Ասոր բոլորտիքը բազմաթիւ չէնքերու աւերակներ են։ Քանի մը տարի առաջ թէ՛ բլուրը և թէ շրջակայքը խուզելով՝ գտած են հողամաններ, չղթաներ, մուրճ, սալ և արոյրեայ խաչ մը։ Կ'երեւի թէ սոյն վայրի կործանումը այնքան հին չէ։*

*Գօզ Տէփէ — «Գօզ Տէփէ»ն ալ բնաբլուր մ'է նոր Մելիտինէի հիւսիսային արեւմտեան ծայրը։ Մելիտինէի ամենէն առաջուան հաստատութիւնը (հիմնարկութիւն) սոյն բլրոյն վրայ եղած է որուն յայտանի ապացոյցներ են մինչեւ Տէլիքլի տաշ(*) տես-*

---

(*) Տէլիկլի Տաշն է դաշտի մը մէջ մի ճանի խաչար

*նուած հիմերու հետքն, հողամասներու, ենք ի կտորներն ու մնացորդները։*

*Զամուշանկ — Սա ալ նոր Մեքիտինէի հիւսիսա-յին ծայրը բնաբլուր մ'է նոյնպէս, որ չլթայակալ կ'երկարի մինչեւ ի հ.՝ն քաղաք։*

*Այս գաւառակի մէջ սոյն կարգի բլուրք եւ հո-ղակոյտք դեռ շատ են. բայց չուզելով ընթերցողին վրայ զատ զատ գրել, միայն անուններին յիշե-լով կը բաւականանանք. Թիրօթ Գալէսի եւ Զէքան Գալէսի Իգօղլուի մէջ։*

## ԴԱՍ Ը.

### Անգործարան Մարմիններ

### Քար, մետաղ եւ հանք

Մալաթիա գաւառակի մէջ ի՞նչ մետաղ եւ հանք կը գտնուին:

*Կը գտնուին զանազան տեսակ քարեր, բորակ, հանքածուխ եւ պղինձի հանք որք կը գտնուին այ-լեւայլ տեղեր. ինչպէս՝*

*Սալաքար — ի ազնիւ տեսակը կայ Ս. Փրկիչ վանքի հիւսիսային կողմը դաշտի մէջ։ Այս քարով կը ծածկեն ագուգաներ, կը շարեն գուբթները եւ սրահներու յատակը ու թանձրներէն իբրեւ կամուրջ կը ձգեն առուներու վրայ։*

*Երկաթաքար — կը գտնուի Ճեւլաստի Գարաքէօյ անուանեալ գիւղի վերեւ բլրակի մը մէջ։*

---

**եւ ծակ քարեր որ հոս անկականաբար յայնժամ անասուն-ներու պախուրց (եուլար)ները կապելու կը ծառայեն:**

*Ձողաքար — Ցօղաքար — Նոր Մկիթարինէի հա-րաւակողմը Ս․ Կարապետի կիրճին մէջ դիւրափշրե-լի խնկագոյն քար մ'է, զոր երկաթագործք կամ դարբինք կը գործածեն երկաթը երկաթի ու պղն-պատի հետ զոդելու համար։ Այս քարը լաւ մը կը տրորեն ու փոշի կ'ընեն, և երբ երկաթը հնոցին մէջ աղէկ մը կարմրի, բաղադրելիք նիւթը ինչ որ է ան ալ տաքցնելէ ետքը՝ իրարու կը կցեն և փո-շին երկու հպաշէկներուն վրայ ցանելով՝ կ'եռեցնեն արագ կը հալի ու կը մածուցանէ։*

*Ձէչաքար — Ի երկու հանք կայ, մին Ցրէսկէն բլրոյն վրայ և միւսը Թիւնարբաշէկի մէջ։ Ասիկա ոսկրագոյն ու ծակոտկէն ըլլալուն համար՝ ոսկրա-քար (կէմիք տաշ) ալ կ'անուանուի։ Ասիկա կը գոր-ծածուի եկեղեցի․ բաղանիք ևայլն, քարէ չինուա-կամարներուն ու գմբէթները ծածկելու։*

*Հրաքար — Ասկէց կը գտնուի Վերին Պանագրի տակ Խոյաթա վտակի եզերքը, Ս․ Կարապետի կիր-ճին մէջ, Ս․ Փրկիչ վանքի զառիվերը ճամբուն վրայ, Թիւնաբաշէկի ջէմք և այլ քանի տեղեր։ Սոյն քար մութ մոխրագոյն և ուսպատխտան է․ հա-րիւրաւոր տարիներ փոփոխութեան վտանգներու ծա-ռայելով՝ ոչ կը փշրի և ոչ կը ճեղքի։*

*Որձաքար կամ սրճիտաքար — Գլխաւոր երեք հանք կայ ասկէց, որոց մին կը գտնուի Ջամաչանի բլրոյն մէջ։ Կը գործածուի հիմերու և պատերու։ Մին Մոլլայ կամ Կէլինճիկ Տէփէսի մէջ՝ որ կա-մարներու համար լաւ վայելչութիւն ունի, և է կապտագոյն։ Եւ միւսը Ս․ Լուսաւորիչ վանքի ճամ-բուն վրայ Ջէօշնիւկ բուսած տեղն։ Այս վերջինը մարմարինի կարգ կրնայ դասուիլ, բայց չերաս-ւոր ըլլալով այնքան գործածական չէ։*

*Վերջերս աւելի գործածական եղած է Նըխըլը Խանի քարահանքն ալ։*

*Կրաքար — ի ամենայն տեսակէն ըլլալով շատ կը գտնուի Պէկ տաղի վրայ ու այլ և այլ տեղեր։*

*Բորակ — Գաւառակին ամէն կողմը, աւելի Իզօղլուի մէջ առատութեամբ կը տեսնուի։ Ցարդ ոչ ոք ուշադրութիւն դարձուցած չէ ասոր վրայ, ոչ ալ դարձնող կայ. միայն Քիւրտերը, իրենց Թշնամի ցեղերու և գիւղացիներու հետ կռիւ ունեցած ատեն նեղը չիյնալ և ինքզինքնին պաշտպանել և որսորդութեան համար լաւ վառօդ կը պատրաստեն անկէց։*

*Հանքածուխ — Թէև շատ մը տեղեր կը տեսնուին, բայց աւելի Ջարմուղը և Խաթուն Սուի միջև մեծ փշատի (իյտէ)ին դիմացը հոսող առուի եզերքը բաւական մեծութեամբ բլրակի մը բոլորտիքն զուտ հանքածուխ ըլլալն ստուգուած է։ Սակայն և այնպէս մինչև հիմա ասոր ալ վրայ ուշադրութիւն դարձած չէ ոչ անհատներէ և ոչ ալ հանրութենէ։*

*Պղինձի հանք — մը կը գտնուի Ճիհան Պէկի և Խալիքանի լերանց մէջտեղը։*

*Ասկէց առաջ (1862) անուանի Վ. Իզզէթ փաշա (իւր ի Խարբերդ կուսակալութեան) փորձ փորձեց այն հանքը մշակելու. ուստի և բերուեցան վարպետներ ու գործիքներ և երեք տարիի չափ շարունակ գործադրուիլ ու բանեցնելէ ետքը, չենք գիտեր ինչ պատճառաւ երես ի վրայ ձգուեցաւ։ Յետոյ մէկ երկու տարի ալ Եւդոկիացի Ասլանեան Մոնուկ էֆ. շահագործել ուզելով բանեցուց. ան ևս վնասով ետ քաշուեցաւ. սակայն չօգտուիլ ու վնասուիլը ոչ թէ իրենն էր, այլ հանքին վրայ կարգած էր պաշտօնէին անհաւատարմութենէն։*

# ԴԱՍ Թ.

## Գետ, գետակ, վտակք եւայլն

**Մելիտինէ գաւառակէն անցնող մեծ գետը ո՞րն է։**

*Եփրատ գետն է, որ կը սկսի Կարնոյ հարաւային արեւելեան կողմը գտնուող Խաչափայտ (Թիւրք քեաֆի) անուանեալ լերանց մէջի Տումլու լճակէն և Նարտ շրջականերէն։*

*Այս գետը Կարնոյ կողմերը կը կոչուի Սեւ Ջուր (Գարա Սու) որ Դերջանէն, Երիզայէն և Կամախէն (Քեմախ) անցնելով՝ կը մտնէ Ակն գաւառակը և անտի երբ Կապան Մադեն գաւառակը կը մտնէ, հոն՝ Պայազիտի կողմերէն սկսելով՝ Պուլանըղէն և Մուշի դաշտէն հոսող ու Բինկէօլի բազմաթիւ ակներէն և այլեւայլ ակներէ գոյացեալ և կազմեալ Մուրատ գետն ալ իր մէջ ընդունած՝ կուգայ Մելիտինէ գաւառակը. հոս ալ Գուրուհադ գիւղի առջեւ Մելաս գետն իրեն ընկերացուցած՝ հանդարտ և խաղաղ կ՚ընթանայ մինչեւ Քէօմիւր Խան։ Իսկ երբ Քէօմիւր Խանէի նեղ կիրճը կը մտնէ, ապառաժ քարերու և ժայռերու բաղխելով՝ քարուտ ու հոսանուտ խոխոմաց (լեռներու մէջ ջրի նեղ անցք) մէջէն մերթ փրփըրալից ու կարկաչաձայն, մերթ խաղաչալով ու դղրչալով և մերթ արեւելք ու հարաւ օձապտոյտ դառնալով Ծիրոյի և Կերկերի լեռներէն անցած հին Սամուսատը բարեւելով՝ կը հասնի Պասրայի մօտ Քուրնա քաղաքէ ու կը միանայ Տիգրիսի հետ, և Շատ-իւլ-Արապ գետը կազմելով կը մտնէ Պարսից Ծոց ըսուած ծովը։*

*Եփրատի ջուրը գաղջ և կապտագոյն է։ Սակայն սքանչելի համ մ՚ունի զոր կը բերէ Դրախտի երջանկալի պարտէզէն։*

**Եփրատ գետը Մելիտինեցւոց ի՞նչ օգուտ ունի:**

*Սոյն գետ՝ Մալաթիոյ գաւառակին համար գրեթէ անօգտակար է, քանզի խոր կիրճով երկրի մակերեւոյթէն անցնելուն համար: Թէպէտև իր ափանց վրայ կը գտնուին բաւական սերմեր, բայց բնաւ դաշտ մը, արտ մը և ափ մը հող իսկ չ'ոռոգեր. այսպէս նաև իր միջոցաւ (ի սոյն գաւառակ) արտածութիւն կամ ներածութիւն չ'ըլլար. միայն Բալուցի լաստավարք իրենց լաստերը գըսիա (սախտրմա) և փարչ բեռցուցած՝ և ուռկաններնին ջուրը ձգած պատուական և համեղ ձուկեր որսալով կը բերեն Մալաթիա ու կը ծախեն:*

**Եփրատէն անցուդարձ ընելու համար ի՞նչ միջոցներ կան:**

*Եփրատէն անցնելու համար երեք կերպ միջոցներ կան. այսինքն նաւակ, տկլաստ և անցք:*

*Նաւակք՝ երեք հատ միայն կայ յայս գաւառակ որք են հետեւեալք.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *ա). Շէյխ Հասէնի նաւակ* | *հեռ.* | *ի կեդրոնէ* | 5 | *ժամ* |
| *բ) Հարտիի* | » | » | 7 | » |
| *գ.) Իզօղլուի* | » | » | 8 | » |

*Սոյն նաւակներ շինուած են տօսի հաստ տախտակներէ և կը գործածուին երկու թիակով և մէկ ղեկով: Սոցա իւրաքանչիւրը իր մէջ կրնայ պարունակել 40-50 մարդ կամ 20 ձի և կամ երեք չորս կառք: Ասոնցմէ ամենէն բանուկ և շատ օգտաբերն է Իզօղլուի նաւակը. վասնզի թէ Խարբերդի թղթատարը (փոստա) և թէ կառքեր ու կարաւաններ անկից կ'երթեւեկեն, խճուղին անկէ անցնելուն համար:*

*Նաւակներու օրական անցուդարձը առ առաւելն 10 անգամ կ'ըլլայ. զի չի կրնար ուղղակի միւս կողմը երթալ. այլ խոտորնակ և այն ալ հատանքն*

ի վար։

Այս նուակները ամէն տարի թաղապետութեան (պէլէտիյէ) կողմէ աճուրդի (միւզայէտէ) հանելով 15—20—25 հազար դրուշի վարձու կը տրուին։

Տկալատ — Գետեզերքը բնակող ամէն գիւղացի տկալատ (քէլէկ) կ'ունենայ։

Տկալատք՝ կը կազմուին (եթէ կրկին է (չուխտ) 20—25, իսկ եթէ ջոկատ (թէք) 10—15 հատ ուռուցեալ տիկերով որոնք կը հաստատուին ձողերու տակ։ Կրնայ կրել 2000—500 քաշ ծանրութիւնք և ինչպէս ըսինք, սա ալ կը գործածուի անցուդարձի և հոսանքին ի վար ճամբորդելու։

Տկալատք՝ որչափ հոսանքին զօրութեամբ կ'ընթանան, բայց արագընթացութեան և ընթացքի դիւրութիւն և ուղղութիւն տալու համար առաջակողմը կը նստին երկու թիավարք որք կը հսկին ամենայն զգուշութեամբ։

Տկալատով անցուդարձը շատ վտանգաւոր է, մանաւանդ գետին յորդած ժամանակ և հոսանուտ տեղերէ անցնելու միջոցին. որովհետև թէ իր չուրջը որ և է նեցուկ կամ քնարան չունի և թէ պզտիկ հովէ մը անմիջապէս տատանելով՝ կը կորսնցնէ իր հաւասարակշռութիւնը ու կը տապալի։

Ճարպիկ լուղորդք ալ ուռուցեալ տիկի մը վրայ հեծած՝ կամ զոյգ մը ջուրի դդում անօթի (գօլթուգ) տակ անցնելով թէ անցուդարձ կ'ընեն և թէ գետին յորդած ատեն երկժանիով փայտ կը քաշեն դուրս։

Անցք — Եփրատայ ծանծաղ տեղերը միայն կը գտնուին։ Սոյն գաւառակի մէջ երկու անցք կայ, մէկը Քիլիսիկի և միւս՝ Շէյխ Հասէնի առջեւ։ Հազիւ Երկու երեք տարին մի անգամ և այն ալ ա-

*մօտ տեղի կուտան անցնելու։ Ասկից կ'անցնին ուղտերով, ձիերով և դաւն ուրիշ հնարանք։ Աւելորդ չէ ըսել թէ գետէն անցնելու այն միջոցը ամենէ վտանգաւոր է։*

*Գետէն անցնելու ամենաապահով միջոց մը (կամուրջ) կայ եղեր ժամանակաւ Բիրաճ գիւղի առջեւ, յորմէ մենք զրկուած ենք դժբախտաբար, որուն հիմունք դեռ կը տեսնուին ջրոյն մէջ։*

## ԴԱՍ Ժ.

### Մելոս կամ Մելաս (Թօխմայ)

Մելաս գետ ուստի՞ կը սկսի եւ քանի՞ մասերէ կը բաղկանայ։

*Մելաս երկու՝ գլխաւոր մասեր ունի, որոնց մին կը սկսի Պէլվէրէն լեռնէն ու Վերան Շէհիրէն և Տարէնտէի մէջէն անցնելով՝ երբ Աղձատող գաւառակի Այվալը գիւղին առջեւ կը հասնի, միւսն ալ Ազիզիյայի կողմերէն սար ի սար հաւաքուելով կու գայ Կիւրին, և հոն գտնուած վտակն ալ հետ առած՝ գալով հոն կը միանան. ուսկից 5—6 ժամ վարը քիւրտ Ապտալլըի դիմացի Գարա Բունար անուանեալ լճակի ջուրը և Մանտէրէի առջեւ Սուլթան Սու և Պէյլէր Տէրէսի անուն գետակներն ալ առած և միշտ դէպի արեւելք հոսելով ու իր տակ գտնուած բոլոր գիւղերու ջուր մատակարարել, դաշտ և արտեր ոռոգել և ջրաղացներ դարձնել յետոյ, հին Մելիտինէի հիւսիսային կողմը (ինչպէս վերը ըսինք) Գուրուճգ ըսուած տեղը կը խառնուի ի ծոց պատկառելայն Եփրատայ։*

*Մելասի ունեցած օգտաշատութեան և գեղեցիկ յատկութեանը համար տեղացւոց մէջ առած է դար-*

*ձած թէ՛ «Մելասի ափանց վրայ ոսկի ալ ցանես, կը-
բուսնի»։ Ո՞ւր մնայ հապա անուշահամ բրինձը, լեցուն և բազմահատ ցորենի, գարիի և այլ սերմըն-
կաց հասկերը, նա մանաւանդ պիւքերու (եզերց) վրայ հասած խոշոր և քաղցր ձմերուկներն ու սե-
խերը, որոնցմէ երկու հատը հազիւ կրնայ բեռցուիլ անասնոյ մը։*

*Մելասի գովելի յատկութեանց մին է նաեւ իւր ամենայօրդ ժամանակն իսկ հեզասահ ընթանալով՝ ձմբարդներու անցք տալը։*

*Մելասի մէջ կայ մինչեւ 50 լիտր կշռող համեղ ձուկեր։*

*Հին Մելիտինէի (*) երկու ժամ վարը իր վրայ շինուած է նշանաւոր կամուրջ մը 40 կամարներու վրայ հաստատեալ, որուն հիմա միայն 20—25 աչ-
քերէն ջուր կ'անցնի։ Այս երեւելի և հոյակապ կա-
մուրջը զոր տեղացիք «քըրք կէօզ» կ'անուանեն, վրայէն դարեր անցած լինելով ոեւէ արձանագրու-
թիւն ցոյց չ'տար։ Բնակչաց աւանդութեանը նայե-
լով և ըստ ամենայն հաւանականութեան տասր շի-
նութիւնը Սուլթան Մուրատ Դ․էն եղած է։*

*Մելասի աջ կողմը Կապան Մատէն գաւառակի Արղաւան գիւղախմբին վերաբերեալ 10 ժամ երկայ-
նութիւն, 4—5 ժամ լայնութիւն կամ 20000 արտա-
վար տարածութիւն ունեցող բերրի և բարգաւաճ դաշտ մը կայ Եազըլը Խան Եազըսը անուամբ։ Սոյն դաշտը ուսգելու համար յիշեալ գետէն գիծ մը բա-*

---

(*) Կ'ըսուի թէ՝ Մելիտինէն իր անունը հաւանակա-
նաբար այս գետէն առած է։ Ինչպէս որ յայտնի ալ է Մելաս—Մելոս անունէն որ յունարէն «մեղր եւ սեւ ջուր» ըսել է։

*նոյ և տիպար ագարակ մը շինելու մասին պէտք եղած քարտէսն պատրաստուած է քանի տարիէ ի վեր: Կը յուսանք թէ շնորհիւ մեր Օգոստափառ կայսեր՝ կ'իրականանայ սոյն բազմօգուտ ձեռնարկը:*

## ԴԱՍ ԺԱ.

### Սուլթան Սու գետակ

**Ուսկից կը սկսի Սուլթան Սուն:**

*Կը սկսի Նոր Մելիտինէէն դէպ յԱրևմուտք* 12 *ժամ հեռաւորութեամբ և Աղճադաղ գաւառակի Փօլադ ու Ցնոգլը գիւղերու վրայի լեռնէն: Անկից երկու ժամ վարը Մէլէտ Տէրէսիի ջրոյն խառնուելով և միշտ դէպի հիւսիս հոսելով՝ Խօրէն, Արգա և Խօրիւչկի եազըսը անուանեալ դաշտերու առջևէ անցնելու ատեն իր տակ գտնուած գիւղերու ջուր բաշխել, ջրաղացք դարձնել, արտեր և պարտէզներ ոռոգելէ ետքը՝ կը միանայ Մելասի հետ:*

*Սոյն գետակի վրայ՝ մին Մէլէտ Քէօփրիւսի և միւսը անկէ* 6 *ժամ վարը Չիֆթլիկ Քէօփրիւսի անուամբ երկու հսկայ կամուրջներ գտնուելուն պէս մին Նէքիւքէի և միւսն Եազմուրլըի առջև երկու փլած կամուրջներ կան: Ասոր մէջ ալ կայ համեղ ձուկ:*

*Այս գետակ իրարմէ կը զատէ Մալաթիան և Աղճադաղը որ է սահմանագլուխ երկուց գաւառակաց:*

*Բաւական տարիներ առաջ վախմաչուք Սարրի Մուստաֆա փաշա վերայիշեալ դաշտերը ոռոգելու համար այս գետակէն գիծ մը զատած՝ բայց պէտք եղած տեղերը ջուր չկրնար իջեցնելով՝ երեսի վրայ կը ձգէ և դաշտը Աղճադաղի մօտ գտնուելով՝ բնակիչք համանուն լեռներէն կը նեղուին ու կը*

*ցրուին, որով տաուն ալ բոլորովին կը խանգարի. բայց (1866ին) անուանի հազարապետ Բահմի պէկն գալով յիշեալ քիւրտերը նուաճած և հին տաուն նորոգել ու բարեփոխելով 18 ժամուան տեղ ջուր բջուցած, և այլեւայլ գիւղերէ մարդիկ բերելով չատ մը գիւղեր հաստատած է։ Շինած է նաև քաղաքէն յԱրեւմուտք 6 ժամ հեռաւորութեան վրայ ընդարձակ զօրանոց մը որ հիմա Դ. Զօրաբանակի (օրտու) իրաւասութեան տակ Ձիֆթլիքի Հիւմայուն (արքունի ագարակ) անուամբ ծանօթ է։*

*Այս ագարակ խիստ նպաստամատոյց եղած է մել՛ րինեցւոց, առատ բրինձ, ցորեն եւայլն արտադրելով։*

## ԴԱՍ ԺԲ.

## Էլէմէնցիկ եւ Շահնա գետակ

Ուսկի՞ց կը բղխի Էլէմէնցիկ վտակը։

*Էլէմէնտիկն ալ նոյնպէս կիւրրանէն դէպ Արեւմուտք 4 ժամ հեռաւորութեան վրայ գտնուող բլրոյ մը տակէն կը բղխի երկու երեք աղօրիք դարձնելու չափ առատութեամբ և իր տակ գտնուած արտերն ոռոգելով կը խառնուի Մեղրաի մէջ։*

*Էլէմէնտիկի մէջն ալ կայ մանր այլ համեղ ձուկ. սակայն ջուրը գաղջ ու անհամ է, չամբուռ և ճահճային վայրէ բղխելուն համար։*

*Շահնախան — Աս ևս կը բղխի քաղաքէն նոյնպէս դէպ հարաւային արեւմուտք 3 ու կէս ժամ հեռաւորութեամբ Խաչովայի ճամբուն վրայ Ինէկ*

*Բունարը (*) անուանեալ մի քանի ակներէ երկու աղօրիք դարձնելու չափ առատութեամբ, և երկու ժամ վարը մաս մ'ալ Տէր Մէօրէնէն իր մէջ ընդունելով կը խառնուի Մելասին։*

*Նոյն վտակէն յերկուստիք մտնուոր առուներու կուառներ (պէնտ) կը դառնուին Հաճի Ջամլ, Սիւլիւկ Ջաոէ, Նարըճը Ջաոէ եւայլն, թուրք գերդաստանաց բրինձի ընդարձակ արտերն ոռոգելու համար։ Որքան այս կուառներու պատճառաւ ջուրը նուազանայ, այնքան և ալ աւելի կ'առատանայ վտարը այլեւայլ ակներէ ջուր հաւաքելով։*

*Առաջին Ըշըգլար գիւղի առջեւ, երկրորդ Մօրէ Կէտիւկըի ճամբուն վրայ երկու փլած կամուրջներ տեսնուելէ զատ, Շահնախան Քէօփրիւսը անուամբ, որուն վրայ շինուած է նաև համանուն պանդոկը, յորմէ ընդունած են գիւղը և վտակը իրենց անունները։*

## ԴԱՍ ԺԳ.

### Պալլը, Շիշման եւ Պէքիրանի վտակը

**Սոյն երեք վտակներ քաղաքին ո՞ր կողմը կը գտնուին։**

*Պալլը վտակ՝ կգտնուի քաղաքին արեւելեան կողմը երեք ժամ հեռու և կը սկսի Սէվէրէկի լեռ-*

---

(*) **Տեղական առասպել մը կ'ըսէ թէ՝ «տարի մը առատ ձիւն գալով, երբ գառուներ ձիեներ կը հայէին եւ ջուրերն ալ խօսք կը յուզէին, ջրոյն լճացից հետ վերոյիշեալ ջրոյն մեծ ակէն կով մը եւ պզտիկէն ալ հորթ մը դուրս կուգան»։**

**Կ'երեւի թէ հաւանականաբար ծակերուն մեծութեան եւ պզտիկութեան համեմատ անուն տուած են ասոր։**

*նէն տասի անտի ու դէպի հիւսիս օձապտոյտ հոսե-լով՝ աղօրիքներ դարձնել և անթիւ արտեր ու դաշտ ոռոգելէ ետքը՝ Խմամ օղլու գիւղի առջեւ կը Թա-փի յԵփրատ գետ։*

*Պալլը վտակ գործուն կը յորդի և ամառը կը նուազանայ։ Իր մէջ ունի մանր ձուկեր։ Այսու ա-մենայնիւ այս վտակ՝ իր տեսակին մէջ, ամենէ օգ-տամատոյցն է։*

*Ճիշման — Մամուքանի վտակ — Սա եւս քաղա-քէն 7 — 8 ժամ դէպի Արեւելք գտնուած արտերն ոռոգել և ջրաղացներն դարձնելէ ետքը՝ կը խառ-նուի Եփրատի մէջ։*

*Պէքիրանի վտակ — Ասիկա ալ նոյնպէս քաղա-քէն դէպ Արեւելք 9 ժամ հեռաւորութեամբ Իզօղ-լուի Փօղլուզ ըսուած գիւղի մէջէն և շրջականերէն ժողուելով՝ մի քանի աղօրիք դարձնել և արտեր ջրելէ ետքը՝ 1 ու կէս ժամ վարը կը խառնուի Եփրատի։*

## ԴԱՍ ԺԴ.

### Տէր Մէսիհ (*) — Տէրմէ սու

**Ո՞րն է քաղաքին մէջէն անցնող ջուրը։**

*Տէր Մէսիհն է։ Մելիտինէի այս ամենապատուա-կան ջուրը՝ կը բղխի քաղաքին հար. արեւմտեան կողմը 4 ժամ հեռաւորութեան վրայ գտնուող Գասիր Ուշաղի լերան ստորոտէն քառակուսի լայնանիստ աղբիւրէ մը և յարակից մի քանի ակներէ 3—4 ա-*

---

(*) Տէր Մէսիհ՝ «Տէյր-իւլ-Մէսիհ» արաբական բա-ռի աղաւաղեալն է որ կը նշանակէ «Բնակարան կամ տուն Քրիստոսի»։ Ջուրը իր անունն առած է համանուն եկեղեցիէն (այժմ աւերակ) որ իր գլուխը շինուած է։

*նալ և տխուր ագարակ մը շինելու մասին պէտք եղած քարտէսն պատրաստուած է քանի տարիէ ի վեր։ Կը յուսանք թէ շնորհիւ մեր Օգոստափառ Կայսեր՝ կ'իրականանայ սոյն բազմօգուտ ձեռնարկ։*

## ԴԱՍ ԺԱ.

### Սուլթան Սու գետակ

Ուսկից կը սկսի Սուլթան Սուն:

*Կը սկսի Նոր Մելիտինէէն դէպ յԱրեւմուտք 12 ժամ հեռաւորութեամբ և Աղձատաղ գաւառակի Փօլատ ու Ցնտգլը գիւղերու վրայի լեռնէն։ Անկից երկու ժամ վարը Մէլէտ Տէրէսիի ջրոյն խառնուելով և միշտ դէպի հիւսիս հոսելով՝ Իօրէն, Արգա և Իօրիւշկի եզերքը անուանեալ դաշտերու առջեւէ անցնելու առեն իր տակ գտնուած գիւղերու ջուր բաշխել, ջրաղացք դարձնել, արտեր և պարտէզներ ոռոգելէ ետքը՝ կը միանայ Մերասի հետ։*

*Սոյն գետակի վրայ՝ մին Մէլէտ Քէօփրիւսի և միւսը անկէ 6 ժամ վարը Չիֆթլիկ Քէօփրիւսի անուամբ երկու հսկայ կամուրջներ գտնուելուն պէս մին Նէքիւքէի և միւսն Եաղմուրլըի առջեւ երկու փլած կամուրջներ կան։ Ասոր մէջ ալ կայ համեղ ձուկ։*

*Այս գետակ իրարմէ կը զատէ Մալաթիան և Աղձատաղը որ է սահմանագլուխ երկուց գաւառակաց։*

*Բաւական տարիներ առաջ վսեմաշուք Սագըրի Մուստաֆա փաշա վերայիշեալ դաշտերը ոռոգելու համար այս գետակէն գիծ մը զատած՝ բայց պէտք եղած տեղերը ջուր չկրնար իջեցնելով՝ երեսի վրայ կը ձգէ և դաշտը Աղձատաղի մօտ գտնուելով՝ բնակիչք համանուն լեռնցիներէն կը նեղուին ու կը*

*ցրուէին, որով տաուն ալ բոլորովին կը խանգարի. բայց (1866ին) անունանի հազարապետ Բահմի պէյին գալով յիշեալ քիւրտերը նուաճած և հին տաուն նորոգել ու բարեփոխելով 18 ժամուան տեղ ջուր բերուցած, և այլեւայլ գիւղերէ մարդիկ բերելով չափ մը գիւղեր հաստատած է։ Շինած է նաև քաղաքէն յԱրեւմուտք 6 ժամ հեռաւորութեան վրայ ընդարձակ զօրանոց մը որ հիմա Դ. Զօրաբանակի (օրտու) իրաւասութեան տակ Չիֆթլիկի Հիւմայուն (արքունի ագարակ) անուամբ ծանօթ է։*

*Այս ագարակ խիստ նպատակայարմար եղած է մել[illegible]ինեցւոց, տաւար բրինձ, ցորեն եւայլն արտադր[illegible]ովը։*

## ԴԱՍ ԺԲ.

### Եղեմենցիկ եւ Շաննա գետակ

Ուսկէ՞ց կը բղխի Եղեմենցիկ վտակը:

*Եղէմէնտիկն ալ նոյնպէս կեդրոնէն դէպ Արեւմուտք 4 ժամ հեռաւորութեան վրայ գտնուող բլրոյ մը տակէն կը բղխի երկու երեք աղօրիք դարձնելու չափ առատութեամբ և իր տակ գտնուած արտերն ոռոգելով կը խառնուի Մելասի մէջ։*

*Եղէմէնտիկի մէջն ալ կայ մանր այլ համեղ ձուկ. սակայն ջուրը գաղջ ու անհամ է, չամբուռ և ճահճային վայրէ բղխելուն համար։*

*Շահնախան — Աս ալ կը բղխի քաղաքէն նոյնպէս դէպ հարաւային արեւմուտք 3 ու կէս ժամ հեռաւորութեամբ Խաչովայի ճամբուն վրայ Ինէկ*

*Բունարը (*) անուանեալ մի քանի ակներէ երկու աղօրիք դարձնելու չափ առատութեամբ, և երկու ժամ վարը մաս մ'ալ Տէր Մէսիհէն իր մէջ ընդու-նելով կը խառնուի Մելասին։*

*Սոյն վտակէն յերկուստիք մտանուար առունե-րու կուռաններ (պէնտ) կը զատուին Հաճի Չայը, Սիւլիւկ Չայէ, Նարընը Չայէ եւայլն, թուրք գեր-դաստանաց բրինձի ընդարձակ արտերն ոռոգելու համար։ Որքան այս կուռաններու պատճառաւ ջուրը նուազանայ, այնքան և ալ աւելի կ'առատանայ վա-րը այլեւայլ ակներէ ջուր հաւաքելով։*

*Առաջին Ըշըգլար գիւղի առջեւ, երկրորդ Մօ-րէ Կէտիւկըի ճամբուն վրայ երկու փլած կամուրջ-ներ տեսնուելէ զատ, Շահնախան Քէօփրիւսը ան-ուամբ, որուն վրայ շինուած է նաև համանուն պանդոկը, յորմէ ընդունած են գիւղը և վտակը ի-րենց անունները։*

## ԴԱՍ ԺԳ.

### Պալլը, Տիւման եւ Պէֆիրանի վտակը

**Սոյն երեք վտակներու քաղաքին ո՞ր կողմը կը գտնուին։**

*Պալլը վտակ՝ կգտնուի քաղաքին արեւելեան կողմը երեք ժամ հեռու և կը սկսի Սեվէրեկի լեռ-*

(*) Տեղական առասպել մը կ'ըսէ թէ՝ «տարի մը առատ ձիւն գալով, երբ գարունը ձիւները կը հալին եւ ջուրերն ալ խիստ կը յորդին, ջրոյն ընթացից հետ վերոյիշեալ ջրոյն մեծ ակէն կով մը եւ պզտիկէն ալ հորթ մը դուրս կուգան»։

Կ'երեւի թէ հաւանականաբար ծակերուն մեծութեան եւ պզտիկութեան համեմատ անուն տուած են ասոր։

*նէն սառի անտի ու դէպի հիւսիս օձապտոյտ հոսե-լով՝ աղօրիքներ դարձնել և անթիւ արտեր ուղղակի ոռոգելէ ետքը՝ Խմամ օղլու գիւղի առջեւ կը Թա-փի յԵփրատ գետ։*

*Գայլը վտակ գորանը կը յորդի և ամառը կը նուազանայ։ Իր մէջ ունի մանր ձուկեր։ Այսու ամենայնիւ այս վտակ՝ իր տեսակին մէջ, ամենէ օգ-տակարագոյն է։*

*Ճիշման — Մամուքանի վտակ — Սա եւս քաղա-քէն 7 — 8 ժամ դէպի Արեւելք գտնուած արտերն ոռոգել և ջրաղացներն դարձնելէ ետքը՝ կը խառ-նուի Եփրատի մէջ։*

*Պէքիրանի վտակ — Ասիկա ալ նոյնպէս քաղա-քէն դէպ Արեւելք 9 ժամ հեռաւորութեամբ Իզօղ-լուի Փօղլուզ ըսուած գիւղի մէջէն և շրջականերէն ժողուելով՝ մի քանի աղօրիք դարձնել և արտեր ջրելէ ետքը՝ 1 ու կէս ժամ վարը կը խառնուի Եփրատի։*

## ԴԱՍ ԺԴ.

### Տէր Մէսիհ (*) — Տէրմէ սու

**Ո՞րն է Խարբերդին մէջէն անցնող ջուրը։**

*Տէր Մէսիհն է։ Մելիթինէի այս ամենապատուա-կան ջուրը՝ կը բղխի քաղաքին հար. արեւմտեան կողմը 4 ժամ հեռաւորութեան վրայ գտնուող Գառիր Ուշաղի լերան ստորոտէն քառակուսի լայնանիստ աղբիւրէ մը և յարակից մի քանի ակներէ 8—4 ա-*

---

**(*) Տէր Մէսիհ՝ «Տէյր-իւլ-Մէսիհ» արաբական բա-ռի աղաւաղեալն է որ կը նշանակէ «Բնակարան կամ տուն Քրիստոսի»։ Ջուրը իր անունն առած է համանուն եկեղեցիէն (այժմ աւերակ) որ իր գլուխը շինուած է։**

*զօրիք դարձնելու տարիձան տատանութեամբ. բայց դեռ քարընկէց մը չգացած՝ այլեւայլ ակներէ ալ հաւաքուելով, անցք չտալու տարիձան կ'ուռի ու կը յորդի։*

*Տէր Մէսրոպի մէկ մասը Քիւնտիւպէկի վրայ Գա-բուլդ ըսուած տեղէն ծորակով մը կը զատուի Ինկէ Բունարբի հետ բրինձի արտերն ջրելու. իսկ միւս մասը Քիւնտիւպէկի և Զըրմըզաըի վրայէն մինչև Գիլէյիկ դէպի հիւսիս. և անտի արուարձանաց ու քաղաքի մէջէն մինչև Գօ՛րտակ դէպ Արեւելք հո-սիլ և մէն մի քայլափոխի ծորակներով ու փող-րակներով հարիւրաւոր արտերն այգիներն պարտէզ-ներն ու ածուները ոռոգել, աղօրիքներն դարձնել և ամբողջ տուներու պէտքէն աւելի ջուր մատակա-րարելէ ետքը՝ նորէն դէպի հիւսիս դառնալով՝ Հին Մելիտինէի տակը Բունար Պաշը վտակն ալ հետ ա-ռած՝ դարձեալ արտ ու դաշտ ոռոգել ու աղօրիք դարձունելով կ'երթայ փարիլ պատկառելույն Եփ-րատայ։*

*Այս զարմանալի ջուրը, Քիւնտիւպէկի մէջ մըտ-նելէն մինչև մէկ ժամ տեղ իր երկար ունի հրաշ-քանչ ճերմակ գիծ մը, այնպէս, որպէս թէ՝ դեղե-րու բաղադրութեամբ բարակ և դաւաղանաձեւ (*)*

---

(*) Կ'աւանդուի թէ՝ Յիսուսի առաքելոց մէկը (հաւանականաբար Ս. Թադէոս առաքեալ) համբորդու-թեան ատեն կը ծարաւի բայց մօտերը ջուր չգտնելով այստեղ կուգայ ու կը պառկի։ Պառկելու ատեն իրեն կ'ազդուի որ գաւազանը գետինը զարնէ. արթննալուն պէս կը զարնէ գաւազանը, ջուրը կը բղխի եւ ի նշան հրաշից սոյն գիծը կը մնայ ջրոյն երեսը գաւազանաձեւ։

կաթնատուտ մը կը հոսի ջրոյն մէջտեղէն, և յիշ-
եալ միջոցը անցնելէ ետքը՝ գիծն ալ կ'անյայտանայ։

Եթէ ըսենք, առանց այս զարմանալի Ջրոյն Մե-
լիտինէն չէ՛ Մելիտինէ, չենք սխալիր․ վասնզի երբ
ըստ սովորութեան տարին անգամ մը (6—7 օրի չափ)
տուն մաքրելու համար զինքը ուրիշ կողմ կը
դարձնեն, գրեթէ քաղաքին բոլոր աղբիւրները,
ջրհորները և մինչև անգամ տուները կը ցամքին,
այնպէս որ շատ տունն կը հարկադրուին 15 վայր-
կեան տեղ ջուր բերելու երթալ․ ինչ կ'ըսեմ 15
վայրկեան տեղ ջուրի երթալ․ Մելիտինեցիին համար
15 օրուան ճամբայ է։ Եւ ուստի Տէր Մէսիհը կ'ան-
ուանեն «Մայր Ջրոցն Մելիտինէի»։

Ասոր ցրտութեան և ազնուորակութեանը մասին
ի՞նչ ըսենք հապա զի այն աստիճան պաղ է որ
մարդ կարող չէ պապակը զովացնելու համար ձեռ-
քով խմել քանի որ ձեռք չի դիմանար։ Սա յատ-
կութիւնն ալ ունի, այսինքն ի՛նչպէս է գլուխը
բղխած տեղն, նոյնպէս ջինջ ու ցուրտ կը հոսի
5 — 6 ժամուան տեղ։ Չ'ունի նաև իր մէջ որևէ ջր-
ային կենդանի, որ սա ալ առանձնաշնորհեալ յատ-
կութիւն մ'է։

Մին Քիւնտիւպէկի վերև և միւսը Ասաֆիի
վրայ, առաջինը Եէլ Քէօփրիւ և երկրորդը Զաթալ
Քէօփրիւ անուամբ երկու հսկայ կամուրջներ կան
որ Տէր Մէսիհը ասոնց տակէն կ'անցնի․ և բաց աս-
տի իր վրայ շինուած կան 50 — 60 հատ քարաշէն և
փայտաշէն կամուրջներ։

# ԴԱՍ ԺԵ.

## Խորաթա եւ Բունար Պաշը վտակը

**Խորաթա վտակը ուսկի՞ց կը սկսի:**

*Խորաթան՝ կը բղխի վերին Պանազըրի մե-րայի այգիներու մէջէն՝ մեծ մայր «Զիյարէթ»ի մը տակէն ակնէ մը եւ միւս մասն անոր հաւաքուելով։*

*Խորաթան՝ գարունը Տէր Մեսիհի չափ առատու-թիւն ունի բայց ամառը կը նուազի։*

*Գիւղէն քիչ մը վարը, ասկէ մէկ երկու առու-ներ քաղաքին վրայ երթալու համար կը զատուին. իսկ մնացածը՝ ինչպէս իր անունէն յայտնի է, կ'երթայ մինչեւ Չաթալ Քէօփրիւ ուր բոլորելով Տէր Մէսիհը ու անոր տակէն անցնելով եւ իր տակ գտնուած արտերն ջրելով՝ Թօփ Սէօկիւտի ջրոյն հետ միացած. կը մտնէ Մելասի մէջ։*

*Խորաթայի ջուրը թէեւ վերերը շատ անոյշ եւ պաղ է, բայց վարը կը կորսնցնէ ու կը տաքնայ։*

*Բունար Պաշը վտակն ալ Ս. Լուսաւորիչ եւ Ս. Փրկիչ վանքերու կեդրոնի «Անարծաթ բժիշկ» վան-քի տակէն կը բղխի 4—5 աղօրիք դարձնելու չափ առատութեամբ։ Կը դարձնէ մի քանի ջրաղաց ու կ'ոռոգէ բազմաթիւ արտեր (*) եւ Օրտուզուի բնակ-չաց ջուր մատակարարելէ ետքը, նոյն գիւղի վրա-յէն հոսելով՝ Հին Մելիտինէի տակը կը միանայ Տէր Մէսիհի հետ։*

*Այս վտակի մէջ ալ կայ մանր ձուկերու վառա*

---

**(*) Կ'ըսուի թէ այս ջրոյն ոռոգած արտերէն բեր-քերէն ժամանակաւ մասնաւոր բաժին կ'առնուէր վան-քերուն։**

*(բազմութիւն) զորս որսալն արգիլեալ է. սակայն ջուրը գաղջ և անհամ է, Ելեմէնտրիկի պէս չամփուած ըլլալուն համար։*

*Ասոր ալ վրայ ձգուած կայ մի քանի մեծ կամուրջներ, որոց մին է Ս. Փրկիչ վանքի ճամբուն վրայինը։*

## ԴԱՍ ԺԶ.

### Այլ գովելի ջուրեր

Մելիտինէի մէջ ա՛լ ի՞նչ ջուրեր կան յիշատակութեան արժանի։

*Մելիտինէի թէ՛ կեդրոնական մասին (քաղաքին) և թէ արուարձանաց մէջ դեռ կան շատ մը այլ ջուրեր, որ ի միջի այլոց գովելի են հետեւեալք.*

*Գարնակ — Քառնակ (*) որ կը բղխի քաղաքին վերի ծայրը Պէկ Տաղըի ստորոտէն բազմաթիւ ակներէ պղպջալով և քարընկեց մը վարը կը խառնուի Տէր Մէսիհի մէջ։*

*Աղ Բունար — Սա ալ շուկային մէջ Հէպէչ Օղլու պանդոկի առաջքը երկու աղբիւրներէ կը վազէ ջինջ, ցուրտ և սպիտակ ու բաւական առատութեամբ, ուր կայ նաև մի կամարաշէն աղբիւր՝ որ առանցմէ վար չի մնար։*

*Խոշրուկ Բունարը — կը բղխի կառավարութեան պաշտօնատան ետեւի ակներէն մէկուն մէջէն աղօրիք մը դարձնելու չափ առատութեամբ որ շուկայի կեդրոնէն անցնելով՝ հոն պէտք եղած մաքրութիւնը*

---

(*) Գարունը հոսիլ եւ ամառը ցամքելուն համար «Գարնակ» իսկ 40է աւելի ակներէ բղխելուն համար «Քառնակ» կ'ըսուի։

տալէ ետքը՝ Դըզլար Տէյիրմէնի ըսուած ջաղացն դարձնելով ու Զարմուզըի պարտէզներն ու արտերը ջրելէ յետոյ՝ կը խառնուի Խաթուն Սուի մէջ։

Քաջ Լպարիտ — կը գտնուի Մայր Եկեղեցւոյ մօտ Սարրաֆեաններու փողոցին տակը առուին ձախ եզերքը։

Քաջ Լպարիտ — պատմ. անուն մ'է որ ջրոյն տըրուած է։ Կը պատմեն թէ՝ Կիլիկիոյ դիւցազուններէն Լպարիտ՝ Մալաթիա գալով՝ պտըտելու ատեն սոյն համանուն ջրոյն կը հանդիպի, յորմէ խմելով զովութեան և անուշութեանը համար իր անուամբը կ'անուանէ զայն «Քաջ Լպարիտ»։

Ալթուն Գաշըգ — կը բղխի Թէձաէի այդեստանեաց տակէն աղուգայէ մը յատակ, մաքուր և սառնորակ, զոր արժանի է անուանել «Ոսկի Գդալ»։

Տովուզը Բունար — Գիլէյիկի տակը Քիլիսէ Պայըրը ըսուած տեղը վէմերու տակէն խոխոջալով կը վիժէ՝ բաւական առատութեամբ։

Սոյնպէս անուանի են չուկայի մէջ Սէօկիւտլիւ և Չինարլը Մզկիթներու, Սարաճ Պազարըի, Սուլու Գայֆէի, Հայոց Մայր Եկեղեցւոյ կրկին աղբիւրներըն. Մալ Տաշը, Սըթմա Բունարը, Տիշպըտար Բունարը, Զավուշ օղլու, Գայնարճա եայլն անուանեալ ջուրերը։ Եւ վերջապէս այս քաղաքի մէջ չկայ մըզկիթ մը, եկեղեցի մը, պանդոկ մը և տուն մը որ իր առանձին աղբիւրը կամ ջրհորը չունենայ։

# ԴԱՍ ԺԷ.

## Պապ Ուխտի

**Ձեր արժէր որ Պապուխտին ալ՝ նկարագրէիք:**

*Պապուխտի կամ Շուկոնի (*) է այն գալարագեղ զբօսավայրը որ կը գտնուի քաղաքին արեւմտեան ծայրը։ Պապուխտին երկուք է վերին ու վարի անուամբ։ Ջուրը կը սկսի վերին Պապուխտի մէջ գետինէն պղպջալէն, քարերու փաթէն գլգլալէն և բղխելով բազմաթիւ ակներէ, որ երբ վարի Պապուխտի հասնի, ամբողջ ջրերէն վտակ մը կազմուած և քաղաքացւոց 10էն աւելի ջրաղացներն դարձնելով և չորս հինգ ժամուան տեղ ընդարձակ մարգագետիններն ոռոգելով կը ժամանէ Մելասին։*

*Ի՜նչ սքանչելի վայր մ'է սա Պապուխտին հապա. ի՜նչ սքանչացում, ի՜նչ զարմացում ու զուարթութիւն կ'ունենայ մարդ՝ երբ ամռան ամէն երեկոները սոյն վայրի գալարեաց վրայ արեգակը կը սփռէ իր ոսկեճաճանչ և շառագոյն երփը, աւելի կիւրակէները զբօսաշրջիկներու այդտեղ կատարած ուրախութեանն կը դիպի, զի հոն կը տեսնէ երիտասարդաց կայտառ դէմքերն խումբ խումբ, մին այս ակունքը շրջապատած՝ միւսը աղբիւրի մը գը-*

---

(*) Շուկենի՝ աղաւաղեալ է «Ծուկայ ունի» բառէն. վասնզի Քաղաքը Պող Տեփէ բլրոյն վրայ գտնուած ատեն՝ այստեղ շինուած է եղեր ճուկան որ յետ փոփոխման եւ ի հին Քաղաք փոխադրման, երբ նոր Քաղաք կուգան, կ'այցելեն այս ջրալից աւերակ ճուկան ալ, որով վերջին սերունդք այս վայրը կ'անուանեն «Պապ Ուխտի», այսինքն պապերու հին բնակութեանց վայր:

լուխը նստած, մէկը ծաղկալից և կանանչազարդ ա-
ռուի եզերքը չորցած և միւսը ծառալից պարտէզի
մը տաշտուղեղ (գեղեցիկ ձգերով) հովանոյն տակ
ընկղմանած աւաշ կը կարդան, ղազալ կը կանչեն,
կ՚երգեն ու կը պարեն օղիի շիշն ու բաժակը իրար
զարնելով։ Մինչ այս մինչ այն Թռչունք եւ հրա-
պուրեալ կը սկսին իրենց դայլայլիկն ու ճռուողիւն-
ներն խառնել այդ կենդանի ձայներուն։

. . . . . . . . . . . . . . . . . .

Զմոռնանք ըսել որ մի քանի գիւղերու, ինչ-
պէս են Բէլխալիլի, Կէօզէնէի, Ճափանայի աղբիւր-
ներն ալ գովելի են։

Հետաքրքրական և ուշադրութեան արժանի ջուր
մ՚ալ Շահնախանի վերեւ կայ որ համանուն վանքի
մէջ կը թափի։ Այս հետաքրքրական և զարմանա-
լու կէտը սա է որ ջուրը միշտ կը հոսի բայց տար-
ւոյն մէջ միայն 8—10 օր, այսինքն Ապրիլ ամսոյ
սկիզբէն մինչեւ 10րդ օրը մանր և միօրինակ ձուկ
դուրս կուգայ ակնէն, յետոյ բնաւ չերեւնուր, ո-
րուն կենդանի վկաներ են այդ աւուրց մէջ ձուկ
որսալու համար կողովներով հսկող բազմութիւնը։

## ԴԱՍ ԺԸ.

### Այրեր եւ նշանաւոր վայրեր

**Այս գաւառակի ո՞ր տեղերը այրեր կը գտնուին:**

Քաղաքին հարաւային արեւելեան կողմը Ին
Տէրէ անուանեալ կիրճի մէջ մի քանի բնական և
արհեստական այրեր կան։ Այս այրերու մէջ երթա-
լու համար մահը յանձն առնելու է․ զի այրերը
բարձր դահաւանդի մը հարթ երեսը գտնուելով նեղ

*և վտանգաւոր ճամբայով մը կ'ելլուի, զոր տեղացիք «Մազէ կամուրջ» կ'անուանեն և ով որ այդ կամուրջէն անցնելով մեծ այրը* (*) *կը մտնէ, «բարեխօսութեամբ Ս. Լուսաւորչին իր մուրազը կ'առնէ» կ'ըսեն։*

*Հայք՝ այս վայրը այցելելու համար մասնաւոր օր մը որոշած են. այն է Զատկի Նոր Կիւրակէն։ Այդ օր խուռն բազմութեամբ հոդ դիմելով կը ջանան որ «Մազէ կամուրջէն» անցնին, աւելի անծին կանայք, որպէսզի Աստուած իրենց մուրազ տայ։*

*Այրերու* 50—60 *մէթր խորութեանց տակ վեմերու փապէն բաւական առատութեամբ վճիտ ու ցուրտ ջուր մը բղխելով՝ կէս ժամ անդին աւազի մէջ կը թաղուի կ'անյայտանայ։*

*Խաչրուկ Մաղարասը — անուամբ այր մըն ալ կայ դարձեալ նոյն կրճի աջ կողմը լերան կողին վրայ։ Ասոր մուտքը լայն և ճամբան դիւրին է։ Շուրջանակի ունի խորշեր և ձեղունէն կը կաթկթի կրախառն ջուր։ Ձեռքի ու երեսի վրայ պիսակ (բառ տեղացւոց խաչրուկ) ունեցողները եթէ այդ ջրով լուացուին, կ'անհետանան այդ պիսակները։ Այս պատճառաւ է ահա որ «խաչրուկ» անունը տրուած է այրին*

*Հետաքրքիր ոմանք՝ նոյն կրճի մէջ ալ տեղ տեղ պեղած են Տաֆնէ գտնելու յուսով, բայց ի զուր. բնաւ բնաւ բան մը չգտնելով՝ «Խելօք Դաւիթ ի՞նչ կը բանիս — ի՞նչ գրիր որ ի՞նչ տանիս» առած ու*

---

(*) Մեծ այրը՝ մատրան մը ձեւն ունի. ինչպէս մատուռ նոյնպէս դուռն ու լուսանցքը ինքնափոր է։ Կ'աւանդեն թէ՝ «Ս. Լուսաւորիչն մեր հոս գալով ժամանակ մ'ալ այս այրին մէջ ճգնած է» որ չէ հաւանական։

եկած են։

Թէփէ Մաղարասը — անուն անուանի և զարմանալի այր մը կայ Սուլթան գետակի եզերքը։ Այս այրը՝ թէև ոչ այնչափ մեծ, բայց Նաբոլիի (Իտալիա) «Շան այր»ին պէս իր հետաքրքրական կողմը ունի, այսինքն է իր մէջ տիզ (կէնէ) չապրիր բնական զօրութեամբ մը։ Ուստի հովիւք միշտ իրարու հետ կը ծեծուին այս այրին վրայ իրենց հօտը մըտցունելու համար. վասնզի հոդ ոչխարները տզով կը մտնեն ու մաքուր կ'ելլեն։

Բաց ի վերոյ գրեալներէ՝ բազմաթիւ մանր ու խոշոր այրեր կը գտնուին Սուլթան գետակի, Շահնա վտակի և Մելաս գետոյն ընթացքին վրայ, որք կը ծառայեն բնակչաց ոչխարներն ձմեռը իրենց մէջ ընդունելու։

Եկրիճէ — որ մայր բնութեան ամենապաճուճ ձևոց գործերէն է, կը գտնուի Խաչափայի ճամբուն վրայ։

Ասիկա՝ իւրաքանչիւր կողմը 150 — 200 մեթր բարձրութեամբ ահագին ժայռերով և երկու ժամ երկայնութեամբ աստիճանաւոր և օձապտոյտ ու հազիւ 2 — 3 մեթր լայնութեամբ անցք ունեցող նեղ կիրճ մ'ըլլալով՝ երբ երկու կողմէն ալ ճամբորդ գան ու այս տեղ իրարու հանդիպին, պէտք է մէկը ետ դառնայ և լայն տեղ մը պատսպարուի, մինչև որ միւսը գայ ու անցնի։ Ուստի ճամբորդք այս կիրճին մէջ մտնելնուն պէս՝ կամ կը սուլեն և խաղ կը կանչեն որ եթէ դէմէն եկողներ կան ետ դառնան։

Սու Փաթան — Սա ալ Մալաթիայէն Հիւսնիմանսուր տանող ճամբուն առաջին իջևանի կեդրոնը հետաքրքրական ծակ մ'է։ Շրջակայ լեռներէն հալած ձիւներու և անձրևներու ջուրը

*հաւաքուելով կուգայ ու կը խորասուզուի ի կեդրոն անոր։ Զգիտցուիր թէ այս ջուրը ո՞ւր կ'երթայ կամ ուստի կ'արտաբղխի։ Ոմանք կը կարծեն թէ՝ «Էլէմէնտիկ»ի ջուրը այս ջուրն է, բայց չէ հաւանական, զի Էլէմէնտիկ՝ թէ շատ հեռի կը գտնուի և թէ շատ մը խոր ձորեր կը բաժնեն իրարմէ։*

## ԴԱՍ ԺԹ.

### Հնութիւնք

**Ի՞նչ հնութիւնք կան այս գաւառակի մէջ եւ ո՞ւր։**

*Այս գաւառակի իւրաքանչիւր կողմն ալ կը գտնուին նուիրական և ոչ նուիրական չէնքերու ևայլն հնութիւնք, որոցմէ նախ պանդոկները ըսենք.*

*Խանէ Խէյիրսըզ — (ըստ թրքաց անշահ պանդոկ) հաստատուած է Իզօլլուի Ճափըլար ըսուած գիւղի ետեւը դաշտի վրայ։ Ասիկա թէեւ կիսակործան և դեռ հիւր կ'ընդունի իր մէջ. բայց, ինչպէս իր անունէն ալ յայտնի է, իջեւանողք միշտ կը զգուշանան շրջակայ գիւղացիներէն՝ անէ կողոպուտ չտալու համար։*

*Խանէ Քուրուքան — (ըստ քրդաց՝ մանկանց պանդոկ) Սա ալ Մալաթիայէն Քեախթա տանող ճամբուն վրայ (ընդ մէջ Մէվաէրէկի և Խալիքանի լերանց) կիսաւեր պանդոկ մ'է։ Ասոր վայրը երկիւղալի ըլլուն, որ և է ճամբորդ չիջեւանէր կամ օթէր։*

*Ասկէ մէկ ժամ անդին կը գտնուի այն պղինձի հանքը զոր վերը յիշեցինք։*

*Զիփթէ Խան — (կից պանդոկ) սա ևս Քեախթայի ճամբուն վրայ։*

*լուխը նստած, մէկը ծովկոլից և կանանչադարդ առուի եզերքը չորսուած և միւսը ծառալից պարտէզի մը տաչտուպեղ (գեղեցիկ ձգերով) հովանոյն տակ ընկողմանած աւաչ կը կարդան, զողոլ կը կանչեն, կ'երգեն ու կը պարեն օղիի շիշն ու բաժակը իրար զարնելով։ Մինչ այս մինչ այն Թռչունք եւ հրապուրեալ կը սկսին իրենց դայլայլիկն ու ձռուողիւնները խառնել այդ կենդանի ձայներուն։*

. . . . . . . . . . . . . . . . .

*Զմոռնանք ըսել որ մի քանի գիւղերու, ինչպէս են Բէլխալիլի. Կէօզէնէի, Ճաֆանայի աղբիւրները ալ գովելի են։*

*Հետաքրքրական և ուշադրութեան արժանի ջուր մ'ալ Շահնախանի վերև կայ որ համանուն վանքի մէջ կը Թափի։ Աստ հետաքրքրական և զարմանալու կէտը այս է որ ջուրը միշտ կը հոսի բայց տարւոյն մէջ միայն 8—10 օր, այսինքն Ապրիլ ամսոյ սկիզբէն մինչեւ 10րդ օրը մանր և միօրինակ ձուկ դուրս կուգայ ակնէն, յետոյ ընաւ չտեսնուիր, որուն կենդանի վկաներ են այդ աւուրց մէջ ձուկ որսալու համար կողմերով հեկող բազմութիւնը։*

## ԴԱՍ ԺԸ.

### Այրեր եւ նշանաւոր վայրեր

**Այս գաւառակի ո՞ր տեղերը այրեր կը գտնուին։**

*Քաղաքին հարաւային արեւելեան կողմը Ին Տէրէ անուանեալ կրճի մէջ մի քանի բնական և արհեստական այրեր կան։ Այս այրերու մէջ երթալու համար մահը յանձն առնելու է. զի այրերը բարձր դահաւանդի մը հարթ երեսը գտնուելով նեղ*

*և վտանգաւոր ճամբայով մը կ'ելլուի, զոր տեղա-
ցիք «Մազէ կարմուճ» կ'անուանեն և ով որ այդ
կամուրջէն անցնելով մեծ այրը (*) կը մտնէ, «բա-
րեխօսութեամբ Ս. Լուսաւորչին իր մուրատը կ'առ-
նէ» կ'ըսեն։*

*Հայք՝ այս վայրը այցելելու համար մասնաւոր
օր մը որոշած են. այն է Զատկի Նոր Կիւրակէն։
Այդ օր խուռն բազմութեամբ հոդ դիմելով կը ջա-
նան որ «Մազէ կամուրջէն» անցնին, աւելի անծին
կանայք, որպէսզի Աստուած իրենց մուրատ տայ։*

*Այրերու 50—60 մէթր խորութեանց տակ վե-
մերու փլաթէն բաւական առատութեամբ վճիտ ու
ցուրտ ջուր մը բղխելով՝ կէս ժամ անդին առափի
մէջ կը թաղուի կ'անյայտանայ։*

*Խաչրուկ Մաղարասը — անուամբ այր մըն ալ
կայ դարձեալ նոյն կրճի աջ կողմը լերան կողին
վրայ։ Աւր մուտքը լայն և ճամբան դիւրին է։
Շուրջանակի ունի խորշեր և ձեղունէն կը կաթկթի
կրախառն ջուր։ Ձեռքի ու երեսի վրայ պիսակ (բառ
տեղացւոց խաչրուկ) ունեցողները եթէ այդ ջրով
լուացուին. կ'անհետանան այդ պիսակները։ Այս
պատճառաւ է անոր «խաչրուկ» անունը տրուած է
այրին*

*Հետաքրքիր ոմանք՝ նոյն կրճի մէջ ալ տեղ տեղ
պեղած են Տաֆնէ գանելու յուսով, բայց ի զուր.
բնաւ բնաւ բան մը չգտնելով՝ «Խելօք Դուրթ ի՞նչ
կը բանիս։— ի՞նչ դրիր որ ի՞նչ տանիս» առած ու-*

---

(*) Մեծ այրը՝ մատրան մը ձեւն ունի. ինչպէս մա-
տուռ նոյնպէս դուռն ու լուսանցքը ինքնաբեր է։ Կ'ա-
ւանդեն թէ՝ «Ս. Լուսաւորիչն մեր հոս գալով ժամա-
նակ մ'ալ այս այրին մէջ նգնած է» որ չէ հաւանական։

եկած են։

Թէփէ Մաղարասը — անուն անուանի և զարմանալի այր մը կայ Սուլթան գետակի եզերքը։ Այս այրը՝ թէեւ ոչ այնչափ մեծ, բայց Նաբոլիի (Իտալիա) «Շան այր»ին պէս իր հետաքրքրական կողմը ունի, այսինքն է իր մէջ ափղ (կէնէ) չափրիր բնական զօրութեամբ մը։ Ուստի հովիւք միշտ իրարու հետ կը ծեծուին այս այրին վրայ իրենց հօտը մըտցունելու համար. վտանգի հոգ. ոչխարները աղով կը մտնեն ու մաքուր կ'ելլեն։

Բաց ի վերոյ գրեալներէ՝ բազմաթիւ մանր ու խոշոր այրեր կը գտնուին Սուլթան գետակի, Շահնոս վտակի և Մելաս գետոյն ընթացից վրայ, որք կը ծառայեն բնակչաց ոչխարներն ձմեռը իրենց մէջ ընդունելու։

Էկրիճէ — որ մայր բնութեան ամենազարմանալի ձեռաց գործերէն է, կը գտնուի Խաչավայի ճամբուն վրայ։

Ասիկա՝ իւրաքանչիւր կողմը 150 — 200 մեթր բարձրութեամբ ահագին ժայռերով և երկու ժամ երկայնութեամբ աստիճանաւոր և օձապտոյտ ու հազիւ 2 — 3 մեթր լայնութեամբ անցք ունեցող նեղ կիրճ մ'ըլլալով՝ երբ երկու կողմէն ալ ճամբորդ գան ու այս տեղ իրարու հանդիպին, պէտք է մէկը ետ դառնայ և լայն տեղ մը պատսպարուի, մինչեւ որ միւսը գայ ու անցնի։ Ուստի ճամբորդք այս կիրճին մէջ մտնելնուն պէս՝ կամ կը սուլեն և խաղ կը կանչեն որ եթէ դէմէն եկողներ կան ետ դառնան։

Սու Պաթան — Սա ալ Մալաթիայէն Հիւսնի-մանսուր տանող ճամբուն առաջին իջեւանի կեդրոնը հետաքրքրական ծակ մ'է։ Շրջակայ լեռներէն հալած ձիւներու և անձրեւներու ջուրը

*հաւաքուելով կուգայ ու կը խորասուզուի ի կեդրոն անդ։ Չգիտցուիր թէ այս ջուրը ո՞ւր կ'երթայ կամ ուստի կ'արտաբղխէ։ Ոմանք կը կարծեն թէ՝ «Է-լէմէնտիկ»ի ջուրը այս ջուրն է, բայց չէ հաւանական, զի Էլէմէնտիկ՝ թէ շատ հեռի կը գտնուի և թէ շատ մը խոր ձորեր կը բաժնեն ի-րարմէ։*

## ԴԱՍ ԺԹ.

### Հնութիւնք

Ի՞նչ հնութիւնք կան այս գաւառակի մէջ եւ ո՞ւր:

*Այն գաւառակի իւրաքանչիւր կողմն ալ կը գտնուի նուիրական և ոչ նուիրական շէնքերու ևայլն հնութիւնք, որոցմէ նախ պանդոկները ըսենք.*

*Խանէ Խէյիրսըզ — (ըստ թրքաց անշահ պան-դոկ) հաստատուած է Իգօլլուի ծափրլար ըսուած գիւղի ետևը դաշտի վրայ։ Ասիկա թէև կիսակոր-ծան և դեռ հիւր կ'ընդունի իր մէջ. բայց, ինչպէս իր անունէն ալ յայտնի է, ճամբորդք միշտ կը զգուշանան շրջակայ գիւղացիներէն՝ անէ կողոպուտ չտալու համար։*

*Խանէ Բուրուքան — (ըստ քրդաց՝ մանկանց պանդոկ) Սա ալ Մոլլաթիայէն Քեախթա տանող ճամ-բուն վրայ (ընդ մէջ Մէլաքերէկի և Խալիքանի լե-ռանց) կիսաւեր պանդոկ մ'է։ Ասոր վայրը երկիւղա-լի ըլլուն, որ և է ճամբորդ չիջևանէր կամ օթէր։*

*Ասկէ մէկ ժամ անդին կը գտնուի այն պղինձի հանքը զոր վերը յիշեցինք։*

*Չիփթէ Խան — (կից պանդոկ) սա ևս Քեախթա-յի ճամբուն վրայ։*

Տիրման խանը — Սա ալ համանուն գիւղի վերեւ վտակին ձախ եզերքը գեղեցիկ դիրքով կիսաւերծան պանդոկ մ'է։ Օգտակարութեան մասին իր նմանեաց մէջ ամենէն առաջինը կը համարուի։

Եարմճա խան — աւելի ալ կը գտնուի Պոյլը վտակի աջ եզերքը համանուն գիւղի վրան։ Աւելի ինչպէս իւր անունէն կ'իմացուի, անշքապէս կառուցեալ անօգտակար պանդոկ մ'է։

Տաշնա խան — Սա ալ՝ ինչպէս վերը ըսինք կը գտնուի համանուն գիւղի դիմացը վէմերու վրայ հաստատուած։

Այս վերջինը լաւ ընդունարան մ'է Աղձաապի չարագործներու, որք թէ հուղկահարութիւն և թէ իրենց թշնամիները քաղաք երթալ գալու ատեն ըսպաննել կամ կողոպտելու համար հոս կ'ապաստանին։ Ուստի աւելի լաւ է անուանել զսա «Երկիւղալի վայր»։ Այս եւ այս կարգէն եղող ոչ մի պանդոկի վրայ արձանագրութիւն չի կայ։ Կ'ըսուի թէ՝ 3—4 դար առաջ երկրին մէջ պտոյտի ելլող Օսմ. կայսերերէն մին՝ իր հրաման ըրած տեղւոյն շինել տուած ըլլալու է, որոց իւրաքանչիւրի առջեւէն կառուղիներ ալ երկարցուած են։

Թիքմէ տաշ — Այս գաւառակի մէջ միայն մէկ կոթող կայ, այն է՝ «Թիքմէ տաշ»ը։ Աւելի Հին Մելիտինէի հիւսիսային կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ Քըրք կէօզի ճամբուն եզերքը անկուած է։ Գետինէն դուրս գտնուած մասը ունի երեք մեթր բարձրութիւն և երկու գիրկ շրջապատ։ Վրան ոեւէ արձանագրութեան նշան չի տեսնուիր։ Միայն գագաթը ըմպակաձեւ (թասի պէս) փոս մը կայ, որուն համար կ'աւանդուի թէ՝ «ժամանակին պտոյտի ելլող

թագաւորը՝ ժողովուրդը ի փորձ արկանելու համար այդ փոսին մէջ ոսկի լեցունելով կը մեկնի. և վերադարձին գոհութեամբ կը տեսնէ որ ոչ ոք համարձակած է ձեռնամուխ ըլլալ ոսկիներուն։ Բայց ըստ ամենայն հաւանականութեան սահմանաքար մ'ըլլալու է ասիկա։

# ԴԱՍ Ի.

## Նուիրական հնութիւնք

**Նուիրական հնութիւնք ո՞ւր կը գտնուին։**

Ս. Կարապետի կրճին մէջ կը տեսնուի երկու յարակից եկեղեցեաց աւերակները, որոց քարերէն բերուած են քաղաքի Ս. Յարութիւն եկեղեցւոյ շինութեանը։

Պալեան Գիւղախմբի Քիլիսէ գիւղի գլուխը վէմերու վրայ հաստատեալ կայ կիսակործան եկեղեցի մը։ Աւելորդ է ըսել թէ՝ գիւղը իր անունը ընդունած է այս վայրէն։

Մէլէտ Տէրէսի մէկ մը վերի գլուխը, մէկ մ'ալ կամուրջէն մէկ ժամ վերը ձորին մէջ կը տեսնուին երկու եկեղեցեաց պատերը, որոց այսպիսի առանձնութեան մէջ շինուած ըլլալը զարմանք կը պատճառէ այցելուին։

Սոյնպէս Խաչովա—Խաչօզա գիւղի կանակի լերան ետեւը կայ եկեղեցւոյ մը աւերակը որ հիմա ուխտատեղի է Ալէվի ժողովրդեան զօր «Փաթըլ» կ'անուանեն։

Դարձեալ սոյն գիւղի արեւելեան կողմը գըտնուած լերան ստորոտի բլրակի վրան ու բոլորտիքը քրիստոնէից գերեզմանատուն ըլլալը տեսնուելէ

*զառ կէս ժամ վարը տափարակ գետնի վրայ բազմա-թիւ չէնքերու աւերակաց քարակոյտերն աչքի կը զարնուին, որ ժամանակաւ քաղաք մըլլալն պարզապէս յայտնի է։*

*Վերին Մասդըքանի (Իշօղլու) դիմացի լերան կողի Սէքիւլէր ըսուած տեղն ալ կայ հին եկեղեցւոյ մը հիմունքը ուր կը տեսնուի, ինչպէս իր անունէն յայտնի է, աստիճանաւոր բերդի մը փլած պարիսպ-ներէն։*

*Կեավուրան (քիւրտերէն Հայք) ըսուած գիւղի մէջ նոյնպէս կայ հին եկեղեցի մը և ընդարձակ գե-րեզմանատուն։*

*Սոյն գիւղ՝ որ ինչպէս իր անունէն ծանօթ է և արդի բնակիչները կը պատմեն, մինչև 16րդ դարուն վերջերը հայաբնակ է եղեր։ Բայց տակէ եաք չգիտցուիր ի՛նչ պատճառաւ ոմանք այլեւայլ տեղեր իսկ մեծ մասը քաղաք գաղթած են։ Այս վերջ-նոց մէջ հիմա ծանօթ են Էմրիկեան և Ներնիկեան գերդաստանները։*

*Ծուպաս գիւղախմբի Թիլեսիկ գիւղի (առ ափն Եփրատայ) պարտէզներուն մէջ ալ կայ հին եկեղեցի մը, վէմի վրայ հաստատուած։ Գիւղի արդի բնակիչք Ուրբաթի և Նամազի գիշերները ճրագ վառելով ա-սոր վրայ կը դնեն։*

*Նոր Մելիտինէի Հայոց Գերեզմանատան արևել-եան կողմը Ս. Յովհաննէս անուանեալ վայրի մէջ ես կայ հին եկեղեցւոյ մը հիմունքը, ուր բարե-պաշտուհի կանայք թաղ–թաղ կերակուր եփելով կ՚երթան կ՚ուտեն, կ՚աղօթեն, մոմ կը վառեն և ինչ ինչ «մուրատ»ներ կ՚ուզեն։*

*(1889ին) Հայոց այս գերեզմանատան վարի ծայ-րէն գտնուած է շիրիմ մը որուն կափարչին վրայ*

*յունարէն գրերով գրուած էր հետեւեալ տապանագիրը. — «Ո՛վ որդիք Բոլոնայի, ժխտացուց գլխաւորներն եղող երկու ճարտարապետներուն վրայ աղօթեցէ՛ք, որ Տէրը հանգիստ քնոյ մը մէջ հանգչեցնէ»։ Այս քարը անարժէք բան մը կարծելով կոտրած ու Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ պատին մէջ ձգած են.*

*Այսպիսի չիրիմ մ'ալ Հօրէն անուանեալ տեղէն գտնուած է, բայց այս վերջինը ոչ գիր կամ նըշան չունի։*

*Իջի Քարուլը պանդոկի (Էկեղրոն չուկայի) դուռին թէն՝ որ նախարդ տարիներու հրդեհէն աւերած էր, փորելու ատեն գտնուած է գերեզմաններ, սակորտիք և խաչ քարեր։*

## ԴԱՍ ԻԱ.

### Կանգուն վանքեր

Քանի՞ կանգուն վանք կայ Մելիտինէի մէջ։

*Երեք, որք քաղաքին արեւելեան կողմը մէկ ժամ միեւնոյն հեռաւորութեամբ և իրարմէ 3/4 ժամ հեռի մէկ գծի վրայ շարուած են և կ'անուանին «Ս. Փրկիչ», «Անարծաթ բժիշկ» և «Ս. Լուսաւորիչ»։*

*Սուրբ Փրկիչ վանք — հիմնարկուած է ի Քրիստոս հաւատացեալ Նախավկայ և անդրանիկ թագաւորին Սրբոյն Աբգարու և օծեալ ի ձեռն Թադէոսի սրբազան առաքելոյ։*

*Կ'աւանդուի թէ՝ ըստ խոստման տեառն մերոյ նախկին լուսաւորիչն մեր Թադէոս սուրբ առաքեալ գալով յԵդեսիա, կը բժշկէ զԱբգար թագաւորը և անոր կ'երթայ յայլուր քարոզել «զԲանն կենաց».*

Արգար թագաւորն ալ յետ ապաքինման գալով Մալաթիա և Օրտուզըի արեւելեան կողմի բլրոյն վրայ ամառանոցի մը շինութեանն կը ձեռնարկէ և հիմերը գետինին հաւասար կը հանէ։

Մինչ այս մինչ այն Ս. Առաքեալն ալ հոս գալով երբ կը լսէ Արգարու այդ տեղ գտնուիլը, կ'երթայ անոր այցելութիւն մը տալ։ Մինչ շինութեան վայրը կը հասնի ծպտուն, Արգարու սկունդը (պըզտիկ շուն) յանկարծ կը յարձակի վրան։ Առաքեալը բռնելով զայն կը զատէ ոտքերն ու կը սատկեցնէ։

Սկունդը Արգարու շատ սիրելի ըլլալով և կարծելով թէ օտարական մ'էր զայն սատկեցնողը։ Բարկութեամբ կը բանտարկէ։

Այդ օրերը արքայորդին Անանէ մահամերձ կը հիւանդանայ և բժիշկներու ամէն ճիգն ու զօրութիւն ոչինչ կ'օգտեն զայն բժշկելու։ Ուստի թագաւորը երբ գիշեր մը կարի մտահոգութեամբ կը քընանայ, երազին մէջ կ'ազդուի իրեն թէ՝ «Մինչեւ բանտարկեալ օտարականը (Թադէոսը) չհանես ու իր ձեռքը Անանէի վրայ չդնէ, չի բժշկուիր»։

Թագաւորը արթննալով անմիջապէս բանտը կը վազէ և իյնալով անոր առջին կը խնդրէ որ ներէ իրեն և գալով բժշկէ զԱնանէ։ Եւ ուստի Թադէոս ելլելով բանտէն կը բժշկէ զԱնանէ։

Այս անեն Արգարի ուրախութիւնը չափ ու սահման չունենար և ի վարձատրութիւն Թադէոսի կը հրամայէ որ բազում ոսկի և արծաթ տրուի. սակայն Ս. Առաքեալը մերժելով զարծաթն ու ոսկին և զամենայն մեծութիւն աշխարհի, կ'ըսէ որ, ամառանոցի հիման վրայ յանուն փրկչին մերոյ եկեղեցի մը կառուցուի։ Արգար ընդունելով սոյն առաջարկը՝ իսկոյն կը կառուցանէ զ'եկեղեցին որ և Ս.Առաք-

հալը իր ձեռօք կ՚օծէ։

Այս սրբազան վայրը որ բազմադարեան հնու-
թեամբ իր նմանեաց մէջ ամենէ առաջիններէն հա-
մարուելու արժանաւորութիւնն ունի, աւա՛ղ սա-
կայն որ այսօր զրկուած է իւր փառաւորութենէն,
պայծառութենէն, հնգյարկեայ հոյակապ կառուցմա-
նէն, 40 խորան և 366 կամարներէ, սատափաչատ և
գեղանկար յատակներէ, պատկերէ, ևայլն։ Միայն
իր չքնաղութիւնն ապացուցանելու համար դեռ
կանգուն կը մնայ երրորդ յարկի պատերէն աշտա-
րակաձեւ մաս մը. երկրորդ յարկէն երեք կամար-
ներով մատուռ մը և Ս. Սոփիա ըսուած(*) այլ մա-
տուռ մը։

Վանքի այսօրուան եկեղեցւոյ արարողութիւն
կատարուած տեղը՝ երկրորդ յարկն է։ Առաջին յար-
կի մուտքը որ կողմէն ըլլալը չի գիտցուիր, վան-
քի ժամանակի աւերիչ ձեռքը (Լէնկթիմուրը) այն-
պէս քարուքանդ ըրած է որ քարերու պիտանեգոյն-
ները ձեռքէ ձեռք Եփրատի մէջ թափած ու միւսը
հարթ հաւասար ըրած է գետնի, որ անկարելի է
սոյն սրբազան վայրի աւերակներն տեսնելով չփղձկիլ։

Հիմա ունի պարտպին մէջ 25—30 սենեակներ և
իրեն սեպհական երկու երեք արտավար հող միայն։
Օդը թեթև ու առողջարար, բայց ընդհակառակը
ջուրը գաղջ և անհամ, որ Բունար Պաշըէն կուգայ.

(*) 1893ի երկրաշարժէն կործանեցան թէ՛ Ս. Սո-
փիան, թէ՛ միւս մատուռը իր կամարներով եւ թէ 10ի
չափ սենեակներ։

# ԴԱՍ ԻԲ.

## Ս. Լուսաւորիչ վանք

**Այս վանքը ե՞րբ հիմնարկուած է:**

*Այս վանքի հիմնարկութեան մասին թէև ճշգրիտ ապացոյց չունինք թէ այսինչ դարու մէջ եղած է, միայն աւանդութեամբ կ'ըսուի թէ երբ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Հռովմէն կը վերադառնայ, Մալաթիա գալուն՝ տեղւոյն իշխանին կողմանէ կը մեծարուի: Գօզլուգ ըսուած տեղն ուր իր վրանն լարած էր ամառն օթելու համար: Պտտելու ատեն տեղւոյ մը համար Լուսաւորիչն մեր կ'ըսէ թէ՝ «այստեղ լաւ յարմարութիւն ունի եկեղեցի շինուելու»: Իշխանը այս խօսքը միտքը պահելով Ս. Հայրապետը մեկնելէ ետեւ՝ նորա անուամբ կը կառուցանէ եկեղեցի մը յիշեալ տեղւոյն վրայ:*

*Բայց մատրան վրայի արձանագրութենէն կ'իմացուի որ 13րդ դարուն մէջ անգամ մը վերանորոգուեր է քաղաքի առաջնորդին ձեռքով:*

*Վանքը շինուած է Պէկ Տաղըի կողին վրայ գեղեցիկ դիրքով: Ունի 8–10 հատ ներքնայարկ, բարեկիր սենեակներ, վրան ալ նոյն քանակութեամբ հողաշէն և փայտաշէն սենեակներ: Մատրան առջեւ շարուած կան քանի մը միաբաններու գերեզմաններ: Օդը ամենապատուական, հեղասահիք զեփիւռը միշտ հոլաթեւ կը փչէ: Ջուրը զուլալ և վճիտ՝ որ Գօզլուգէն բղխելով՝ փողրակներու միջոցաւ կարկաջասահ կ'իջնէ վանքին մէջ, որուն համար Գեր. Խաչիկ Եպիսկ. Սահակեան՝ իր հոս առաջնորդութեան ատեն, գեղեցիկ աղբիւր մը շինել տալով՝ ջուրը բարձրէն վար թափեց, որ ազատութիւններէ*

զերծ մնայ։ Ցիշեալ Սրբազանը տեսնելով նաև որ վանքի ճամբայէն կառք չի բանիր նեղութեանը համար, հին ճամբան ձգելով նոր և լայն քառուղի մը շինեց, որ այսօր հեծեալ թէ հետի հանգիստ մը կ'երթեւեկեն։ «Ցիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի»։

Ուխտաւորք միշտ անպակաս են. բնիկ թէ պանդուխտ իրենց ընտանեօք շաբաթներ ու ամիսներ կ'անցնեն հոս։

Վանքը ունի իրեն սեպհական ընդարձակ գետին մը որոյ սահմանագիծն է շուրջանակի երկու ժամ, և յորում կայ 4—500 արտավար բերրի հող։ Թէև այդ հողերէն բաւական տեղ կը հերկուին, բայց յուսալից արդիւնք մը չի տեսնուիր, վասնզի գործնական մշակութիւն չի կայ։

Ասկէ 20—25 տարի առաջ դեռ կը գտնուէր խիտ անտառ մը կաղնեայ որ ի չգոյէ հսկողութեան և քաղաքին մօտ ըլլալով՝ սպառած է։ Եթէ հսկողութիւն ըլլայ և կաղիններ (բէլիտ) անկուին, վերըստին կ'աճի ու կը զօրանայ։ Այսպէս նաև կրնայ անկուիլ հազարաւոր սրթեր մի քանի տարիէն առատ շահ մը առնելու համար։ Չըսենք ալ թէ՝ մի քանի չէնքով շնորհքով երկրագործներ կարգելու է որ նոր արտեր քակելով՝ բազմապատկուի սերմնացանութիւնը. Ցաւ ի սիրտ կ'ըսենք թէ մալաթիացի հայը խիստ անհոգ ու անտարբեր է սոյն վանքի հողերէն օգտուելու, զոր ապագային իր զաւակաց բաշխէ, որբանոց մը, գիշերօթիկ մը և կամ ժառանգաւորաց վարժարան մը բանալով հոդ։

Ուստի բանիբուն եկեղեցականներէ և աշխարհականներէ բաղկացեալ վանական խորհրդոյ մը պէտքը անհրաժեշտ է։

*Հետեւեալը վանքի տաճարին դրան վրայի արձանագրութիւնն է.*

*«Շինեցաւ դուռս Սբ Գրիգորի,*
*«Ձեռամբ Սիմէոնի եպիսկոպոսի:*
*«Ի թվին Հցւ պձը: Մարտի.*
*«Յիշատակին գիւր ծնողի:»*

*Խորանին կանակը դրուած խաչքարի մը վրայ գրուած է.*

*«Թվին ՉԹ: կանգնեցաւ Սբ Նշանս ի բա-*
*«րեխօսութ՛ւ ի Պետրոսի և այլոցն ամէնե:»*

## ԴԱՍ ԻԳ.

### Անարժան բժիշկ

Այս վանքը ե՞րբ հիմնուած է եւ ի՞նչպէս է արդի վիճակը:

*Այս վանքը՝ որ ինչպէս վերը ըսինք, Փրկչի և Լուսաւորչի կեդրոնը Բունար Պաշըի վրան հաստատուած է, ո՛չ ոք գիտէ ո՛ր դարու մէջ հիմնարկուիլը: Բացի տաճարէն՝ բոլոր շէնքերը աւերակ ու քարուքանդ եղած է: Ըստ աւանդութեան, որ փլատակաց տակէն քարակոյտերն ալ կը վկայեն, ի հնումն շատ մը մենաստան և այլ յարկեր ունեցած է: Կ'երեւի նաեւ որ սա ալ Ս. Փրկչին հետ աւերիչ ձեռքերու է հանդիպած, որում կենդանի վկայ կը հանդիսանան հետեւեալ տողերն զոր երկու երեք դար առաջ շարադրած է Աւագ անուն բնիկ մը:*

*Ամենակալն Աստուած Արդար առաքեց,*
*Ասորւոց վիճակին Թագաւոր կարգեց.*

*Իր ողորմութեամբը Մել'արին աւագեց*
*Զօրեղ Լուսաւորիչ, մեծդ Ս. Փրկիչ.*
*Հիւանդաց օգնական անարծաթ բժիշկ։*

*Մելիտինու քաղքին խաչեա փարատեց,*
*Աստուածային անուան Ս. Փրկիչ շինեց.*
*Քառ'սուն խորնի վրայ սեղան հաստատեց*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Թողէսս Առաքելայ հոյից (*) Թէմէլին,*
*Երեք հարիւր վաթսուն վեց կամարին*
*Քառ'սուն խորան և քառասուն տաճարին*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Թողէսս առաքելոյ ձեռօքը օծեց,*
*Հաստատեալ ժողովուրդը մկրտեց.*
*Ի սուրբ մարմին և արիւնէն հաղորդեց*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Արդար թագաւորն ու մարտուրին հասաւ.*
*Ագենայ դրախտը ծաղիկ մի բուսաւ.*
*Աստուածային լուսով լուսաւորուեցաւ։*
*Զօրեղ Լուսաւորիչ...,*

*Ի Մելտինու կ'ելլայ եստան, ձիաւոր,*
*Գոհանամին(** ա'կէն կ'եյ'ւայ ուխտաւոր*
*Դուն ամենուս հանի'ս Փրկիչ զօրաւոր*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Բունար Պաշու ջուրը ակէն օրհնած է,*
*Անարծաթ բժիշկն ալ վրան շինուած է*

---

(*) Փոխանակ ըսելու՝ նայեցաւ։
(**) Գամանամբ Օրտուզունեն հին ճաղաք տանող ճամբուն վրայ բլրակ մըն է։

*Մելիտինու (*) քաղաքը ջրին նման է։*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Մենք զարմանք կը մնանք չինարին (**) ծառին,*
*Երանութիւն կուտանք Աբգար արքային.*
*Ճեմալին կարօտիք Սուրբ Սափիային։*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Զօրեղ Լուսաւորիչ վանքերուդ հայից,*
*Փրկիչն ու բժիշկը Լէնկ Թէմիւր քակից,*
*Ցարերը ձեռքէ ձեռք Մուրատը Թափից։*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Զօրեղ Լուսաւորչայ աղօթքը հասաւ,*
*Անգութ Լէնկ Թէմիւրը շուտ ոչնչացաւ.*
*Քրիստոնեայ ազգը շատ պայծառացաւ։*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Սուրբ Փրկիչայ գաւառն լսեցաք մէճլիս,*
*Մեղաւոր անարժան կապեցաք թէճնիս.*
*Մեզ էտի ճաշակնու մահրում չանանիս։*
*Զօրեղ Լուսաւորիչ...։*

*Իցի՜ւ թէ՝ ազգայինք ձեռնամուխ ըլլային այս վանքը նորոգելու, որով անդին գանձ մը ժառանգ*

---

(*) Հին Մելիտինէ։

(**) Չինարը՝ սոյն գաւառակին մէջ՝ 15 մետր շրջապատ ունեցող հաստաբուն եւ եզակի ծառ մ'է որ կը գտնուի Ս. Փրկիչ վանքի տակ՝ վտակին եզերքը. դարեր առաջ սոյն ծառ ժանգահար ըլլալով, մէջը երկու ձեռք անկողին փռուելու չափ մեծ խոռոչ մը բացուած է։

*թաղուած պիտի ըլլան ապագայից․ վանքի այս վանքին՝ որոյ ընդարձակ հողերը բոլորովին խոպա-նացած են հիմա, առատ բերքեր կ'ամբարէ, եթէ պէտք եղած մշակութիւնն տրուի, և այս վանքը ա-ւելի աղէկ յարմարութիւն ունի իր մէջ կրթական բարձր հաստատութիւն մը պահելու։*

*Ըստ եկեղեցական պատմութեան Մուրատեանի՝ Քրիստոսի չորրորդ դարուն այս երեք վանքերէ միայն մէջ կրօնական բարձր վարժարան մը կը գտնուէր։ Չի կ'ըսէ թէ՝ «Մեսրոպ հայրապետ հայոց գրերը գտնելով վերադարձին երբ Մալաթիա կը հանդիպի, իր աշակերտներէն երկուքը այնտեղի աստուածաբանական ճեմարանը կը թողու ու կը մեկնի։»*

## ԴԱՍ ԻԴ.

### Եկեղեցի եւ Վարժարան

**Այս գաւառին մէջ քանի՞ եկեղեցի եւ վարժարան կայ հայոց սեպհական։**

*Այս գաւառակի մէջ հիմա՝ բացի Չըմըշգածէ եւ հին քաղաքէ, կեդրոնէն դուրս քրիստոնեայ չգըտ-նուելուն, կանգուն եկեղեցի ալ չիկայ։ Սակայն քա-ղաքին մէջ հայոց սեպհական երեք եկեղեցի կայ։*

*Առաջինն է Մայր Եկեղեցին որ կառուցեալ է յանուն Ս. Աստուածածնի, հիմնարկեալ 1834ին և է կամարակապ, սիւնազարդ։*

*Սոյն եկեղեցւոյ անդը տաջ ալ պզտիկ եկեղեցի մը գտնուելով՝ ամբողջ ժողովուրդը իր մէջ պա-րունակելու անբաւական ըլլալուն համար (յետ ի նոր քաղաք փոխադրման) զայն քակած ու նորէն*

*չինած են։ Եկեղեցւոյն հիւսիսային պատի արտաքին կողմը գեղեցիկ թամբարանի մը մէջ ամփոփեալ կան (1886 Յունուար 18 ժամ 3) միեւնոյն վայրկեանին վախճանեալ երկու եկեղեցականաց, այսինքն Արա-պիոն եպիսկ. Սապօնճեան և Տէր Յակոբ քհնյ Տէր Յակոբեանի մարմինները. որոց մօտ թաղուած է նաև օրիորդ Իսկուհիյա Մ. Յովհաննէս (հաճի փա-շա) Կիւլպէնկեանը որ մեռաւ (1887 Դեկտ. 13ին) ի ծաղիկ հասակի։*

*Եկեղեցին իր պարտէզին մէջ ունի գեղեցիկ ա-ռաջնորդարան մը քանի մը սենեակներով, երկյարկ վարժարան մը, ուր կ'ուսանին 200 աշակերտք և կ'ուսուցանեն (*) 3–5 դասատուք։ Ունի նաև իրեն սեպհական 35 խանութ՝ որք տարեկան 50–60 ոսկի չափ կը բերեն։*

*Երկրորդ Ս. Երրորդութեան եկեղեցին՝ հայոց կեդրոնն եղող Թէք Չէշմէ թաղին մէջ։ Հանդերձ մի մատրամբ ունի վեց խորան (երկուքը երկյարկ) և է գմբէթաւոր, բարձրադիր, որուն համապատա-խանող եկեղեցի շրջաբնակ քաղաքներէ բնաւ մէկուն մէջ չիկայ։ Հիմնարկեալ է 1875 և աւարտեալ 1893ին(**)։*

*Սա ալ ունի իր ուրոյն վարժարանն մանչ և աղջիկ զաւակաց համար, երկյարկ ու փառաւոր որ կառուցուած է եկեղեցւոյն դիմացի վայրին վրայ, ուր կ'ուսանին 200 ուսանողք և 80–100 ուսանո-ղուհիք։ Ուսուցիչք՝ 4–6։*

*Եւ երրորդ Ս. Յարութեան եկեղեցին Զըյուր*

---

(*) Դպրոցաց վիճակին վրայ վարը պիտի խօսինք։

(**) Ճիշդ աւարտած տարին գմբէթը փլած է նոյն տարուան ծանօթ երկրաշարժէն ու նորէն շինուած։

Տէրէ բռնուած տղին մէջ՝ գեղեցկադիր գմբէթաւոր։ Հիմնարկեալ 1860ին։ Ունի ուրոյն առաջնորդարան մը և երկյարկ վարժարան. ուսանողք 100—150. ուսուցիչք 2—3։

Հայք, ընչպէս ըսինք, Զըրմըգտըի մէջ ունին սիւնազարդ եկեղեցի մը «էջ Միածին» անուամբ. հիմնարկեալ ի 1830 և վերաշինեալ 1870ին։

Զըրմըգտըի մէջ ասկէ 15—20 տարի առաջ թէև 30—40 տուն հայ կը գտնուէր, սակայն հիմա հազիւ 5—6 տուն կայ, զի մեծ մասը քաղաք գաղթած են։ Դպրոց՝ Աստուած տայ։

Այսպէս նաև Մելիտինէի մէջ կայ կամարաշէն պզտիկ եկեղեցի մը «Ս. Ստեփաննոս անուամբ. որոյ մէկ երկրորդ մասը գետնին մէջն է, ուր իջնելու համար սանդուխի մը 10—12 աստիճաններն կոխել պէտք է. և վրայէն տարեր անցած լինելով չգիտցուիր երբ հիմնարկուիլը. միայն սա անդունական գրեր կը նշմարուին անընթեռնելի վիճակի մէջ։ Ունի մէկ երկու արտաւոր հող իրեն սեպհական և քանի մը սենեակներով տուն մը։

Հին Մելիտինէի 7—8 տուն հայերը՝ հակառակ իրենց փոքրամասնութեան, ունին դպրոց մը որուն ամէն պէտքերը իրենք կը լեցնեն։

Օրտուզըի 10—12 տուն հայոց եկեղեցին Ս. Փրկչի վանքն է արդէն։ Ասոնք բնաւ ուսման վրայ գաղափար չունենալով՝ երեք չորս տարին անգամ մը միայն երեք չորս ամսուան համար դասատու մը կը բռնեն։ Օրտուզըցիներու այս ընթացքը «Մատաղ ուսող» անուանել տուած է զիրենք։

Տեղւոյն հայ և լատին կաթոլիկներն ալ որ 25—30 տարիէ ի վեր մուտ գործած են հոս՝ առաջին-

ներն շինած են հանդերձ մի մատրամբ գմբեթածածկ և փառաւոր եկեղեցի մը. ունին նաև երկսեռ վարժարան մը։ Ուսուցիչք 2. ուսանողք 40—50։ Ուսուցչուհիք 3—4, ուսանողուհիք 50—60։

Վերջինք ալ ունին երկու մատրամբ փայտաշէն կամարածածկ այլ փառաւոր եկեղեցի մը և երկսեռ վարժարան. ուսուցիչք 3, ուսանողք 100—120. վարժուհիք 2 և աշակերտուհիք 80—100։

Բողոքականք՝ ծանօթ երկրաշարժէն ժողովարանը փլչելով՝ քան զառաջինն փառաւոր նոր մը կառուցած են։ Ասոնք ալ ունին երկսեռ վարժարան. ուսուցիչք 2—3, ուսանողք 80 վարժուհիք 2 և աշակերտուհիք 50—60։

## ԴԱՍ ԻԵ.

### Արձանագրութիւն

**Որո՞նք են հայ եկեղեցեաց արձանագրութիւնք:**

Հետեւեալը զոր շարադրած է բնիկ քահանայ մը իր անուան գրերը տողերուն սկզբնատառ ընելով, Մայր եկեղեցւոյ դրան վրայի արձանագրութիւնն է.

«Ի Թուականիս յաբեթականի ի ԻԵ. յաւիտեան հաշուի
«Տուր Լ՛Գ.ն նախկին վիճակի կալեալ թիւն պարգ- [եալ գտանի.
«Է գլուխ տառից ակումբն գծողի գր- [եալ գտանի.
բոյս անուանն յիշի.
«Րաել ըստ նոցա յաղթող կարգեալ սկզբանէ յամի.
«Մայր սուրբ աթոռոյն Կիլիկիոյ մեծի հայրապետութեան ա՛՛ն մէ՛՛յլի.
«Եղեւ շինեալ եկեղեցէս յանուն մօր տեառն Ս. Ած.նի
«Լեալ ձեռն նպաստ մէհի Աբբխարեան մէհի Գասպար
«Յանդի երբեմն եղեւ ջատագով և Փի- [ամիրայի.
լիպեան Ցոմբէփ այր յարգի.

«Ի յԸդեւկիա էր ի քաղաքէն և եկեալ աստ գործովն
«Սա արդեամբ, ծախիւք և ժողովրդոց լարքունի.
կառուցեալ եղեւ ըստ ամենայնի.
«Եւ որոց վարձատրեսցէ տէր ի իւրաքանչիւրոց
ըստ աշխատողի.
«Դատաւորն արդար ի գալ կրկնակի, պահեսցէ
հաստատ հիմն ի վիմի.
«Եղբարք սիրեցեալք սահմք եղիցի, զի աղօթք բազ-
մաց յետս ոչ դարձցի։
«Կարես իմանալ այսի թուականի,
«Էր յունիս ամսուն առաջին աւուրբ.
«Հազար երկերիւր ութսուն և չորսի,
«Շինումն դրան սրբոյ տաճարի»։
Խաչ օգնեա՛ ✚ մեզ։

.................

Երրորդութեան եկեղեցւոյ դրան վրայ՝

«Տաճար տէրունի և յարկ սրբութեան,
«Եւ տուն աղօթից փառաբանութեան.
«Կառուցեալ յանուն Ս. Երրորդութեան,
«Արդեամբ Մելիսինայ ազգիս արամեան.
«Օ՛ն, եկա՛յք սիրով որդիք Հայկազեան,
«Երգել աստ զփառս Երրեակ Միութեան։»
1880ին ✚ ՌՅԻԸին.

.................

Ս. Յարութիւն եկեղեցւոյ դրան վրայ՝

«Կամօք տեառն օժանդակեալ,
«Տաճարս այս եղեւ շինեալ,
«Ս. Յարութիւն վերաձայնեալ,
«Արդեամբ համայն ժողովրդեան։»
1850

# ԴԱՍ ԻԶ.

## Գերեզմանատուն

**Մելիթինէի մէջ քանի՞ գերեզմանատուն կայ քրիստոնէից:**

*Հայք՝ բացի հին քաղաքի ընդարձակ գերեզմանատունէն, Նոր քաղաքին մէջ ունին երեք գերեզմանատուներ, որոց մին կը կը կոչուի «Աւպըղըցոց գերեզմեր» ուր հիմա մեռել չթաղուիր, և հսկողութիւն չըլլալով՝ շրջակայ տնեցիք տապանաքարերը տանելով շինութեան կը գործածեն. Այն գերեզմանատան մէջ թաղուած էին «Սուլթան Մահմուտի օրով աքսոր դատապարտեալ Արմաղըշեան մականուանեալ Պօլսոյ ամիրայական ընտանիքէն երկու անձ որոց տապանաքարերն հոյ պապականց եկեղեցւոյ պատին մէջ կը գտնուին այսօր:*

*Միւս երկու գերեզմանատուներն ալ (յետ ի Նոր քաղաք փոխադրման) հաստատուած են մին Ջարմուզի վրան, միւսը Խօրէն անուանեալ վայրը: Այս վերջինը միայն քանի մը գերդաստաններու (ըստ տեղացւոց՝ ազնուականներուն) կը պատկանի:*

*Կաթոլիկք և բողոքականք ալ հայոցինէն յարակից ունին իրենց առանձին գերեզմանատուները:*

*Այս գերեզմանատանց տապանագիրերու մեծ մասը հետեւեալ կերպիւ արձանագրուած է:*

*«Այս է տապան հանգստեան ...եան (այս անուն)ին, որ հանգեաւ հայոց թվին, Ռ...ին:»*

*Գերեզմանատանց և ո՛չ միայն շուրջը պատ կամ ցանկ չգտնուելով թէ՛ բոլորտիքը և թէ տապանաքարերուն վրայ անմաքրութիւնք դրեթէ անպակաս են միշտ. որ բնաւ ներելի չէ քրիստոնէից՝ ի-*

*րենց ալափսի սրբավայրերու մէջ անմաքրութիւն գտնուելուն տեղի տալու։*

*Ասկէ ուրիշ առողջապահութեան հակառակ է մեռել թաղելու սովորութիւնին. ինչպէս. հոս՝ մեռելներու փոսը՝ եթէ չափահասի համար է, հազիւ մէկ մեթր, իսկ տղայոց համար կէս մէթր փորուիլ ու ննջեցեալները իրարու վրայ թաղուելուն ։ ա. ա-նուանդ վերջին տարին ը ։ անտուկով թաղելու (որ նոյնպէս չէ ներելի քրիստոնէից, զի տէրն մեր և նախահայրն առանց անտուկի թաղուած են) սովորութիւնն ալ մէջ մտած ըլլալուն, նոր տապան մը փորուելու տեղն, փտտած կա՛մ չքայքայուած դիակի մը և կամ չփտած անտուկի մը խրելով՝ չաանգամ գազրելի գարշահոտութեանց դուրս ցայտելուն ականատես եղած ենք. որոյ ի՛նչ հետեւութիւն ունենալը՝ ուշիմ ընթերցողք կրնան հասկնալ։*

*Ուստի փափաքելի է նախ՝ որ գերեզմանատանց չուրջը ցանկ կամ պատ քաշուի, երկրորդ՝ դէմ անտուկով թաղելու այդ վնասաբեր սովորութիւնը արգիլուի ձեռնհաս իշխանութենէ։*

## ԴԱՍ ԻԷ.

## Կրօնական, կրթական եւ այլ հաստատութիւնք տաճկաց

**Քանի՞ են Մելիթինէի տաճկաց կրօնական, կրթական, եւ այլն հաստատութիւնք եւ ո՞ւր։**

*Մալաթիոյ Թուրք հասարակութիւնը՝ բացի արուարձանաց և գիւղօրէից մէջ գտնուածներէ, քաղաքին մէջ ունին վեց եօթը մեծ ու բազմաթիւ մանր մզկիթներ. ի միջի այլոց փառաւոր են (ի*

*ներն չինած են հանդերձ մի մատրամբ գմբեթա-ծածկ և փառաւոր եկեղեցի մը. ունին նաև երկսեռ վարժարան մը։ Ուսուցիչք 2. ուսանողք 40—50։ Ուսուցչուհիք 3—4, ուսանողուհիք 50—60։*

*Վերջինք ալ ունին երկու մատրամբ փայտաշէն կամարածածկ այլ փառաւոր եկեղեցի մը և երկսեռ վարժարան. ուսուցիչք 3, ուսանողք 100—120. վարժուհիք 2 և աշակերտուհիք 80—100.*

*Բողոքականք՝ ծանօթ երկրաշարժէն ժողովարանը փլչելով՝ քան զառաջինն փառաւոր նոր մը կառուցած են։ Ասոնք ալ ունին երկսեռ վարժարան. ուսուցիչք 2—3, ուսանողք 80 վարժուհիք 2 և աշակերտուհիք 50—60։*

## ԴԱՍ ԻԵ.

### Արձանագրութիւն

Որո՞նք են հայ եկեղեցեաց արձանագրութիւնք:

*Հետևեալը զոր չարադրած է ընիկ քահանայ մը իր անուան գրերը տողերուն սկզբնատառ ընելով, Մայր եկեղեցւոյ դրան վրայի արձանագրութիւնն է.*

*«Ի Թուականիս յաբեթականի ի ԻԵ. յոբելեան հաշուի*
*«Տուր Լ՚Գ.Ն նախկին վիճակի կալեալ թիւն պարգ-*
*«Է գլուխ տասից ակումբն գծողի զը- [եալ գտանի.*
*ռոյս անուանն յիշի.*
*«Րաեկլ ըստ նոցա յաղթող կարգեալ սկզբանէ յամի.*
*«Մայր սուրբ աթոռոյն Կիլիկիոյ մեծի հայրապե-*
*տութեան ա՚՚ն մք՚՚յլի.*
*«Եղև շինեալ եկեղեցիս յանուն մօր տեառն Ս. Ած.նի*
*«Լեալ ձեռն նպաստ մեծի Արքիմարեան մեծի Գասպար*
*«Քանդի երբեմն եղև ջատագով և փի- [ամիրայի.*
*լիպեան Յովսէփ այր յարգի.*

«Ի յնդեւկիա էր ի քաղաքէն և եկեալ աստ գործով
«Սա արդեամբ, ծախիւք և ժողովրդոց լարքունի·
կառուցեալ եղեւ ըստ ամենայնի·
«Եւ որոց վարձատրեսցէ տէր ի իւրաքանչիւրոց
ըստ աշխատողի·
«Դատաւորն արդար ի գալ կրկնակի, պահեսցէ
հաստատ հիմն ի վիմի·
«Եղբարք սիրեցեալք սանմք եղիցի, զի աղօթք բազ-
մաց յետս ոչ դարձցի։
«Կարես իմանալ այսի թուականի,
«Էր յունիս ամսուն առաջին աւուրբ·
«Հազար երկերիւր ութսուն և չորսի,
«Ծննդեան դրան սորայ տաճարի»։
Խաչ օգնեա՛ ✚ մեզ։

. . . . . . . . . . . . . . . . . .

Երրորդութեան եկեղեցւոյ դրան վրայ՝

«Տաճար աէրունի և յարկ սրբութեան,
«Եւ տուն աղօթից փառաբանութեան·
«Կառուցեալ յանուն Ս. Երրորդութեան,
«Արդեամբ Մելիքինեայ ազգիս արամեան.
«Օ՛ն, եկա՛յք սիրով որդիք Հայկազեան,
«Երգել աստ զփառս Երրեակ Միութեան։»
1880ին ✚ ՌՅԻԸին·

. . . . . . . . . . . . . . . . . .

Ս. Յարութիւն եկեղեցւոյ դրան վրայ՝

«Կամօք տեառն օժանդակեալ,
«Տաճարս այս եղեւ շինեալ,
«Ս. Յարութիւն վերանուանեալ,
«Արդեամբ համայն ժողովրդեան։»
1850

## ԴԱՍ ԻԶ.

### Գերեզմանատունք

**Մելիտինէի մէջ քանի՞ գերեզմանատուն կայ քրիստոնէից։**

*Հայք՝ բայց հին քաղաքի ընդարձակ գերեզմանատունէն, նոր քաղաքին մէջ ունին երեք գերեզմանատուներ, որոց մին կը կը կոչուի «Առպըղըցոց գերեզմեր» ուր հիմա մեռել չթաղուիր, և հակառակութիւն չըլլալով՝ շրջակայ տնեցիք տապանաքարերը տանելով շինութեան կը գործածեն. Սոյն գերեզմանատան մէջ թաղուած էին «Սուլթան Մահմուտ»ի օրով աքսոր դատապարտեալ Արմաղէչեան մականուանեալ Պօլսոյ ամիրայական ընտանիքէն երկու անձ որոց տապանաքարերն հայ պապականաց եկեղեցւոյ պատին մէջ կը գտնուին այսօր։*

*Միւս երկու գերեզմանատուներն ալ (յետ ի նոր քաղաք փոխադրման) հաստատուած են մին Ջարմուղըի վրան, միւսը Խօրէն անուանեալ վայրը։ Այս վերջինը միայն քանի մը գերդաստաններու (ըստ տեղացւոց՝ ազնուականներուն) կը պատկանի։*

*Կաթոլիկք և բողոքականք ալ հայոցինուն յարակից ունին իրենց առանձին գերեզմանատուները։*

*Այս գերեզմանատանց տապանագրերու մեծ մասը հետևեալ կերպիւ արձանագրուած է։*

*«Այս է տապան հանգստեան ...եան (այս անուն)ին, որ հանգեաւ հայոց թվին, Ռ...ին։»*

*Գերեզմանատանց և ո՛չ միայն շուրջը պատ կամ ցանկ չգտնուելով թէ՛ բոլորտիքը և թէ տապանաքարերուն վրայ անմաքրութիւնք դրեթէ անպակաս են միշտ. որ ընաւ ներելի չէ քրիստոնէից՝ ի-*

*ընոց այսպիսի սրբավայրերու մէջ անմաքրութիւն գտնուելուն տեղի տալու։*

*Անկէ ուրիշ առողջապահութեան հակառակ է մեռել թաղելու սովորութիւններն. ինչպէս, հոն՝ մեռելներու փոսը՝ եթէ չափահասի համար է, հազիւ մէկ մեթր, իսկ տղայոց համար կէս մեթր փորուիլ ու ննջեցեալները իրարու վրայ թաղուելուն ։ ա· ա- նուանդ վերջին տարին ք· անտուկով թաղելու (որ նոյնպէս չէ ներելի քրիստոնէից, զի տէրն մեր և նախահայրն առանց անտուկի թաղուած են) սովորու- թիւնն ալ մէջ մտած ըլլալուն, նոր տապան մը փորուելու տեղն, փետատը կամ չքայքայուած դի- ակի մը և կամ չփտած անտուկի մը խրելով՝ շատ անգամ զազրելի գարշահոտութեանց դուրս ցայտե- լուն ականատես եղած ենք. որոյ ի՛նչ հետեւութիւն ունենալը՝ ուշիմ ընթերցողք կրնան հասկընալ։*

*Ուստի փափաքելի է նախ՝ որ գերեզմանատանց չուրջը ցանկ կամ պատ քաշուի, երկրորդ՝ դէթ անտուկով թաղելու այդ վնասաբեր սովորութիւնը արգիլուի ձեռնհաս իշխանութենէ։*

## ԴԱՍ ԻԷ.

## Կրօնական, կրթական եւ այլ հաստատութիւնք տանկաց

**Քանի՞ են Մելիթինէի տանկաց կրօնական, կրթա- կան, եւ այլն հաստատութիւնք եւ ո՞ւր։**

*Մալաթիոյ Թուրք հասարակութիւնը՝ բացի արուարձանաց և գիւղօրէից մէջ գտնուածներէ, քաղաքին մէջ ունին վեց եօթը մեծ ու բազմաթիւ մանր մզկիթներ. ի միջի այլոց փառաւոր են (ի*

*կեդրոն շուկայի) Ջինարլը և Սէօկլիւտլը ճամբի բուսածներն, որոց մին 1893ի գետնաշարժէն փլչելով՝ նորը շինելու ձեռնարկած են։*

*Անկէց զատ հիմա կը շինեն երկաթարահ և զմրէթազարդ ճամբի մը նուիրեալ Օղոս կայսեր անուան, որոյ վասն իրրեւ նախանձաւոր մեյլիսինեցի կրնամ ըսել թէ՝ մեր թուրք հայրենակցաց սոյն նորաշէն նուիրական շէնքը՝ ի պարծանս Մալաթիոյ եղական է ի սոյն նահանգ։*

*Սոքա ունին իրենց մասնաւոր ուխտատեղիներն ալ, որք են.*

*Գարա Պապա, Ալի Պապա, Ահմէտ Տուրան, Միր Խօմէր, Գօճա Վա՛իզ, Սարըլըգ, Գրգլար, Եէտի Գարտաշլար, Իւչ Գարտաշլար, Քէօլէլը Պապա, Հաճի Պայրամ, և այլն։*

*Առանցմէ ոմանք՝ հին քաղաքի ճամբուն վրայ. ոմանք հին քաղաքի մէջը, և միւսներն ալ գաւառակին այլեւայլ կողմերը գտնուելով, ուր կ՚այցելեն Պայրամի, Նամազի տօներուն և ամէն Ուրբաթ օրերն։*

*Ունին նաև 1 Րուշտիյէ, 2 իբթիտայիյէ (նախակրթարան) և 40 սիպիանիյէ (ծաղկոց) վարժարան։*

## ԴԱՍ ԻԸ.

### Կենդանիք

Այս գաւառակին մէջ ո՞ր կենդանիք ծանօթ են ու կը գտնուին։

*Ընտանի կենդանիներէն (չորքոտանի) ընութեամբ (էօրքիւճլիւ) ուղտն ու որկրամոլ գոմէշը միայն բացառաբար հաւասած են հոս զոյլ։ Վայրի կենդա-*

նինուէն կը գտնուին՝ յափշտակիչ գայլը, հաւորս կուզը (ոէնոէր), տղմասէր խոզը, զարհուրելի արջը փշազգեստ ոզնին, երկչոտ նապաստակը, մեծեղջիւր այծեամը (կէյիկ), հնարագէտ խլուրդը, ճարտարագործ կուղբը (ջրի շուն), ընկուզամոլ սկիւռը՝ որ Մելիտինէի բոլոր պարտէզներուն միանգամայն կը տիրէ, փափկամորթ կզաքիսը, ու այլ թաւամազ կենդանիք, եւայլն։

Թռչնոց ընտանի և վայրի տեսակներէն ծանօթ են հասարակ հաւը, եգիպտահաւը, լուղարդ բադը, երկարպորանոց սագը ու կարապը, հաւալուսը (կարա պաթագ), առանձնասէր արտոյտ (չայիր գուշու) դեղդեղիչ դեղձանիկը, վարդի սիրահարն սոխակ, մշտասլաց ծիծեռնակը, թթապաշտ սարեակը, խայտաբղէտ կաքաւը, միամիտ աղաւնին, խարեբայ յոպոպը. արդար տատրակը, սրտկտուց փայտփորն ու կկուն, երկարակտուց արագիլը, սրաթեւ արծիւը, բազէն ու շահէնը, չարաշուքի բուն, որկրամոլ ագռաւը, սեւազգեստ ուրուրը (չայլաղ), շողակրատ անծեղը, կլոր գլուխ ծիտը (ճնճղուկ) և այլ երգող ու յափշտակիչ թռչունք։

Զորքոտանեաց և թռչնոց պէս կը գտնուին նաև անհամար միջատներ և սողուններ, զորս մի առ մի գրել մեր նպատակէն դուրս ըլլալուն միայն մէկ քանիներու անունն յիշել բաւ կը համարինք։ Ուստի լսէ՛. ի միջի այլոց ծանօթ են թունաւոր օձը, մողէսը, կողոչը, յամրաքայլ կրիան, կակուղ գորտը, լորձնոտ խխունջը, արիւնարբու տզրուկը, կորստական կարիճը, աշխատասէր մեղուն ու մրջիւնը, զարշասէր ճանճը, երաժիշտ ճպուռն ու ծղրիթը, կտաւագործ մամուկը, լուսաթեւ կայծոռիկը, մետաքսաման շերամը, գունաթեւ թիթեռը, եւայլն։

# ԴԱՍ ԻԹ.

## Բոյսեր

Սոյն գաւառակի բուսաբերութեան մասին ի՞նչ կրնաք ըսել:

*Քանի որ բնութիւնը բնաւ բան մը չէ զլացած սոյն գաւառակին, անշուշտ բուսաբերութիւնքն ալ լաւ եղած պէտք է ըլլայ և որոյ մասին անհրաժեշտ հարկ կը սեպենք զէթ համառօտ ծանօթութիւն մը տալ:*

*ա) Անտառք.— Ինչպէս վերը ըսինք՝ Պէկ Տաղըի այլեւայլ տեղերուն մէջ կան կաղնեայ և ցրդիի անտառներ, որք մեծաւ մասամբ կը գտնուին Գալիպանի Թաթառ Օպասը (Աղաճ Ուճը) անուանեալ տեղերը, Խաչօպայի, Խալիքանի և Սէվաէրէկի լերանց մէջ, որոնցմէ քաղաք կը բերեն վառելափայտ, ածուխ և շինութեանց համար սիւն:*

*Այս անտառներէ ոմանք՝ գիւղացւոց մէջ բաժնուած ըլլալով, իւրաքանչիւրը զիւր բաժինը «կորի» կ'անուանէ, յորմէ վառելափայտ եւայլն շատ չի կտրելով՝ միայն իւր անասնոց իբր ձմեռուան պաշար տերեւ (եափրագ) կը դիզեն:*

*բ) Սերմ և պտուղ.— Այս գաւառակի մեծ մասը դաշտային է. Թէ՛ քաղաքի և թէ գիւղախմբից հողերն (բացի հարաւային կողմէն) բերրի և արգաւանդ (մահսուլտար) են, միայն Գալիպանի հողերն բաղդատմամբ միւսներուն չէ այնքան գովելի: Այս հողերուն մէջ կը ցանուին ու կը մշակուին բարեխառն գօտւոյ ամէն տեսակ արմտիք և բանջարեղէններ:*

*Քաղաքի, արուարձանաց ինչպէս նաև Զըրմըգտը, Թլնտիւպէկ և այլ այգեգիւղացւոց պարտէզ-*

ներն ու այգիները նշանաւոր են աւելի իրենց ծառազարդութեամբ քան իրենց առատ բերքերովն ու արդիւնքովը։

Հիմա բերաննիդ ջուր թող չկտրի։ Մէկ-մէկ անձեռոց առէ՛ք քովերնիդ որ յետոյ ձեռքերնիդ լըւանալով կոնք—չոփնղին մէջ որբուիք, զի պիտ՝ համրեմ Մալաթիոյ գունաւէտ, քաղցր և մանր ու խոշոր պտուղները, ինչպէս՝

Տանձերէն՝ 1) Պզտիկ դեղին տանձը՝ որ ամենէ կանուխ կը հասուննայ։ 2) Մեծ դեղին տանձը՝ որ աշնան վերջերը կը հասուննայ, է պինդ այլ քաղցր։ 3) Պէկ Արմուտըն՝ որ կլոր, կակուղ ու թթուաշ է։ 4) Չէլէպ Արմուտըն՝ որ իրօք շողգամի մեծութեամբ և տափակիկ ու քաղցր է։ 5) Հաճի Համզէն՝ ամենախոշոր, երկայն, կակուղ և քաղցրահամ է։ 6) Պուլ Արմուտըն՝ որ կլոր և մեղրահամ է։ 7) Ձմրան Տանձը՝ որ մանրկեկ ու թթուաշ է և հազիւ ձմրան մէջտեղը կ՚ուտուի, քաղուելէ վերջ փռուելով՝ հասուննալու համար, եայլն։ Աստնցմէ միքանին մինչեւ նորը կը դիմանան։

Խնձորներէն՝ 1) Թեփուտ խնձորը, դեղին, կակուղ ու քաղցր է։ 2) Շրխշրխը էլման՝ որ չիկակարմիր, երկար և շաքարահամ է. կուտը կը խաղայ երբ ձեռքով օրրելու ըլլայ։ 3) Քեավի էլմասըն՝ որ երկար, խոշոր, կակուղ և կանաչ է։ 4) Ձմրան խնձորը՝ որ դնդաձև, կարմրիկ, պինդ և քաղցր է։ Այս վերջինն ալ մինչեւ նորը և ալ աւելի կրնայ դիմանալ։

Խնձորի տեսակներ դեռ շատ կան. ի միջի այլոց անուանի և աննման է թէ՛ խոշորութեամբ, թէ գեղեցկութեամբ ու գոյնով և թէ համով Եագըլը Էլման։ Ասիկա դեռ ծառին վրայ չհասունցած ու

գունաւորած՝ պէտք եղած արձակ կամ ոտանաւոր գրութիւնը նեղ թուղթի մը վրայ գրելէ ետք՝ այդ տառերը և կամ բաց մնացած տեղերը զանակով մը կը հանուի ու թուղթը կը փակցուի խնձորին վրայ, մինչև որ խնձորը բոլորովին կարմրնայ ու հասուննայ և քերցնելով թուղթը վրայէն կ'առնուի, որ բընութեան և արհեստին շնորհիւ դիւրընթեռնելի տառերով գրուած խնձոր մ'է, զոր մարդիկ կը նըւիրեն իրենց սիրելեաց։ Ասոր մէկ տեսակը քաղուելէ ետք կը գրուի ու այնպէս կը կարմրի։

Ծիրան՝ գլխաւոր երկու տեսակ է. աշըլը (պատուաստեալ), խուտայի (անպատուաստ)։ Անպատուաստը իր քանի մը տեսակներն ունի, որոց թէ թարմը և թէ չորը (չէր) կ'ուտեն։ Իսկ պատուաստեալը երեք տեսակ է որք կը ճանչցուին էրմէնի, Հաճի Խալիլ և Նէկէն անուամբ, յորոց ամենապատուականն է էրմէնին, այնպէս որ հազիւ մարդ 15 հատն կրնայ ուտել իր անհամեմատ քաղցրութեանը համար։ Պատուաստեալը ընդհանրապէս չորցնելով՝ ինչպէս կուտը, նոյնպէս կճեպը (գաղուղ) մինչև Եւրոպա կը ղրկուի. իսկ թացէն կը պատրաստուի պատուական անուշեղէններ (բէչէլ, բէրվերատ)։

Պատուաստեալի կուտը անպատճառ կասի (անուշ) կ'ըլլայ, Խուտայիներունը թէ՛ կասի և թէ լեղի։

Հուն — Չում (գըզըլճըգ) երկու տեսակ է. Սուլթանի, այսինքն պատուաստեալ և խուտայի, այսինքն հասարակ։ Ասկից ալ կը պատրաստուի անուշահամ բէչէլ և մրգօղի։

Սերկեւիլ — ասիկա ալ մէկ քանի տեսակ ըլլալով՝ հատը մինչև մէկ նուկի կշռողը կը գտնուի։ Ասոր թարմը ուտելու չի գար այնքան թթու ըլլալուն. սակայն ասկէ պատրաստուած կերակուրը ա-

մենապատուական ըլլալով՝ երբ կոչունքնի սեղանին վրայ գայ, տար տրուած դգալի հարուածները բը-նաւ այլ կերակուրի մը չի տրուիր։

Բալ — որդէն մէկ տեսակ մ'է որոյ թարմը ու-տուելէ զատ վերջին տարիներս պատուական մրգօ-ղի ալ կը պատրաստեն անկէ։

Դեղձ — երեք տեսակ կայ ասկէ, որք ծանօթ են Քիւնտիւպէկ, Շամ և Հինտ Շէֆթալիսը անունով, որոց առաջինն ու երկրորդը թուսուտ (խուր) և դառնակուտ է. իսկ երրորդը անթու և կուտը ա-նոյշ։ Ասոնց մէջ ալ 100 տամ կշռող կը գտնուի։

Թութ — Մալաթիոյ ծառերուն եթէ ոչ մեծ մա-սը գոնէ կէսը թթենի են. ուստի արդիւնքն ալ միւս բոլոր պտուղներուն կը համապատասխանէ։ Թութէն կը պատրաստեն առատ րուբ, բաստեղ, հա-տալիթ, օղի, ձգի, եւայլն։

Խաղող — Սա ևս ունի իր տեսակները. զոր օրինակ՝ տիկնամատն (խաթուն բարմաղը) է կարմ-րաթրիկ և մեծապտուղ. սև խաղող՝ որուն պատուա-կան չամիչն ու գինին կ'ըլլայ. հաճի գըրան, եր-կարապտուղ և կարմրապտուղ և կարմրաթրիկ. Մա-զուլը՝ կլոր և թանձրամիս, կուրեչ և չամ՝ կլոր, ջրոտ և քաղցրահամ եւայլն։

Եւ վերջապէս ընկոյզ, կաղին, կեռաս, նուշ, նուռ, թուզ եւայլն։

գ) Ծաղիկ. — Իմիջիայլոց ծանօթ են հետեւեալք.

1. Վարդն իր տեսակովը։ 2. Թանթրուենի (եալան կօզ) ծաղիկ։ 3. Մեխակ (եապան գարանֆի-լի)։ 4. Յասմիկ (եասամին չիչէյի)։ 5. Շուշան (զամ-պագ)։ 6. Մօր Մանուշակ։ 7. Պապըլիկ (երկնագոյն մանուշակ)։ 8. Րեհան։ 9. Սմբուլ։ 10 Թուշածաղիկ (գատիֆէ)։ 11. Կակաչ (լալէ)։ 12 Ցակինթ (նունու-

ֆէր)։ 13. Անթառամ։ 14. Հարսնուկ (կէլինճիկ չի-չէյի)։ 15. Այգազարդ (սէհօր սէֆասը)։ 16. Ապրիմ Զապրիմ։ 17. Արեւածաղիկ (կիւն չիչէյի)։ 19. Մե-կոն (աֆիոն չիչէյի)։ 20. Ձնծաղիկ։ 21. Տիկնոբիբ (խաթուն քիբրիկի)։ 22. Բողեղ (սարմաշըգ) եւայլն։

Մալաթիոյ ինչպէս ջուրը, նոյնպէս ալ պտուղ-ները, ծառերն ու ծաղիկները աննման եւ բազմա-զանակ ու բազմապտուղ են։ Երբ մի անգամ դաշ-տերն ու պարտէզները այցելելով շրջագայիս, ի՜նչ երփնագոյն եւ անուշահոտ՝ ծանօթ եւ անծանօթ ծա-ղիկներու հրապուրիչ եւ զմայլելի տեսարանները չեն պարզուիր աչքերուդ առջեւ. ծաղիկներ, տեղ կարմիր, տեղ մը դեղին. վերը ճերմակ, մէջը կա-նանչ, վարը երկնագոյն. այս կողմը գորշ մանիշա-կագոյն, այն կողմը խարտեաշ ու խատուտիկ. կար-ծես գորգեր ու կարպետներ սփռուած են որոց մէջն ու վրան որքան թիթեռներ կ'ոստոստան ու կը թռչկոտին եւ որչափ մեղուներու խուլ բզզանքն ու տղտըզանքը կը լսուի։ Ի՜նչ հաճոյք չես զգար հապա երբ կը տեսնես պտուղները որ իրենց գեղեցկու-թեամբը կը հրապուրեն զքեզ իրենց մօտենալու. ա-ւելի աչուըն որ ծառին տակ երթաս, թո՛ղ թռչնոց կտցահարելով վար թափածները՝ որոնք ոտքիդ տակ կը տրորին ու կը ճզմուին, այլ սալորթազարդ ճիւղերու փաթէն թափ ի թափ կ'իյնան գլուխիդ վրայ, ծոցիդ եւ ձեռքիդ մէջ։ Այո, ասոնք կը հրա-պուրեն, կը զմայլեցնեն իրենց գոյնովն ու անու-շութեամբը, աւելի զանոնք՝ որ չեն մեկնաբանեցի։

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՄԱԼԱԹԻՈՅ

## Արհեստ եւ վաճառականութիւն

*Թէև հետևեալ ծանօթ արհեստները կը գտնուին հոս, բայց բոլորն ալ հին վիճակի մէջ են։ Արհեստները մեծաւ մասամբ հայոց ձեռքն են։ Թուրքերը ընդհանրապէս կ'ապրին իրենց անշարժ կալուածներու այն է ագարակներու և արտերու եկամուտներովը և վերջերս իրենք ալ սկսած են քանի մ'արհեստներու հետամուտ ըլլալ։*

*Տրեխակարութիւն, կօշկակարութիւն (տեղական) մոյկակարութիւն, հիւսնութիւն, ներկարարութիւն. ոսկերչութիւն, թափչութիւն, սափրիչութիւն, եաղմաճութիւն, թաղագործութիւն, զինագործութիւն, քարակոփութիւն, որմնադրութիւն, դարբնութիւն, բրուտութիւն, գինեգործութիւն, սեղանաւորութիւն ժամագործութիւն, մոմանութիւն, ձիթահանութիւն—իւղագործութիւն։ Ասոնք բոլորն ալ հայոց ձեռքն են.*

*Երկաթագործութիւն. պայտառութիւն, համետագործութիւն, սատայնանկութիւն, դերձակութիւն (եւրոպական և տեղական), թիթեղագործութիւն, բաղնեպանութիւն, աղօրեպանութիւն, չերամարածութիւն։ Ասոնք ալ խառն են տաճկաց և հայոց ձեռքին մէջ։*

*Խաղաղորդութիւն, մսագործութիւն՝ տաճկաց ձեռքն են։*

Գալով առեւտրական ճիւղերու, այսինքն վաճառականութիւն, մանրավաճառութիւն, փերեզակութիւն, մրգավաճառութիւն՝ մեծաւ մասամբ տաճիկներու ձեռքն են։

Ինչպէս ըսինք, այս բոլոր արհեստները ընաւ բարեփոխութիւն կրած չեն և կրելու ալ յոյս չի կայ։ Արհեստաւորն ինչ որ առած է իր հօրմէն ու վարպետէն՝ զայն ի գործ կը դնէ առանց որեւէ խորհուրդ կամ մտածութիւն դարձնելու կատարելագործութեան եղանակին։ Ըսել է թէ մեր արհեստաւորները յառաջդիմութեան փոյթ ու փափաք չունին. Համայնական գործակցութեան տակաւին անծանօթ ըլլալով՝ դեռ չէ եղած արհեստաւոր կամ գործաւոր մը որ իր արհեստակցին կամ ընկերին հետ միացած գործէ, հապա ամէն ոք իր գիտցածով կ՚ընթանայ, որով խիստ հեռի կը գտնուի բարեկցութենէ։

## Հեռաւորութիւն շրջակայ քաղաքներու

Մելիտինէի շրջակայ քաղաքներն (*) են հետեւեալները.

### ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ

| | | | |
|---|---|---|---|
| Տարէնտէ | դէպի արեւմուտք | 18 | ժամ |
| Կիւրին | » » | 23 | » |
| Կեսարիա | » » | 56 | » |
| Էլպիստան | » » | 18 | » |
| Մարաշ | դէպի հարաւային արեւմուտք | 38 | » |
| Պեհեսնի | » » » | 22 | » |

(*) Քաղաքներէն ոմանք ուրիշ նահանգներու կը վերաբերին։

| | | | |
|---|---|---|---|
| Այնթէպ | դէպի հարաւային արեւմուտք | 50 | ժամ |
| Հալէպ | » » » | 74 | » |
| Հիւսնիմանսուր | դէպի հարաւ | 18 | » |
| Ուրֆա | » » | 36 | » |
| Սեւերէկ | » » | 28 | » |
| Տիարպէքիր | դէպի հար. արեւելք | 46 | » |
| Չիւնկիւշ | » » » | 18 | » |
| Խարբերդ | » հիւս. » | 18 | » |
| Բալու | » » » | 34 | » |
| Կապան Մադէն | » » » | 20 | » |
| Տիւրիկ | » հիւսիս | 38 | » |
| Ակն | » » | 36 | » |
| Արաբկիր | » » | 18 | » |
| Սեբաստիա | » » արեւմուտք | 42 | » |
| Եւդոկիա | » » » | 60 | » |

## Արտածութիւն

*Մալաթիոյէն գլխաւորաբար կ'արտածուին հետեւեալ քաղաքները զանազան ապրանք ու վաճառք։*

*Հալէպ.— Բամբակ, բրինձ, խաշխաշի հունտ և ձէթ, նուշ, մեղր, գխտոր, քիթրէ, պանիր. չոր պտուղ, գորգ, կապերտ, եւայլն։*

*Այնթէպ.— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, պանիր, միրգ, չոր պտուղ, գորգ, կապերտ, եւայլն։*

*Հիւսնիմանսուր.— Թաց ու չոր պտուղ, ատաղձ, սնտուկ, եազմա, խաշխաշի ձէթ, եւայլն։*

*Պէհեսնի.— Թաց ու չոր պտուղ, տախտակ, սընտուկ, եազմա, խաշխաշի ձէթ, եւայլն։*

*Եդեսիա.— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, պանիր, գորգ, կապերտ, եազմա, Թարմ ու չոր պը-*

ֆէր)։ 13. Անթառամ։ 14. Հարսնուկ (կէլինճիկ չիչէյի)։ 15. Այգազարդ (ունաբ ոչֆասը)։ 16. Ապրիմ Զապրիմ։ 17. Արեւածաղիկ (կիւն չիչէյի)։ 19. Մեկոն (աֆիոն չիչէյի)։ 20. Ձնծաղիկ։ 21. Տիկնոբիր (խաթուն քիբրիկի)։ 22. Բողեղ (սարմաշըգ) եայլն։

Մալաթիոյ ինչպէս ջուրը, նոյնպէս ալ պտուղները, ծառերն ու ծաղիկները աննման և բազմազանակ ու բազմապտուղ են։ Երբ մի անգամ դաշտերն ու պարտէզները այցելելով շրջագայիս, ի՜նչ երփնագոյն և անուշահոտ՝ ծանօթ և անծանօթ ծաղիկներու հրապուրիչ և զմայլելի տեսարանները չեն պարզուիր աչքերուդ առջեւ. ծաղիկներ, տեղ կարմիր, տեղ մը դեղին. վերը ճերմակ, մէջը կանանչ, վարը երկնագոյն. այս կողմը գորշ մանիշակագոյն, այն կողմը խարտեաշ ու խատուտիկ. կարծես գորգեր ու կապերտներ սփռուած են որոց մէջն ու վրան որքան թիթեռներ կ'սաւառնան ու կը թռչկոտին և որչափ մեղուներու խումբ բզզանքն ու աղորզանքը կը լսուի։ Ի՜նչ հաճոյք չես զգար հապա երբ կը տեսնես պտուղները որ իրենց գեղեցկութեամբը կը հրապուրեն զքեզ իրենց մօտենալու. աւելի աչուընդ որ ծառին տակ երթաս, թո՛ղ թռչնոց կոցահարելով վար թափածները՝ որոնք ոտքիդ տակ կը տորորին ու կը ճզմուին, այլ սալորթազարդ ճիւղերու փաթէն թափ ի թափ կ'իյնան գլուխիդ վրայ, ծոցիդ և ձեռքիդ մէջ։ Այս, ասոնք կը հրապուրեն, կը զմայլեցնեն իրենց գոյնովն ու անուշութեամբը, աւելի զանոնք՝ որ չեն Մելիտինեցի։

# ՏՆՏԵՆԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՄԱԼԱԹԻՈՅ

## Արհեստ եւ վաճառականութիւն

*Թէև հետեւեալ ծանօթ արհեստները կը գտնուին հոս, բայց բոլորն ալ հին վիճակի մէջ են։ Արհեստները մեծաւ մասամբ հայոց ձեռքն են։ Թուրքերը ընդհանրապէս կ'ապրին իրենց անշարժ կալուածներու այն է ագարակներու և արտերու եկամուտներովը և վերջերս իրենք ալ սկսած են քանի մ'արհեստներու հետամուտ ըլլալ։*

*Տերխակարութիւն, կօշկակարութիւն (տեղական) մոյկակարութիւն, հիւսնութիւն, ներկարարութիւն. ոսկերչութիւն, թափչութիւն, սափրիչութիւն, եաղմաճութիւն, թաղագործութիւն, գինագործութիւն, քարակոփութիւն, որմնադրութիւն, դարբնութիւն, բրուտութիւն, գինեգործութիւն, սեղանաւորութիւն ժամագործութիւն, մոմմանութիւն, ձիթահանութիւն—իւղագործութիւն։ Ասոնք բոլորն ալ հայոց ձեռքն են.*

*Երկաթագործութիւն. պայտառութիւն, համետագործութիւն, սատայնանկութիւն, դերձակութիւն (եւրոպական և տեղական), թիթեղագործութիւն, բաղնեպանութիւն, աղօրեպանութիւն, չերամարածութիւն։ Ասոնք ալ խառն են տաճկաց և հայոց ձեռքին մէջ։*

*Խաղաղորդութիւն, մսագործութիւն՝ տաճկաց ձեռքն են։*

*Գալով առեւտրական ճիւղերու, այսինքն վաճառականութիւն, մանրավաճառութիւն, փերեզակութիւն, մեծավաճառութիւն՝ մեծաւ մասամբ տաճիկներու ձեռքն են։*

*Ինչպէս ըսինք, այս բոլոր արհեստները բնաւ բարեփոխութիւն կրած չեն և կրելու ալ յոյս չի կայ։ Արհեստաւորն ինչ որ տեսած է իր հօրմէն ու վարպետէն՝ զայն ի գործ կը դնէ առանց որեւէ խորհուրդ կամ մտածութիւն դարձնելու կատարելագործութեան եղանակին։ Ըսել է թէ մեր արհեստաւորները յառաջդիմութեան փոյթ ու փափաք չունին. համայնական գործակցութեան տակաւին անծանօթ ըլլալով՝ դեռ չէ եղած արհեստաւոր կամ գործաւոր մը որ իր արհեստակցին կամ ընկերին հետ միացած գործէ, հապա ամէն ոք իր գիտցածով կ'ընթանայ, որով խիստ հեռի կը գտնուի բարեկցութենէ։*

## Հեռաւորութիւն շրջակայ քաղաքներու

*Մելիտինէի շրջակայ քաղաքներն (*) են հետեւեալները.*

### ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ Ի ԿԵԴՐՈՆԷ

| | | | |
|---|---|---|---|
| Տարէնտէ | դէպի արեւմուտք | 18 | ժամ |
| Կիւրին | » » | 23 | » |
| Կեսարիա | » » | 56 | » |
| Էլպիստան | » » | 18 | » |
| Մարաշ | դէպի հարաւային արեւմուտք | 38 | » |
| Պեհեսնի | » » » | 22 | » |

(*) Քաղաքներէն ոմանք ուրիշ նահանգներու կը վերաբերին։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *Այնթէպ* | *դէպի* | *հարաւային* | *արեւմուտք* | 50 | *ժամ.* |
| *Հալէպ* | » | » | » | 74 | » |
| *Հիւսնիմանսուր* | *դէպի* | *հարաւ* | | 18 | » |
| *Ուրֆա* | » | » | | 36 | » |
| *Սեւերէկ* | » | » | | 28 | » |
| *Տիարպէքիր* | *դէպի* | *հար.* | *արեւելք* | 46 | » |
| *Չիւնկիւշ* | » | » | » | 18 | » |
| *Խարբերդ* | » | *հիւս.* | » | 18 | » |
| *Բալու* | » | » | » | 34 | » |
| *Կապան Մադէն* | » | » | » | 20 | » |
| *Տէւրիկ* | » | *հիւսիս* | | 38 | » |
| *Ակն* | » | » | | 36 | » |
| *Արաբկիր* | » | » | | 18 | » |
| *Սեբաստիա* | » | » | *արեւմուտք* | 42 | » |
| *Եւդոկիա* | » | » | » | 60 | » |

## Արտածութիւն

*Մալաթիոյէն գլխաւորաբար կ'արտածուին հետեւեալ քաղաքները զանազան ապրանք ու վաճառք։*

*Հալէպ.— Բամբակ, բրինձ, խաշխաշի հունտ և ձէթ, նուշ, մեղր, գխտոր, քիթրէ, պանիր. չոր պտուղ, գորգ, կապերտ, եայլն։*

*Այնթէպ.— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, պանիր, միրգ, չոր պտուղ, գորգ, կապերտ, եայլն։*

*Հիւսնիմանսուր.— Թաց ու չոր պտուղ, ատաղձ, սնտուկ, եազմա, խաշխաշի ձէթ, եայլն։*

*Պեհեսնի.— Թաց ու չոր պտուղ, տախտակ, սընտուկ, եազմա, խաշխաշի ձէթ, եայլն.*

*Եդեսիա.— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, պանիր, գորգ, կապերտ, եազմա, թարմ ու չոր պը-*

տուղ, ատաղձ, սնտուկ, եազմա, և այլն։

Սեւերէկ.— Խաշխաշի ձէթ, եազմա, չոր պը-տուղ, ատաղձ, և այլն.

Տիարպէքիր.— Մեղր, ձէթ, չոր պտուղ, միրգ, եազմա, սնտուկ, և այլն։

Խարբերդ.— Բրինձ, խաշխաշի ձէթ, թաց ու չոր պտուղ, հասա խըսիր, միրգ, եազմա, ատաղձ, սնտուկ, և այլն։

Տիւրիկ.— Բամպակ, ճերմակ ու կարմիր կտաւ, մանած, բրինձ, չոր պտուղ, միրգ, և այլն։

Արապկիր.— Բրինձ, բամպակ, չոր և թաց պը-տուղ, կարմիր ու ճերմակ կտաւ, միրգ, սնտուկ, խոիր, և այլն։

Ակն.— Պէտէն կտաւ, կարմիր կտաւ, բամպակ, բրինձ, խոիր, չոր պտուղ, և այլն.

Երզնկան.— Բրինձ, պտուղ (չոր և թարմ), եազմա, միրգ։

Եւդոկիա.— Բամպակ, բրինձ, գորգ, կապերտ։

Սեբաստիա.— Գլխաւորապէս միրգ և թաց ու չոր պտուղ, բամպակ, և այլն։

Կեսարիա.— Բրինձ, գորգ, կապերտ, մեղր, չոր պտուղ, և այլն։

Սամսոն.— Խաշխաշի ձէթ, եազմա, բրինձ, պանիր, գորգ, կապերտ, չոր պտուղ, միրգ, և այլն։

Պոլիս.— Նուշ, իւղ պանիր, միրգ, գորգ, կա-պերտ, մեղր, ոչխարի մորթ, և այլն։

ԵՒՐՈՊԱ.— Ոչխարի մորթ, թաւամազ անասուն-ներու մորթ, աֆիոն, գխտոր, քիթրէ, չամիչ, մե-ղր, նուշ, ընկոյզի միջուկ, ծիրանի կճեպ, անուշ և լեղի կուտ, խաշխաշի հունտ ու ձէթ, Մահմու-տիայի արմատ, և այլն։

Ինչպէս կտաւէն, բամպակէն, արմտիքէն, պը-

տուղէն, նոյնքան և ալ աւելի անպտուղ և պտղատու ծառերու արդիւնքն ըլլալով, տատրգձ և չինուածքէ տաստ շատ կը ստացուի։ Զոր օրինակ, ամէն տարի հարիւրաւոր բեռ տախտակ, սնտուկ, կովլակ (անկաւոր տուփ), տուփ. պարզ աթոռ, գը-գալնոց, գրման (թիւման), բամպակ մանելու ճախարակ, աղնելու աղեղ, աղալոց համար սուլիչ (սիւպսիւպի), օրօրոց, սրինգ, փող և այլ շատ մը փայտէ կահեր ու անօթներ կը դրկուին չրջակայ քաղաքները։

## Ներածութիւն

Կը ներածուին զանազան տեսակ գաղթարերք կամ եւրոպական ապրանքներ, ճարտարարուեստի ամէն տեսակներէն մինչև բերեզակի (չէրչի) ամենաչնչին առարկան, այսինքն՝ բրդեղէն, բամպակեղէն, մետաքսեղէն գործուածներ, շաքար, քարիւղ, պղինձ, երկաթ, գամ, մամ, ապակի, ալիզար եւայլն։ Նոյնպէս չրջակայ և հեռաւոր քաղաքներէն կը ներմուծուին բազմաթիւ ապրանքներ. ինչպէս՝

Հալէպէն.— Մանիսա, օճառ, մետաքսեղէն, դիպակ, սնդուս, կերպաս։

Այնթապէն.— Մանիսա, սաղթիան, ատնաման, օճառ, քթախոտ, թուզ, եւայլն։

Հիւսնիւմանսուրէն — Մանած, բամպակ, չամիչ, նուռ, եւայլն։

Մարաշէն.— Մանիսա, սանտր, օղի, եւայլն։

Կիւրինէն.— Շալ և այլ գործուածքներ, դահրի։

Շապին Գարահիսարէն.— Դգալ, պաղլեղ (շապ)։

Երզինկանէն.— Գարի, մանիսա, պղնձեղէն ամաններ, ևայլն։

Արաբկիրէն.— Մանիսա, նուռ, խաղող (երբեմն)։

Ակնէն.— Մանիսա, գանրի, ևայլն։

Կեսարիայէն — Գանրի, ապուխտ, աղ, անիսոն։

Սեբաստիայէն.— Աղ, գուլպայ, ապուխտ, կարմիր կաշի, ևայլն։

Եւդոկիայէն.— Պղնձի տախտակ, պղնձեղէն ամաններ, օղի, գանրի, եազմա, ևայլն։

Խարբերդէն.— Գինի, կերպաս, ճերմակ սիսեռ, սաղթիան, քէօսէլէ, ռանաման, ևայլն։

Բալուէն.— Շրեշ, սոխարմատ, փարչ, ևայլն։

Տիգրանակերտէն՝ Մետաքսեղէն, կերպաս, սաղթիան, ևն։

Չնքուշէն.— Գինի, քէօսէլէ, նուռ, նռան կճեպ։

Այսպէս նաև կը ներմուծուին Պարսկաստանէն՝ թէնպէքի, ցփսի։ Բաբելոնէն՝ թէնպէքի։ Դամասկոսէն՝ կերպաս (երբեմն)։ Կարինէն՝ անիսոն։ Մուսուլէն՝ ղալաքան։

Եւ իր գաւառակներէն որոց սահմանը մօտ է ինչպէս վերն ալ ըսինք, կը բերուին վառելափայտ, ածուխ, սիւն, ոչխար, իւղ, պանիր, գուլպայ, գօտի, գորգ, կապերտ, արմտիք, ծխախոտ։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

### Հանսաևեկան սովորութիւններ

Բաւական հետաքրքրական են Մալաթիոյ հար-սանեկան կամ ամուսնական, սովորութիւնները, ո-րոց մասին տրուած տեղեկութիւնք թէեւ քիչ մը եր-կար բայց կը յուսանք թէ հաճութեամբ կը կարդա-ցուին սիրելի ընթերցողներէն։

Մալաթիոյ հայոց խնամութիւնք գրեթէ միեւ-նոյն կարգաւորութեան տէր եղող ընտանիքներու հետ կը կատարուին. կարծես սոցա համար քանուած է այն առածը թէ՝ «նման զնմանն սիրէ»։ Հազուադէպ է որ (բացառութիւն համարելով կաղ, կոյր, ձեռնատ-ւայլին եղողները) հարուստ ընտանիքի մը աղջիկը աղքատի մը տղուն տրուի կամ աղքատ ընտանիքի մը աղջիկը հարսնացուի հարուստի մը երիտասարդին։

Նշանտուքը յաճախ կը կատարուի տղայութեան ատեն։ Մէկդի ընենք «պէշիկ քէրթմէ»ն. դեռ մանչն ու աղջիկը չծնած իսկ ոսկիներն նշան կը տրուին. հերիք է որ ծնողք երկուստեք համակրին եւ զիրար սիրեն ու որեւէ ուրախութեան մէջ շնորհիւ գործա-կատար օղիին կատակով կամ զուարճաբանութեամբ այդ նիւթին վրայ խօսակցութիւն մը տեղի ունե-

նայ. արդէն գործը ճամբու մտած է, պակասը միայն ծնելիքներն են։ Այս վերջինք ալ եթէ դաշնակուածին համեմատ մէկը մանչ միւսը աղջիկ որ եղաւ. նէ ալ ամենայն ինչ կատարեալ է։ Հոգ չէ թէ իրարմէ մէկ ամսու կամ տարուան մեծ ու պզտիկ են. և կամ վերջը այդ խնամութեան սիրոյ կապը խզուելով ինչպէս որ բազմիցս պատահած է, ատելութեան երկպառակութեան, անպատուութեան, նիւթական ու բարոյական վնասուց ողորմելի և անդարմանելի հետեւանաց տեղի պիտի տայ։

Երբ միջակ և ստորին (աղքատ) դասակարգի ընտանիք պիտի խնամենան, արդէն տղայի (*) ծնողքը իրենց ծանօթներէն կամ անծանօթներէն յարմար աղջիկ մը ընտրած ըլլալով՝ նախ կտրող կապող կին մը ներքին կերպով կը ղրկեն աղջկան մօրը մօտ անոր բերանը (միտքը) հասկնալու համար։ Այդ կինը կը բերէ իր հասկցածը և հետևեալ օրը աղջկան հօր բարեկամներէն (այս բարեկամը «այլճը» կ'ըսուի) մին կը ղրկուի պաշտօնապէս «Աստուծոյ հրամանօքը» աղջիկը նշանելու։

Աղջկան ծնողքը եթէ կամք ունին այդ ուզուած տեղը տալ իրենց աղջիկը, «Աստված գիրէնէ վա՛վ ինչ ըսէ. տանուշուղ մ'է նիքուք՝ ճիկող մի կուտաք» ըսելով այլճին ետ կը ղրկեն։ Մէկ երկու օր ետքը՝ տղուն հայրը կամ եղբայրը, իր ազգականներէն քանիմաց մէկը, նախօրդ օրուան այլճին, (եթէ երբեք արժան դատեն քահանայ մ'ալ) առած՝ գործելու կ'երթան խնամիցուին քով. ալ այս անգամ խնամին ալ խօսք կուտայ պայմանաւ որ աղջկան քեռիին, քեռայրին, հօրեղբօրը և այլ մեր-

(*) Տղայ բառը միշտ մանչ զաւակ հասկցալու է։

ճակայ ազգականաց մասնաւոր ոսկի տանին (*) փա-
անգի եթէ այդ ազգականք այս նշանտուքին չնոր-
հակալ չըլլան, աղջկան ծնողքը ակամայ են կ'առ-
նեն խոստումին. ազգականք ալ որ ոսկին ընդու-
նին, ա՛լ այս խնամութիւնն ալ հաստատ է։

Այդ օրէն սկսեալ անա խնամիք կը սկսին յա-
րաբերութիւնը տաքցնել այնպէս որ խնամիներէն
մէկը, ուրիշ կիները, եթէ եկեղեցի, բաղնիք եւ այլն
տեղ մ'երթայ, պէտք է իր խնամիին հետ երթայ։
Ասոնց խօսակցութիւնը չափ ու սահման չունենար։
Եթէ եկեղեցին ըլլան «Տէր զի Բազում»էն առաջ
կը սկսին եւ «Օրհնեալք եղերուք»էն շատ վերջր կը
լրացնեն։

Տղուն ծնողքը հարուստ թէ աղքատ մինչեւ
հարսանեաց օրերը մօտենան հինգ տաղաւարնե-
րու եւ այլ նշանաւոր օրերուն մէջ անպատճառ խը-
նամու տուն երթալու են։ Երթալէ առաջ մայրը ի-
րենց մօտ ազգականներէն 30ի չափ կիներ կը հրա-
ւիրէ որոնք աղջկան համար մասնաւոր ընծաներ ա-
ռած՝ կը հաւաքուին խնամու տուն երթալու։ Հոն՝
ուտել-խմելէ ետքը՝ բայց ո՛չ գինի ու օղի, «խնա-
մի չէն կեցիր, մեր պսակեցուցածը Աստուած լեցնէ»
ըսելով՝ տարած նուէրնին տուած՝ կը մեկնին։ Մինչ
ասոնք կը մեկնին, մէկ երկու էրիկմարդ ալ տղուն
տնէն գալով՝ կնիկներէն ուելցած կերակուրը կ'ու-
տեն ու խօսակցութեան թերին կը լրացնեն. եւ հը-
րաժեշտի ատեն թաշկինակնուն մէջ ծրարուած մէկ
երկու ոսկին (քրամիգա, եալտուզ, կիւլլը, չէյրէք-
լը) կուտան խնամիին կամ խնամուհւոյն։

Ընտանիք մը հարսնեաց համար ի՛նչ ծախք որ

---

(*) Տարած ոսկիները աղջկան կը վերաբերին եւ ոչ
թէ ազգականաց, զոր յետոյ բերելով կը յանձնեն։

ընէ, երկպառիկը և ոչ ուրիշին կ՚ընէ մինչեւ հարսանեաց օրը. վասնզի ինչպէս ըսինք, երբ այդ խնամու տուն ըսուած անակրծան արարողութիւնը կատարուելու ատեն պէտք է գառն կամ խոյ մորթուի կաթսաներով մէկէն ուրիշ տեսակ կերակուրներ պատրաստուին, եւայլն։

Երբ ոսկիները թիւր չատնայ, հարսնցուն պէտք է զանոնք կա՛մ գլուխը կարէ և կամ երիզ (չերիտ) ընելով՝ կուրծքը կախէ. եթէ չկարէ կամ չկախէ, զանոնք տուողները անպատուած կամ իր նշանածին երթալու կամք չունենալը կը յայտնէ։

Հոս՝ աղջիկ մը դեռ չնշանուած՝ կրնայ ազատ դուրս ելլել, պտտիլ. բայց նշանուելէ ետքը մեծ ամօթ է որեւէ տեղ երթալ. եթէ հարսանիք, բաղանիք, ուխտատեղի եւայլ վայր մը երթալ հարկ ըլլայ, սեւ կամ ճերմակ չարշաւ մը կը փաթթէ մարմինին ու քթին վրայ և տօլով կամ չալ մը գլուխը ձգել և գէմքը ծածկելով կ՚երթայ։

Թէ՛ նշանածին տուն և թէ անոր ազգատոհմին որեւէ անդամաց հետ խօսիլն բոլորովին արգիլուած ըլլալէ զատ ուր որ ալ տեսնէ զանոնք, պէտք է փախչի ու պահուի որ զինքը չտեսնեն, բացառութիւն համարելով պզտիկ տղայոց հետ խօսիլ ու անոնցմէ չփախչիլը։ Սակայն այս վերջինները եթէ որեւէ հարցում մ՚ունենան, կը պատասխանէ «այո»ն հրֆ և «ոչ»ը ձըն նշանաձայնով կամ գլխու շարժումով։ Այսպէս նաև տղան ու աղջիկը մինչեւ առագաստի իրիկունը ո՛չ իրարու վրայ գաղափար կ՚ունենան, ո՛չ ալ իրարմէ լուր կամ տեղեկութիւն կը ստանան և կամ զիրար կը ճանչնան։ Եթէ երբեք զիրար տեսնեն և այդ տեսութիւնն ալ իմացուի, ծանր նախատանաց կ՚ենթարկուին։

## Հարսանիք

Հարսանեաց օրերը կը մօտենան։ Վանքի, ու երիտասարդը 25—30 և աղջիկը 15—20—25 տարեկան եղած են։ Հոս հազուադէպ է տղան 12—15 և աղջիկը 10—12 տարեկան հասակին մէջ ամուսնացնել կամ հարսնացնել։

Հարսանիքէն մէկ երկու շաբաթ առաջ երիտասարդի ազգականներէն կամ բարեկամներէն մէկը հարսնցուին ծնողաց քով կը ղրկուի զայն ամուսնութեան խնդրելու։ Եթէ աղջկան ծնողքը իրենց պատրաստութիւնը տեսած են, «է՜հ, հետի գալիք շաբաթ լաթեր թող ձեւուի» ըսելով նա կը ղրկեն։ Յաջորդ շաբթուան որոշեալ օրը տղուն ծնողքը մէկ երկու մարդով գերձակն ալ հետը առած՝ կ'երթան լաթ ձեւելու։ Աղջկան մայրը կը ներկայացնէ այն զգեստները (ընդունը, կերպաս և սովայի կամ խաթիֆա բասուած որկեթել կերպասն) զոր առաջ բերուած էին. գերձակն ալ պէտք եղածին պէս ձեւել, յետոյ՝ հարսանեաց ո՛ր օր ըլլալն ալ որոշած՝ կը մեկնին։ Մեկնելու ատեն աղջկան մայրը թէ՛ գերձակին և թէ միւսներուն մէկական նոր թաշկինակ կը նուիրէ։

Անոնց որ կարողութիւնը կը տանի, հարսանիքէն առաջ իրենց խնամին հացկերոյթի կը հրաւիրեն, որոնք ամբողջ ազգականօք պէտք է գան այդ հրաւէրին։

Հոս՝ սովորաբար հարսանիքը աշուն և պատկը երկուշաբթի կամ հինգշաբթի գիշերը կ'ըլլայ։

Հասան հարսանեաց օրերը։ Երկու խնամիներն ալ իրենց բոլոր ազգականաց, բարեկամաց և մեր-

ձաւորաց տուները գտնուած չափահաս աղջիկներն ու հարսերը անձամբ հրաւիրելէ յետոյ, թաղերը և շուկան էրիկմարդիկը հրաւիրելու համար թաղապետ մը (մըխտար), կանանց համար ալ դայեակ մը ընտրելով կը ղրկեն։ Դայեակը իր հետ կ'առնէ պարկով հաց որ պատշաճ տեղերն մէյմէկ հատ տայ։ Հրաւիրելու առեն դայեկի նշանաբանն է. «Ս...ենց Թ... պաճին մախսուզ բարեւ ունի, հարսնիք հրամեցէք, աղջիկնիդ կամ հարսերնիդ կօնաղ տուէք. տարօրը տղեդ կամ աղջիկնիդ ըլլի։» Էրիկ մարդոց համար բացի հրաւիրակէ վերջերս մասնաւոր անձանց հրաւիրագիր ալ կը ղրկեն։

Հրաւիրեալք՝ ուրիշ հարսունք և աղջկունք, հետ օրըհետէ կը լեցուին հարսնետունն։ Մէկ կողմէն հաց կը թխեն տաշտերով, միւս կողմէն կաթսաներով կերակուր կը պատրաստեն և կը լսուի թմբուկի թրմփ, թըմփ, և ծափերու չխի չխիերն և նուագաց ներդաշնակութիւնն։ Այսպէս չորս հինգ օր շարունակելէ ետք՝ երբ հարսանեաց առաւօտն ըլլայ Ախպըրտունի (կնքահօր) կողմէն փեսան, ազապաշիներն և 30ի չափ հարսնեւորք բաղնիք կը հրաւիրուին։

Բաղնիքէն կուգան։ Ժամը 4—5ին միջոցները սափրիչ գալով՝ փեսան իրեններուն մէջ նստեցուցած՝ կ'ածիլէ։ Սափրիչը եթէ փորձառու ոք է, օճառէ (սապօն) մօրուք մը կը շինէ փեսային երեսը որ կը նշանակէ՝ «փեսան օճառի պէս ճերմակ ալիք ունենայ և ապրի իր կնոջ հետ»։ Փեսայէն ետք

---

(*) «Ազապ պաշի»ն է փեսային այն բարեկամն ու ազգականն որ մինչեւ առագաստի իրիկունը իր հետ կը պտտի։

կնքահայրն ու ազապպաշիներն ալ կ'ածիլուին, ինչ-պէս քաղանիքի, նոյնպէս ալ ածիլուելու դրամը կնքահայրը տալով, որուն փոխարէն կ'ընդունի ատ-նաման մը և գուռն ուրեք զգուն մ'ալ։

Ժամը 6—7ն է։ Քահանան կուգայ փեսան հագ-ուեցնելու. այս միջոցին փեսան մօտակայ տեղ մը կ'առանձնանայ որպէսզի իրեններր գալով տանին զինքը. (այս պահուիլը ի՛նշան ամօթխածութեան է)։ Քահանան կը սկսի «Արեգական արդարութեան» շարականը և պաշտօնեայք հանելով փեսայի ու կնքահօր հին լաթերը նորն կը հագցնեն։ Ամէն մէկ լաթ փեսայի վրան տալու առեն՝ հարսանեաց մանուկները բարձրաձայն կը գոչեն. «Լօ՛չ թագաւորի լօ՛չ։ Հերշա՛, շուրշա՛, ալեհէ՛«։ Որ է՝ «Թագաւորը (փեսան) լուսեղէն հանդերձ հագաւ։ Աստուած շնոր-հաւոր արասցէ՛»։ Յետոյ փեսան ու կնքահայրը խո-նարհութեան յարգանքներ մատուցանելով բոլոր հանդիսականաց, կ'առանձնանան։

Ասկէց անմիջապէս վերջը կը պատրաստուին բազմութեամբ հարսնամուտուն (հարսնառում) եր-թալ։ Այս բազմութիւնը կը բաղկանայ մեծաւ մա-սամբ էրիկմարդիկներէ ու տղաքներէ և 1—25 կի-ներէ։ Կանանց թիւը միշտ կենտ պէտք է ըլլայ որ վերադարձին նոր հարսն ալ մէկտեղ հաշուելով զոյգ թիւ կազմեն և այս ի՛նշան սոյն նոր ամուս-նութեան է։

Սոյն բազմութեամբ կը հասնին աղջկան տունը ուր մէկ մէկ սուրճ խմելէ յետոյ՝ քահանան հալաւը օրհնելով կը մեկնի։ Իսկ այր մարդիկ կը սպասեն ցլրուիլն կանանց սովորական արարողութեան։

Կանանց այս արարողութիւնը խօսքով չըլլար։ Հարսնցուին անուշ (գօլթուտ) ներքէն երկու հարս

բռնած՝ մի քանիներն ալ մոմ ի ձեռին առջեւէն չարուած՝ կը տանին բազմութեան մէջ դրուած մատնաւոր բարձի մը մօտ. և այդ բարձին շուրջը երեք անգամ դարձնելէ ետքը նստեցնելով մոմազարդ աթոռի մը մէջէն քիչ մը թաց հինէ կ'առնեն և մէճիտի մէկ ղրուշնոց մ'ալ մէջը դրած՝ ձեռքերը կը հինայեն։ Աղջիկը հոս ընելիք մը ունի․ այն է՝ իր զօրութիւնը ցոյց տալու համար ձեռքերը պինդ մը կը գոցէ և շատ դժուարութեամբ կը բանայ։ Յետոյ նոր լաթեր հագցնելով գլուխը կը կապեն։ Չմոռնանք ըսել որ մազերը արդէն հիւսուած են մօր տան կողմէն։ Մազերուն խոպոպները դայդթաղուած են դարձեալ ի նշան նոր ամուսնութեան։ Մազերը հիւսուած ատեն արու զաւակ բերող կնոջ մը կաթը կը կթեն վրան որ ան ալ արու ծնի։ Ուռենւոյ տեղւ կը դնեն ծայր որ սկեսրոջ տան անկիւնք այդ տեղւոյն նման իր վրայ դողայ։ Աղ կը ծրարեն թաշկինակին ծայրը և հաց կը դնեն ծայրը որ բերելով փեսայի տան պատմանին մէջ և հացի սակառին մէջ դնէ, որ համով հաստ ըլլան իրարու հետ։

Հոդ՝ կանոնցալ արարողութիւնը գրեթէ լմնցած ըլլալով բազմութիւնը դուրս կ'ելլէ, և աղջկան մայրը՝ 10—15 հատ զաթայ հարսանու կինկրուն տալէ զատ, մէկ երկու հատ ալ աղջկան ծոցը կը դնէ որոյ փոխարէն նորա ալ ծրար մը պատեղ, մ'իրդ և հինէ տալով համար կը հանեն դուրս և զարդարեալ ձիու վրայ նստեցուցած՝ հարսին ծնողաց, եղբարց և ազգականաց «Պապա», չէն կեցե՛ր․ Աստուած հետդ էս դրանը էհասա ու մէօհասա չընէս» ըսելով շնորհակալութիւն յայտնելէ յետոյ, պարերով ու խաղերով կ'ուղղուին եկեղեցի։ Հարսին հեծած ձին որձ ըլլալու է. այս ալ խորհրդաւոր է։

Հարսնեւորները դեռ չեկած՝ փեսան արդէն իրեններովը եկեղեցի երթալով խոստովանած՝ ըստրնկայս կը սպասէ հարսին գալստեանը։ Ահա հարսնեւորք ալ եկան։ Հարս ու փեսայ աջ ձեռն յաջ ձեռքին բռնած և գլուխ գլխի տուած կը կանգնին Ս. Պսակի։ Այս նոր ամոլը հոս ընելու ծարպիկութիւն մը ունին. այն է՝ երկուքն ալ կ'աշխատին որ իրենց ձեռքի բութ մատն միւսի մատին և աջ ոտքը անոր ոտքին վրայ դնէ, այն նպատակաւ որ իրարու վրայ ազդեցութիւն ունենան։ Ասկեց զատ փեսան և հարսին պաշտող կիներէն մէկը՝ մէկ մէկ գմելին (զոր կանխաւ պատրաստած կըլլան) բանալով կը բռնեն գմերջ պատկառութեան և ապա կը գոցեն։ Պսակը լրանալուն պէս՝ քահանայք հարսին թեւերէն բռնած ու տանց փեսայի ու հարսի փոթէն մարդ անցնելու տեղի տալու՝ ծնծղայ, զանգակ հնչեցնել և «զՔրիստոս Թագաւոր»ն երգելով մինչև տաճարին դուռը կ'ուղեկցին և օրհնութիւն մեծ ընելով հարսանեաց տէրերէն մէյմէկ նուէր կ'ընդունին։

Մինչև այդ առեն հարսնեւորներէն ոմանք ալ եկեղեցւոյ բակին մէջ Բաղոսի արարողութիւնը կատարած՝ հարսի ձիուն քով կը հսկեն որ մի գուցէ հեծնելու առեն տակէն մարդ անցնի, կամ ապանդակի (իւղէնկի) մէջէն քար անցնէ։ Թէ՛ վերը քահանայից ըրած գործողութիւնը և թէ այս վերջինք արգելք կը կարծուին թշնամեաց այն նոր ամոլին իրարմէ պաղեցնելու նպատակաւ ընելիք գործառնութեան։

Եկեղեցիէն որ դուրս ելան՝ փեսան իրեններով առջեւէն ւեռի, և հարսը ձիուն վրայ հեծած հետ ընդ հետ (անմիջապէս ետեւէն) դարձեալ նոյն բազ-

մութեամբ եւ նուագներով ու խաղերով կ'երթան տուն։ Երբոր բակին մէջ հարսը ձիւն սպիտակ իջեցնեն, կեսուրը պատշգամէն կամ տանիքէն չամ՞ի վար կը ձգէ կանանչ բլուր մը. որպէսզի հարսը վախնալով միշտ հնազանդ պահուի իրեն։

Հարս բերող բազմութիւնը կը նստի եւ փեսան իւրաքանչիւրին զատ զատ ձեռքով թէմէննա (*) ընելէ ետքը՝ կը նստի մի քիչ կազդուրուելու. իսկ նոր հարսը առջինեկին (կնքամայր կամ առաջնորդող կին) ծնկան առջեւ ծնրադրած կը պառկի սա ալ կազդուրելու համար։ Այդ տանն ներկաներէն մին՝ հարսին ոտքէն կօշիկը հանելով կեսրոջը կու-տայ. կեսուրն ալ այդ կօշիկին մէջ մէջ կորեկ կամ կորկոտ լեցնելով մէկդի կը դնէ, որ հարսը բազմածին եւ երկարակեաց ըլլայ։ Ուրիշ մ'ալ մանչ մանուկ մը կը նստեցնէ վրան որ հարսն ալ մանչ զաւակ ծնի։ Հարսին ծոցէն գաղտն հանելով՝ ծրարը հեծնող տղուն, գաղտն ալ ներկայից կը բաշխեն. եւ կ'ելլէ հարսը ու առջինեկի առաջնորդութեամբն մեծ թէ պզտիկ բոլոր ներկայ եղողներուն (բայց ո՛չ արանց) ձեռքը կը համբուրէ։ Եւ այսպէս մինչեւ գիշերուան ժամ՝ 3—4ը փեսան թէ հարսը ոտքի վրայ կենալով. երբ ալ հրաւիրեալք կը ցրուին՝ փեսան իրեններովը կ'երթայ ուրիշի մը տունը պառկելու (վասնզի այդ երեք չորս օրը ներելի չէ փեսային ոչ թէ իր տանը մէջ չպառկիլ, մինչեւ անգամ ներս մանելն արգիլեալ է). հարսն ալ կ'առ-ւոտէ առջինեկի ծոցը։

(*) Փեսան մինչեւ առագաստ իրիկունը իրեն հանդիպող ամէն մարդոց թէմէննա պէտք է ընէ։

## Երկուշաբթի գալ (*)

*Հարսանեաց յաջորդ օրը Երկուշաբթի ըսուած խառնելի արարողութեան կատարելու համար մեծերնիը (մօր) անձն բազմաթիւ կանայք կուգան հարսին մօտ, որոց քանի մը անհատ կերակուրներով նզան պատրաստելէ ետքը՝ կը բերեն հարսին օժիտը (ճէհիզ) ու կը քրքրեն ներկայից առջեւ ի տես, որուն մէջ կը գտնուին կէօր բոլ (սկեռբր առն), կեսրոջ, տաքրատա (տաքրերու), փեսայի, կնքահօր եւայլց տրուելիք լաթեղէն ընծաները որք են անձեռոց, շապիկ, դրամի ծխախոտի քսակ, տասխ-ջին (գտակ) եւայլն, զորս հարսը իր ձեռքովն պատրաստած կ'ըլլայ։ Հարսին մօր անձն օժիտ կը պատրաստուի 15–30 շապիկ, 1 ոսկի կամ արծաթ ապարանջան (պիլեզիկ). 1 մանեակ (կերտանլըղ), 1 պարսկական ցփիր (շալ), մէկ քանի բանկան (ընթարի) մէկ երկու ձեռք գդալ, 1 թիկնոց (միլթան), եւայլն։ Իսկ կեսրոջ անձէն կը տրուի 20–60 էճնաս (ոսկի), 1–2 անդրավարտ, կերպասեայ և 1 սեւայի գդալ. 1 պարզ և 1 արծաթը թիկնոց, 1 զոյգ ոսկի կամ արծաթ օղ, 1 հիլալպաշր բաւած գլխու զարդ, 1 զոյգ կօշիկ կամ մույկ, 1 պարսկական ցփսի, 1 զոյգ ապարանջան, եւայլն։*

*Փեսան ամբողջ չորս հինգ օր կ'այցելէ իր բա-*

---

(*) Ասկէ 15–20 տարի առաջ հարսանիքը կիրակի օրը ըլլալուն համար նեւեւեալ (Երկուշաբթի) օրը «հարսեւս» կուգային. ասոր հիմա այ հարսանեաց յաջորդ օրը «Երկուշաբթի» կ'անուանեն։

քեր ազգականաց, բարեկամաց և դրացւոց տուները և ուր սուրճ, օղի և գինի խմել, ուրախանալ և զուարճանալէ զատ ծրարներով մէրգ և պտուղ կը հաւաքէ։ Թէ՛ այս շրջագայութեան և թէ իրենց տրուած փեսահրաւէրի ատեն սեղանին ու ժողովրդեան պաշտօնն ու մատռուակը փեսան ու կնքահայրն են միայն, եթէ երբէք ուրիշներ փոխանորդեն, իրենք գործել յանկայս պիտի կանգնին մինչ ցարձակումն այլ հրաւիրելոց և սպասաւորով կ՚ընթրեն։

Փափաքելի է տեսնել այս անմեղ ուրախութեանց միջոցին բամակներու բաշխումն ու հայրումը՝ և լսել ներկայից կարդացած օրհնութիւնները։ Ամէն ոք խմելէ առաջ՝ խօսքն փեսայի հօր, եղբօր կամ այլնի ուղղելով՝ «Պապա՛ , ուշքմընիտ լօս. Ասված շնհաւոր ընէ՛. Թագաւորին սուրը կտրուկ ըլլի. Թագաւորը վախճան չտեսնէ՛. մէկ հարօք՝ մէկ բարձօք զօրանայ. տարօր (*) տխպրանօջը (**), ճիւմլէ կնամիչ էնողին տուներ» կ՚ըսէ ու կը խմէ։

Զմոռնանք ըսել թէ՝ փեսայի նոր լաթ հագնելէն մինչեւ առագաստի իրիկունը՝ հարսանեաց մանուկներուն՝ աւելի կնքամօր ու փեսայիններուն մէջ հակառակութիւն և գիրար պարտեցնել մը կայ. այսինքն ազապպաշիները կ՚աշխատին որ հարսին ու աղջիկներին մաւճակը գողնան, աղջիկներն ալ ետեւէ

---

(*) «Տարօս» բառերէն «տարր» (կորեկ) բառէն առնուած է, զոր իր բարեմաղթութիւն կ՚ուղղուի փեսային. այսինքն է՝ կորեկի պէս աճի այդ նոր ամոլը։ Այս նպատակաւ 30—40 տարի առաջ փեսայութեան լաթը հագնելու ետքը կորեկ կը նետեն եղեր փեսային։

(**) Ախպրանոջը միշտ ամուրիներէն կ՚ընտրուի։

կ'ըլլայ փեսայի ու կնքահօր ոտնամանները գողնալ։ Ասոնց ո՛ր կողմը որ պարտի, միւսին օժիտ մը տալով կ'ազատէ գողօնը։

Այսկերպ գողութիւն մ'ալ տեղի կ'ունենայ հարսնառում գնացած տանն աղջկան տունը։ Հարսի գացողներէն ոմանք իրենց տրուած սուրճի գաւաթը կերպով մը գողնալով կամ ծածկելով՝ կը բերեն ազգականներուն, կը յանձնեն որ աղջկան կողմը եթէ իրենց կորուստին ինչ ըլլալը չգիտնան կամ չփնտռեն, ազգականները գաւաթը տանելով հ(ն) ուրախութիւն մ'ընեն։ Սակայն գիտնալ պէտք է թէ զուարճութիւն կարծուած այս կատակներու մէջերին բացի անտանելի հայհոյութիւններէ, իրական և մեծ կռիւներ ալ յաճախ տեղի կ'ունենան։

Նոր հարսը կ'ունենայ ձեռնքռնոց և քօղ (բօղ)։ Այդ քօղը՝ առագաստի յաջորդ օրը կը բարձուի կեսրոջ կողմէն։ Եւ այդ իրիկուն դեռ անկողին չի-մտած՝ իրենց մօտ դրուած հրուշակը (հէլվա) կ'ու-տեն հարս ու փեսայ, զոր ղրկած կ'ըլլայ հարսին մայրը, նպատակաւ որ այդ հրուշակին պէս համով ու սիրով ըլլան իրարու հետ։

Նոր հարսին ներելի չէ իր երեսը բանալ ու խօսիլ ընտանեաց ոեւէ մէկուն ներկայութեամբ. բայց ո՞րչափ ժամանակ։— Իր սեռէն եղողներէն՝ քա-նի մ'օր ետք երես բանալ ու մէկ տարւոյ չափ չը-խօսիլ և միայն մանր տղոց հետ գաղտագողի և ցած ձայնիւ խօսիլ. իսկ արանց հետ (ի բաց առեալ ա-մուսինը և այն ալ միայն անկողնոյն մէջ). երկար տարիներ համբերել և նշանացի միայն խօսիլ պէտ իր դէմքն ալ ծածկել անոնցմէ։ Շատեր զաւակներէ և թոռանց տիրանալէ յետոյ անգամ հազիւ գիմա-փակ խօսիլ կը համարձակին իրենց սկեսրայրի հետ։

Այսպէս ալ ներելի չէ և մեծ ամօթ է միանգամայն փեսային՝ որ այլոց ներկայութեանը սրել բան ուտէ իր կնոջմէն և կամ իր զաւակը սիրել։ Բայց զարմանալի բան մը կայ, այսինքն այն հարսը՝ որ իր դէմքն անոնց ցոյց տալ կը զլանայ երբ տան մէջ կամ դուրսը փայտակոտոր մրգավաճառ և բերեզակ մը հանդիպի, նոցա հետ երեսբաց. արձակ և համարձակ, ինչպէս իրենք կ'ըսեն, «չաթր փաթր» կը խօսի։

Չգիտենք թէ սոյն ամչկութեան և անտեղի ամօթխածութեան, լաւ եւս է ըսել ծայրայեղ ադիտութեան քաղն ե՞րբ պիտի բարձուի։ Ամէն ողջամիտ ընթերցող կրնայ յրջօրէն գուշակել թէ սոյն վատ սովորութիւնն ի՛նչ բարոյական ու ֆիզիքական կորստեան պատճառներ են։

## Տասնեւհինգ

Հարսանեաց տէրը դեռ ազատած չէ ծախքերէ, տակաւին «Տասնեւհինգ»ը առջեւն է։ Բանզի «Հարսը տասնեւհինգ չելլի, հարսը մալ չէ» կ'ըսուի։ Ուստի, ինչպէս հարսանեաց օրերուն մէջ, նոյնպէս այսօր ալ բաղնիք հրաւիրելու համար մասնաւոր դայեակ կը ղրկուի բոլոր ազգականաց, բարեկամաց և դրացեաց կիներուն։

Տասնեւհինգը կը կատարուի հարսանիքէն 15 օր ետքը։ Այդ օր՝ հարսանեաց տէրը (եթէ նիւթական կարողութիւնը կը ներէ) բաղնիքը «կապալ» կ'ընէ (վարձել), որ ուրիշ յաճախորդներ չգան։

Կանանց հարսանեկան արարողութեան պակասը հոս կը լրանայ։ Նախ հարսն ու աղջիկները երթալով

*իրենց հարսնութեան համազգեստով կը կանգնին բա-
ղանիքի արտաքին գաւիթը (յաճախորդաց հանուա-
լու զգեստաւորելու տեղ) մինչեւ հրաւիրեալց գալը·
յետոյ տանց մէջ որչափ հարսեր որ կան, հանդերձ
բաղնեպանուհիներով (աէլլէկ) թափօր կազմած՝ բաղ-
նեպանուհիք թմբկահարութեամբ առջեւէն և հար-
սունք ալ ծափահարութեամբ կետևէն, նոր հարսը
երիցս անգամ չոլտուալանի (չարդուանի) չուրջը
դարձնելով ու բաղնեպանուհիք իրենց «մաշալլահ»-
ներով հարսէն ու հարսնիներէն իրենց ճակատին ու
երեսին վրայ փակցուած դրամական նուէրները ըն-
դունելով, այնպէս կ'երթան պզտիկ սրահը և «կէ-
լին սէքիսը» ըսուած տափճանին վրայ արդէն
պատրաստուած բաղնեց լեկէնին վրայ նստեցնե-
լով լաթերը կը հանեն ու մազերը կը քակեն։ Լոգ-
նալէ առաջ հարսը՝ եթէ ոչ ամենքին, գէթ պառաւ
ու միջակ կիները մասնաւոր քաակով պիտի չփէ ու
լոգցնէ։ Աւելորդ չէ ըսել թէ հարսը չէնք չնորհ-
քով չլոգցած՝ ամենէ առաջ հագուելով կը պատ-
րաստուի լոգուհեաց ձեռքը վերջին անգամ ալ համ-
բուրելով հագուեցնել զանոնք։*

*Բաղանեաց յաջորդ օրը կեսուրը կամ մեծ ները
հարսը առնելով մէրէնցը կը տանին. ուր այս առա-
ջին անգամը միայն երեք օր կը կենայ։ Հարսը՝ ի
նչան ամօթխածութեան մինչեւ որ ծնողքն ու եղ-
բարքը չստիպեն, երեսը չի բանար այդ երեք օրը·
և երեք օրէն ետքը նոյնպէս մայրը կամ եղբօր կի-
նը զինքը կը բերէն սկեսրոջ տունը։ Երկրորդ և ա-
ւելի անգամներու համար տօնական աւուրց սպասե-
լով՝ պզտիկ տղայոց հետ կ'երթայ ու կը գայ։ Այս
վերջին անգամ ամբողջ մէկ շաբաթ կը մնայ մօր
տունը։ Սոյնպէս փեսան զոքանչի տունը երթալու*

համար առնուազն տարի մը միջոց անցնելու է. յետ այնու կամ ինքնին կ'երթայ կամ անոնց կաղ-մէն փոխահրաւէր կը տրուի։

## Ցղութիւն եւ արտադրութիւն

Վերջացան թմբուկի ձայները. զի «Տասնեւհինգն» ալ ըլլալով՝ ա՛լ հարսը իրենց «մալ» եղաւ. լաւ եւս է ըսել բնական բայց մունջ ու համր գերուհւոյ մը տիրացան։ Ալ հարսը կը ստանձնէ տանին (տան մէջ եղած) մէն մի աշխատութիւն. ինչպիսի են խոհարարութիւն, լուացարարութիւն, հաց թխել (իւր սարօքը), ընտանեաց բոլոր անդամները պառ-կեցնելու համար գիշերուան ժամը 4—5ը յանկոյս սպասելէ յետոյ՝ առաւօտ ալ քան զամենն կանխե-լով հագուեցնել, ցուրտէն սարսռալ, տաքէն նուա-ղիլ և բնաւ ձայն չհանել, հիւանդանալ և բացի իր ամուսնէն ոեւէ մէկուն ցաւ չյայտնել, իրաւամբ ու յանիրաւի բնաւ անհնազանդութիւն ցոյց չտալ, մե-ծին ու պզտիկին հրամանը անմիջապէս կատարել, եւայլն։

Օրեր, շաբաթներ, ամիսներ ու տարիներ անց-նելով՝ վերջապէս բնական արտադրութեան մը հա-մար կը յղանայ այս մունջ գերուհին. Բայց ո՛չ ինք ոչ ալ ընտանեաց ոեւէ մէկը չգիտնալով առ այս ըլ-լալու նախազգուշութիւնքն, յաճախ անգի կը տրը-ուի հիւանդութեան, նուաղման. վիժման և մինչ իսկ մահու՝. որովհետեւ ենթական արդէն միջուհի, ներելի չէ ըստ իւր զգացման գէթ բնութեան հանե-ւի։ Իսկ իւրայնոց համար բնաւ նշանակութիւն չու-նին՝ թէ անիկա խոնաւ տե՞ղ է բնակեր, խոնաւ օ՞դ

է ծծեր, տաքին ու ցուրտին հաւասարապէս տոկա-ցեր է, չատ բազմութիւն խռնուած վայր մը ժամե-րով երեսը գոց և յանկա՞րծ է մնացեր, կամայ ա-կամայ վազեր, ցատկեր, ծանր ու կարողութենէն վե՞ր է աշխատեր, այդ միջոցին դայեկի կամ բժշկի անհրաժեշտ պէ՞տքն է զգացեր, մարմինն ալ վայելչապէս չէ՞ հագեր, կերեր, եայլն։ Հերիք է որ հարս մ'ու-նին, ուշ թէ կանուխ՝ որդեգրութիւն մը կ'ունենայ անշուշտ և յետ այնու ա՛լ մայր է, թող հազայ. «Ասված ցաւը տուերնէ, տէրմանն ալ պարապար է տուեր»։ Սակայն մեր նպատակն որդէն առողջապա-հութիւն քարոզել չըլլալով, դառնանք մեր ճամ-բուն։

## Ծննդեան առթիւ

Թողունք երկրորդ և աւելի անգամները, միայն անդրանիկ ծննդեան առթիւ տեղի ունեցած կրօնա-կան և տանին սովորութիւնները նկարագրելով բա-ւականանք։

Հարսին անդրանիկ զաւակը ծնելէ երկու երեք օր ետքը՝ դայեակը քանի մը խնձոր կամ տանձ առնելով՝ կ'երթայ կնքահօր տունը և շնորհաւորե-լով նորածին սանը՝ կը հրաւիրէ որ հետագայ առա-ւօտ եկեղեցի գայ զայն գրկելու։

Հոս կնքահայրութիւնը բոլորովին հակառակ է Ս. Եկեղեցւոյ կանոնին. որովհետև այդ պաշտօնին կանչուած չափահաս մարդն իսկ չգիտեր իր կոչման ստորոգելիքը. ալ ո՞ւր կը մնայ երբ կնքահայր ներ-կայացող հինգ վեց տարեկան տղաքները, որ փոխա-նակ իրենք ուրիշին երաշխաւորելու, մկրտիչ քա-

համառ իրենց կ'երաշխաւորէ. ինք կը հորդնէ հաւատոյ հանգամանքն, նոյնպէս ինք կը պատասխանէ։ Կայ կնքահայր որ հանդերձ պատասխանատուութեամբ՝ մէկ քանի ընտանեաց կնքահայրն է եղած՝ բայց տանէն մէկ սանի անունն անգամ չիյիշեր։ Ուստի այն հոգեւոր ազգականութիւնը սովորական, ձեւական և տղայական բան մ'է դարձած։

Յետ մկրտութեան քահանան երեխայի տունը չ'երթար, ուր որոշեալ աղօթքներն կարդայ պատշաճապէս. գիւղացւոց աղօթք թէ օրհնութիւն ինչ որ կայ, դայեկի մաշտոցին (բերանին) մէջն է։ Զոր օրինակ, դայեակը՝ երբ երեխան Ս. Միւռոնէն պիտի հանէ՝ լոգցնել ու լաթը հագցնելէ առաջ՝ սփռոցի մը վրան բարձրակ փռելով՝ երեխային երկու ոտքէն ու ձեռքէն բռնած՝ վեր հանել վար ձգելով կ'ըսէ. «Տէրնէն էյնիս բամկի վրայ. Մէրոըկնէն էյնիս բամկի վրայ. ուխտատեղ էրթալն իջէն տուրքէն էյնիս բամկի վրայ. քէօշկէն էյնիս բամկի վրայ. բաղնեց սէքիւէն էյնիս բամպի վրայ, եւն.»։

ԿԸԹՏՈՒԿ (կնունք).— Անդրանիկ զաւկի ծնընդենէն 30—40 օր առաջ՝ հարսին և ամուսնոյն բոլոր ազգատոհմը կը հրաւիրուին այն «կըթտուկ» անուանեալ անակնկարծան հանդէսին։

Կթտուկ (կթել) ըսել խօսքով չըլլար։ Այդ օր կեսրայրին և կեսրոջ քաշկը, իգին բլուկը, բրինձի տապակը բոլորովին կը պարպեն դարտակ կ'ըլլան. վասնզի տղայոց եկող հիւրերու համար պատրաստելիք կերակրոց քանակութիւնը քան զխնամուն տուն եկողներունը՝ աւելի ըլլալ պէտք է, այնպէս որ 200 հոգի ուտեն ու յագենան և դարձեալ աւելնայ։

Է՞հ, ըսինք եա', կթտուկի կերակուրին «պղնձ

կործում» ալ կ'ըսեն. մանաւանդ երբ այդ խումբին մէջ խնամուհի ալ գտնուի, պարտքի տակ ըլնել, տոկոսի տակ տոկալ, որով խնամին ալ սեղանի վը-րայի մալից ոսկորներով չյարգելը մահացու մեղք է։

Կըթտուկի ութիւ միջակ դասակարգի ընտանիք-ներէն միայն մէջ պատահած բանտկութիւնը, զոր ա-կանջովս լսած եմ, հետաքրքրական բան մ'ըլլալուն համար կը սկսիմ սիրելի ընթերցողներուս պատմել, որ է հետեւեալը.

Կինը.— Քա՛ մարդ. գալիք Կիրէկի կըթտուկ պիտ' ընենք. վաղը մէկալ օր ալ պէտք եղած բաները հաւաչ հաւաչ առէք ու հողըր ընի։

Էրիկ.— Կըթտո՛ւկս պակաս էր. իմ հոլիս հա-յի՛ց, ենոււր քէֆին հայի՛ց. ի՞նչ պիտի առնայի։

Կինը.— Մեխքս սատկի՛. մա՛րդ. հէչ էապէս բան կ'ըլլի, էլը ալէմը մարդու բւլէշը կը թուքան։

Էրիկը.— Էլն ինչո՞ւս պէտք է. իս պարտքիս տակը խըրըր խըրըր կէնիմայ, պորտըկանոց ձառքէն դուրս չի մ'այ էլլարայ, ոմուզս էծիրէն՝ հա՛ փառայ կ'ըսինայ. չի գիտեմ քի ի՞նչ ընիմուք ամէն մէկին մէյմէկ քիչ բան տալօք ձայներնին կըյրիմ, դուն էլիր՝ կըթտուկը աչքս խոթիայ։

Կինը.— Ի՞նչ ընիմ հըմպա. չեղած կ'ըլլի՞. խը-նամի չունենայիր նէ՝ նէ իսէ. վաղը ընի գալիք ըլլի նէ՝ ի՞նչ էրես պիտ' ունենաք։ Տի՛յա. տալըս ալ չ'էրացուք՝ աղջինը հաս էրին. կուզիայու քովտալ...։

Էրիկը.— Տեղս ծանր նի՛ստ։ Գիտի էլլամ կնոջը քէ՞ֆը պիտի հասցունիմ. խնամին չի գայնէ վա՛վ կուգայ թող գայ։ Քիզ ուզողը մէկ սիւ ջրիտ (սուրճ) կայիլ կ'ըլլի, կուգայ. կ'ուզէ նէ՝ հէչ թող չի գայ, հէմ ...։

Կինը.— Իս ի՞նչ ձօն լամ գլխուս. Հէրքէսին էտեւը մարդ կարվիր, խապար արվիրիքու դան տէ-յի։ (Թիչ մը լռելէ ետքը՝ լալով)· Մա՛րդ. չունո ըլլիմ. էտքը առաջկը կէօվտէ մի միսի բան է, սա մէկ կարամպանա անցընիքուք, ա՛լ հեմա բան մ'ըսինէ՝ էրկուք թո՛ղ ըլլի։

Էրիկը.— Զիպ'տի ըլլի կըթաո՞ւք. Տուն էվ-րած. կիրէկնուան ժամուն ծանուցումը չի լսեցի՞ր. «Հէ՛ր հում տունը կըթաւկ ըլլին, պիտի պանադըր-ուի» ըսաց տէրտէրը։ Հէմ դուն Գ...ին, Գ...ին և Կ...ին կնիկը չէիր. կինէ էնոնք էնինէ՝ պէլքէ բանա ըսող չըլլի. հըմմա դուն էնելիք ըլիս նէ փողքին մէջը խափ կտոր կ'էնին. Հիմ «Հէրքէս ըն-կողնին կէօրէ օքկը կ'երկնցնէ» «Կազին պիտի հա-յօմուք... խղտիմ։»

Կինը.— Տէրտըրուն ծանուցումը հաւն ընթրա-ւին համար էր. հինքա կըթաւկ ունէր, մէկուն լօխմամի բան չի կերցունէ տէյի էլաւ ծանուցում էրաց։ Ինչո՞ւ հըմպա տանա առաջ'օրնուրը Բ...ենց տունը իրիսկինը, աղջինը, մեր ձագերօք լալիրէին. Միքա մարդի՛ք, դունա ըխթիպար ունիս չուքուր. հո՞ւմ զէնածը դատինն է մեղքիր։ Էափ չեղած՝ չըլ-լիր։ Զըլլինէ՝ գըտցած էղիրու, տանըտ համը հոտը կը փախչի. հէմ իս կէլլամուք մէկ թէք հարսիս չըլլին ծուռ կը խօղո՞ւմ. ա՛նա մարդու զուակ է։

Էրիկը.— (Ձեռքը թօթուելով) Օ՛յ. օ՛յ. կնիկ չէ՞ք. Աւված առաջ խէյրերնուտ, եառքը չարերնուդ պահէ՛։ Գըտիմ. մէկ երկու հէրիր վրաւ. սարէս պար-քի տակ պիտի խոթէք իս։ Ըսէ՛ տեսնամ, միքէն զատ ի՞նչ պէքքէ տահա։

Կինը.— Ըսի հա՛. ի՛նչ պիտ'ըլլի, կէօվտէ մի միս, լիտիր մի եղ, երկու լիտիր բրինձ, բառ մի

ձմերուկ, երկու լիտր հէյվա, կէս լիտր շաքար, քիչմը քիւֆթեցու միս. միս եկեր մէկ երկու հապուրղա ալ պէտք ըլլինէ՝ էնդ ետքը բերել կուտաք.

Դուն թող չըլլի կըսիս ըմմա, էսօր քըզիմենէ վաղն է Նուր է, Պալուղը հինգ պարապ դարնէ՝ ինչպէս որ սէ կը կորվէնաք. նկօ՛ նուր հերքես չաղային խըլլաթ կը բերեն.

Էրիկը — Ալ խօսքը մ'երկընցներ. պարաքնաղը աւնաք բանք ըրհա՛. վանքաց աղուն հետ էջր եա. խուրձ մի կարվեցէ՛ք ու առնպմուք հում հեքդը խարնեքանէ՝ խարնեցէ՛ք.

Վերջապէս խեղճ էրիկը գիջաւ կնոջ առջեւը.

Կըթաուկ ըլլալիք օրը՝ կնոջ տան մէջ մասնաւոր տեղ մը չուան մը կը կապուի, որ հրաւիրեալք պոլով բերած լաթերէս ընծաներնին (կնոջ ազգականներ մէկ կողմը, փեսային ազգականներ միւս կողմը) շարեն. Այդ ընծաները՝ բացառութիւն համարելով նշանուած աղջկան համար մասնաւոր տրուածները, բոլորն ալ նորածին մանկան կը վերապահուին.

Կըթաուկի սեղանը վերնալէ յետոյ, դայեակը երեխան իր գիրկն առած՝ կը շրջագայի կանանց մէջ, որոնք համբուրելով զերախան մէկ մէկ դրամական նուէրներ կուտան իրեն ի վարձատրութիւն.

## Դպրոց եւ դաստիարակութիւն

Մանուկն օր կ'աճի. Ինչպէս իրենք կ'ըսեն «քաքը մայրութք չէ, ինտանի մայրութք է.» Տարիներ անցնելով աղուն հասակը կը զարգանայ, կը սկսի քայլեր գործել. Մայրը կը համձրանայ իր աղուն իր ընկերներով խաղալ ու քղջաուելէն

պատռտուած լաթերը կարկատելէ և կենաց զկիզըն ու վերջը միայն սնունդ համարուած և օրն 20 – 30 անգամ առած հացի կտորն ու փշրանքը հաւաքելով։ Ուստի ակամայ կը ստիպուի ըսել իր ամուսնոյն թէ «Սա տղան ա՛լ դպրոց տար, ալ զիս անհանգիստ կ՚ընի տուն մնալովը։» Մինչդեռ ինք իբրեւ մայր օրօրոցէն մինչեւ այդ օր բնական կաթին հետ՝ բարոյական սնունքէն բնաւ օր մը չէ ջամբած կրօնի և աստուածապաշտութեան հոգեկերցոյց սեղանէն երբեք չէ սնուցած, որ իր անհրաժեշտ ու նուիրական պարտքն է։

Տղան դպրոց թո՛ղ երթայ։ Բայց նախ տեսնենք թէ դպրոցաց վիճակը ինչ էր և ինչպէս է։

Մելիտինէի դպրոցանիւթական թէ բարոյական վիճակը՝ ասկէ 15—20 տարի յառաջ բոլորովին հին ու անկեալ էր։ Այդ կրթական վայր համարուածները կամ կատուագործին նեղ տունն էր՝ ուր աշակերտք ասէջի ծեծը վեր վար տանելով, վարպետին մանկան օրօրոցն շարժելու հսկելով և պարտէզին մէջ ծառերու վրայէն թափած թութը կը ժողուէին և կամ եկեղեցւոյ գաւիթներու խորշը մութ ու խոնաւ ներս մէր, որ հոն՝ բացի դասատուութենէ՝ եթէ երբեք կար, ճճիներու գետինէն արտադրած ցեխին ու աղմին հետ խաղալ և օրուան կէսը քնանալով իրիկուն կ՚ընէին։ Այդ կարծեցեալ վարժապետներէն աւանդեալ դասերն էին (զորս տեսնելու դժբախտութիւնը մասամբ մենք ալ ունեցանք) սաղմոս, նոր կտակարան, նարեկ և շարական, այն ալ առանց ընթերցանութիւն ըլլալու պայմանաւ։ Ցայնժամ նարեկը կարդալ և երկու տող ծուռ ու մուռ գիր գրելու կարողութիւն ունեցողը մատի վրայ կը համբուէր. իսկ քերականութիւն կը կարդացնէ կամ կը կարդայ

ըսուածը՝ թէև թիւերու շարքին մէջ միշտ գրօ կը դրուէր, բայց մատով ցոյց կուտային։ Թուաբանութեան աշխարհագրութեան ևայլնի համար՝ եթէ տեսնուէր, մատաղ կը մորթուէր։

Բայց տակաւ առ տակաւ այդ մութ ու խաւարին արգելանոցներն քանդուելով, նոր ու փառաւոր շէնքեր կառուցուած են։ Ա՛լ հին օրէնքն ու կանոնը բարեփոխուած է. ա՛լ «տղաս տէրտէր, վարդապետ չպիտի ըլլայ ա՛» ըսողները թիւր քիչցած է. ալ թէթ ու ֆալաղկայ բարձուած են. ա՛լ գիրքին տեղ միայն հայ պարունակող թիւլիւկը ծրար և պայուսակի փոխուած է. ալ միայն չարականի խազերով և մեղեդեաց բէյթի բէյթ անախորժ բանդագուշանքովը օրն ողջոյն գլուխ ուռեցնելու հատապարտութենէ ազատուած է և վերջապէս ալ Ա...ն ու Պ...ը ամենէն աղէկ են ըսելով խաթեր համար վարժապետ նստեցնելու բազմամեաս սովորութիւնները հեռացած են։ Աւելի վերջերս շնորհիւ մեր Վեհ. Սուլթան Համիտ կայսեր ուսումնասիրու կամաց, որ ինչպէս իր երկրին բոլոր քաղաքներուն և ամենափոքր գիւղին մէջ իսկ դպրոցներ բացուած են ի շինութիւն և ի պարծանս հանուր հպատակաց, նոյնպէս հոս ալ ծաղկած են ամէն ազգի դպրոցները։ Հայք՝ վերջին տարիներս բերած են օրինաւոր և բանիմաց դասատուներ որ ի միջի այլոց ծանօթ են Ա. Խորասանճեան (այժմ քահանայ յԱկն) և Մ. Թուրեան, որք ըստ բաւականին ուսուցման կերպն ու եղանակը կանոնաւորելով դասընթացքը բազմապատկած են ըստ այնմ հայերէն և թուրքերէն լեզուներն աւանդելով մէկ երկու տարուան մէջ կարող և բանիբուն աշակերտներ հասցուցած են, որոց մի քանին այսօր կը դասախօսեն տեղւոյն և Հիւսնիմանսուրի ու Քեախթա-

*յի վարժարաններէ ոմանց մէջ։ Աւելի վերջերս ուս-
ման մակարդակը քիչ մ՚եւս բարձրացնելու համար
ուսումնասէր եւ բարեսիրտ անձնաւորութիւնք, որոց
պարագլուխ կը հանդիսանայ Մեծ. Յովհաննէս Էֆ.
Սարրաֆեան, անդուլ աշխատութեամբ յաջողած են
կեդրոնական վարժարան մ՚ալ բանալ։*

*Գալով իգական սեռի դաստիարակութեան՝ չէ
այնքան գոհացուցիչ, թէպէտեւ կայ մէկ երկու պար-
տէզ կամ ծաղկոց. բայց տակաւին մայր
ըլլալիք աղջկան մը սոսկ տնտեսագիտական պարտա-
ւորութիւնը ճանչցնելու եւ սորվեցնելու եղանակէն
զուրկ են. եւ այս յանցանքը ոչ թէ ծաղկոցին, այլ
ժողովրդեանն է. զի աղջկան մը դեռ նոր ուսում
առնելու կարգին դպրոց կը ղրկեն. մօր ծունկին
տակ ջա՛ռ (ճախարակ) մանել եւ տեղական ասեղնա-
գործութիւն սորվելու համար։*

*Այս մասին մխիթարական են հայ կաթողիկներու
եւ բողոքականաց դպրոցներն։ Յոյս կայ թէ հայերն
ալ ըստ կարելւոյն աւելի կարեւորութիւն տալով ի-
գական սեռի դաստիարակութեան կարող վարժուհի-
ներ պիտի բերեն ու մասնաւոր վարժարաններ պիտի
բանան. որով կը բարձուի ա՛լ այն տգիտութեան
վարագուրը, որուն տակ կը մրափէր մելիտինեցին,
եւ այն տրտունջներն որ տեղի ունեցած են այլադա-
ւան կրօնակիցներու մուտ գտնելէն ի վեր, թէ...։*

## Հիւանդի այցելութիւն

*Որչափ վերը ըսինք թէ՝ Մելիտինէի կեդրոնին
դիրքը բաղդատմամբ տուներու քանակութեան խիստ
տարածած (եայկըն) է, եւ խոնջէնք կուտայ տեղ մը*

երթալու. բայց տարիքն արգելք չէ հիւանդի այցե-
լութեան երթալ ուզողներուն. ինչպէս՝ երբ որեւէ
տան մը մէջ հիւանդ գտնուելու լուրն առնուի, ազ-
գական եւ դրացի կանայք իրարու հաղորդելով «ե՛լ.
այս ինչ տալոջս, քրոջս, աղբօրս են․ի քով եր-
թանք. զաւալլին չատտուց պէլլու է պառկեր էղեր.
դեսնանք ինչպէս է» կ'ըսեն, եւ ճամբուն երկարութիւ-
թիւնը բանի չսեպելով, կ'երթան կուգան հիւանդին
մօտ. եւ դեռ չնստած ցաւակցական ցոյցերով (ձէպէն
ու ծոցէն պատուղ կամ միրգ հանած եւ ձեռքի ամա-
նով կերակուրը մօտեցնելով) «աւյ չունիս ըլլիմ. գա-
տաս ընծի գա՛յ, ի՞նչ էղաւ. Հայա քիչ մի նստե-
ցուներքուք սա ապրէն էրկու պգալ կեր հեռ ի. ա՛ն
տանձմա (կտրելով) կարիմա, ինչ աղէկ, թթու
բան մ'է հրմ.գա՛, տիլիմ մի ա՛ռ, աղեկ կ'ըլլիս ի-
չալլահ. քովա ի՞չ կայ, մուխաննէթութիւն մ'էնի.»
կ'ըսեն ու կը նստեցնեն հիւանդը, որ կամայ ակա-
մայ քանի մը պատառ կամ դգալ կ'ուտէ։ Այս առեն
խօսքը հիւանդին ընտանեացը ուղղելով «բաղնիք
տարիք հէչ. (ուրիչ հիւանդ մը ապացոյց բերելով)
անցածն օրը բաղնիք տարաքուք՝ «բոլատ» պէս ե-
ղաւ, բաղնիք ջիմին չատ աղէկ բան է, վանքաց ձան
տուէք ու գաքու ք տանիք։ Նաաքնա հէմի «բիր ճէ-
վիզ» կը տանիք. հէմ միր մահլէն կարդացող մի
կայ. աղէկ թուղթ գիր կ'էնէեա, գէնած կալէմը պէ-
րէպիր է. էնուրա թուղթ մի էնել կուտաք։ Տէր
Յ...ին տունը ուրբաթ գիրք պիտի ըլլի. կուրպան
ըլլիմ, հիմա էտի կարդալ տուէք։ Ի՞նչ կայ քուք
քովը աղէկ կ'ըլլի՛» ըսելէ զատ՝ մի քանի տեսակն
դեղերու գործածութ։ան մասին հրահանգ տալ, հի-
ւանդին դէմ ցաւակցութեան նշաններ ցուցնել եւ
հասարակ եւ տարափոխիկ ախտ ըլլա՛ն բանի չսեպե-

*լով, անզգաչութեամբ հիւանդը կը համբուրեն ու կը մեկնին։*

*Հետեւեալ օրը կը գայ այդ բաղնիք առաջարկող ազգականուհին և (եթէ կին կամ աղջիկ է) հիւանդը առնելով բաղնիք կը տանին։ Գիտնալ պէտք է սակայն թէ՝ հիւանդը արդեօք կարողութիւն ունի՞ բաղնիք երթալու. և բաղնիք երթալով պիտի մեռնի՞, հոգ չէ. հերիք է որ հիւանդին տէրն ու բժիշկը (*) իրենք են։*

*Բաղնիքին վրայ եթէ չառողջանայ կամ չապաքինի, մեր ինքնակոչ բժշկուհիք վերոգրեալ նախապաշարմանց գործառնութիւնքը անհրաժեշտ կը տեսնեն. և վերջապէս շնորհիւ իրենց բժշկականութեան յաճախ անդին և քիչ ասդին կ՚ըլլան հիւանդները։ Գովելի է սակայն որ հիւանդութեանց ժամանակ թէ ենթական և թէ իր ընտանիքը, իբրև ջերմեռանդ քրիստոնեայ կը կոչեն եկեղեցականները որ աղօթէ իրենց համար, ու վերջին թոշակի համար հաղորդէ հիւանդը։*

## Մահ եւ յուղարկաւորութիւն

*Հիւանդը՝ երբ ալ ինքզինքը կորսնցնելով խօսիլ ու լսելէ դադրի, արդէն բոլոր կանայք անկողնոյն շուրջը բոլորած և գլուխնին երերցնել ու ար-*

---

(*) Հոս սակաւին բժիշկի կարեւորութիւն չի տրուիր այնչափ. միայն ծանր պարագայից եւ հոգեւարքի ժամանակ բժիշկ կը կանչեն, բայց այն ալ շատ ուշ: Երբեմն բժիշկի պաշտօն կը կատարեն պերպերները արիւն առնել եւ տզրուկ փակցնելով:

տասուք հանելով՝ լուռ, մունջ և ականապիշ կը սպա-սեն յետին շունչին վճարման։

Այս շունչ տալ առնելը (յետին ճգնաժամ) եթէ երկարելու ըլլայ, հիւանդին բացակայ եղող որևէ արտահատորին լաթերէն հատ մը երեսին վրայ կը փռուի որ շուտով հոգին աւանդէ։

Վաղ կամ անագան հիւանդը մեռնելուն պէս, ամեն ոք կը փլճկի, լալու և ողբերու ձայնը կը բարձրանայ օդին մէջ։ Այս միջոցին հիւանդին երե-սը դէպ յաղօթքում (Արևելք) դարձնելով՝ ճարպիկ մէկը կապով մը չանեան (ծնօտ) կը քաշէ որ բերանը բաց չի մնայ կամ ասկայէմ չերևնայ։ Ուրիշներն ալ ջուր, լուանալու տեղ և պատանք պատրաստած՝ կը մերկացնեն հանգուցեալը։

Եթէ ննջեցեալը այր մարդ է՝ երուսաղիմական մէկը իսկ կին կամ աղջիկ է՝ դայեակ կամ երեցկին մը կը լուանայ։

Հանգուցելոյն գուժը անմիջապէս բոլոր ազգա-կանաց և մերձաւորաց կը հաղորդուի մի քանի գուժկանաց միջոցաւ։

Ննջեցեալը եթէ գիշերն է հանգչած՝ անպատճառ եկեղեցի կը տանեն, ուր մեռելի ընտանիքը (եթէ ուզէ) Ս. Պատարագ մատուցանելով՝ եկեղեցական բո-լոր պաշտօնեաները յուղարկաւորութեան կը հրա-ւիրէ։

Հանգուցելոյն տունը որչափ ալ հեռի ըլլայ ե-կեղեցիէն, վերջին անգամն ըլլալով՝ դարձեալ իր դրան առջևէն անցնիլ պէտք է։ Այս անտեղի սովո-րութեան համար շատ անգամ երկպառակութիւնք յառաջ եկած են։ Մեռելի դրան առջև հասնելուն մինչև քահանան աւետարան մը կարդայ և «Հոգ-ւոց» մը ըսէ, հանգչելէ յետոյ կ'ուղղուին գերեզ-

մանաստուն:

Ցուցարկուորութեան տան դագաղին կը հետեւին բարեկամք եւ ծանօթք, յետոյ ազգականք եւ ամենէն ետեւ ընտանիք:

Մինչ ժամկոչը սեւ փոսը կը ծածկէ, ներկայք ի պատիւ մեռելի տիրոջ 10—20 փարայ քահանային տալով օրհնել կուտան նոր ննջեցեալը. եւ ապա կը դառնան տուն «թաղման փիլաւ» ուտելու, որ անհրաժեշտ է:

Հոս սեւ հագուելու սովորութիւն չըլլալով՝ հանգուցեալը եթէ ծեր կամ տղայ է, միայն 1—2, իսկ չափահաս ու ցաւալիներու համար 4—5 օր տունը նստելով սուգ պահելէ զատ, այր մարդիկ մէկ երկու ամիս չեն ածիլուիր եւ կանայք թաղանիք չեն երթար, մինչեւ որ բարեկամ եւ ազգական մը գալով չտանի զիրենք:

Սգոյ առաջին օրերուն մէջ դրացիներն, աւելի խնամիներն ընելիք մ'ունին. այն է՝ մէկ երկու տեսակ կերակուր եփելով կը տանին, որ թէ՛ մեռելատէրք եւ թէ այցելուք ուտեն: Այդ կերակուրի աւելին թէեւ մեռելի տունն կը մնայ, բայց հաց մը առնելով ետ կը տանին որ մահուան սուգը իրենց տուներն ալ չգայ:

Այցելուն՝ (եթէ երբեք գիտէ) մի քանի միխիթարական խօսք արտասանելով «հրէմմեցէք հար մեր մի ըսիք» կ'ըսէ. եւ ըսելէ անմիջապէս ետքը կը մեկնի: Զմոռնանք ըսել որ այն այցելուներն որ մէկտեղ եկած են եւ 10—20 հատ ալ եղած ըլլան, «Հայր մեր»ի անծայր չղթային գործածութիւնը բոլորն ալ կ'առաջարկեն:

Կանանց սոյն այցելութիւնն ալ իր հետաքրքրական կողմը ունի, ինչպէս վերը հիւանդի այցե-

յաւիտեան տուն ըրին։ Երբ լսուեցաւ թէ այն ինչ ընտանիքէն մէկը մեռած է՝ խումբ խումբ կը դի-մեն հոն։ Այս վերջնոց մէջ եթէ սգացող կամ այդ մօտ օրերուն իր ընտանիքէն մէկը կորսնցնելու դժբախտութիւն ունեցող մը գտնուի, անմիջապէս տանտան նետուելով և հանգուցելոյն մօր կամ կնոջ ևն․ի պարանոցը փաթթելով՝ ողբալ կը սկսի, պայ-մանաւ սակայն որ իր ողբերուն մէջ հայերէն բառ և նոր հանգուցելոյն հանգամանաց վրայ ոևէ խօսք չարտասանելով՝ միմիայն իր մեռելը լայ։

Այցելուհիք միայն լալով չեն բաւականանար, այլ այս տխուր առիթէն օգուտ քաղելով զամանս կը նշանեն, զամանս կ'ամուսնացնեն և այսպէս մէկ երկու ժամ անպատշաճ խօսակցութենէ յետոյ՝ իրենց-մէ ամենէ տարեցին (պառաւ) ո՛վ որ է, առջի եղե-լով ի դիմաց բոլոր այցելուհեաց նախնպէս «Հայր մեր» կ'առաջարկէ ու կը մեկնին. և դեռ այդ տնէն դուրս չելած՝ ձեռքերնին կը լուանան, որպէսզի այդ սուգն ու կսկիծը հոն մնայ։

Երբ ալ այցելու չգայ, հանգուցելոյն հանդերձ-ներն ու անկողինը լուանալով՝ եթէ աղքատի բաժին մը հանեցին տակէ, լաւ. եթէ ոչ անխտիր իրենք կը հագնին լաթը և կը պառկին անկողնոյն մէջ։

## Կտակ

Հազուադէպ բան է այս տեղի համար որ մէկը իր մտքով առողջ եղած ատեն որևէ բան կտակէ բա-րեգործական նպատակի, այլ ինքզինքը կորսնցնելով խօսելու կարողութենէն զրկուած պահուն անորոշ և անհասկնալի արտասանութեամբ աննշան գումար մը

կը կտակէ։ Աննշան որ կ՚ըսենք չենք սխալիր, վա-նքի կտակեալ ստակի քանակութիւնը հազիւ 5—600 դահեկանի կը հասնի։

Եթէ ոք իր կենդանութեան կտակ չընէ, մահ-ուանէ ետքը նորայ ընտանիքը իր անհրաժեշտ պար-տաւորութիւն կը կտակէ անոր հոգւոյն համար պօւ-մար մը, և կը բաժնեն եկեղեցեաց, վանօրէից, որ-նանք և հասարակ ազգային և եկեղեցական պաշ-տօնէութեանց ևն․․․։ Սակայն զարմանալին այն է որ դպրոցի անուան մէկ դրուշ մը անգամ չի յիշուիր կտակի բաժանմանց ցանկին մէջ զոր եկեղեցեաց սեմէն կը կարդացուի․ մինչդեռ կրթական հաստա-տութեանց յատկացուելիք բաժինն միւսները գերա-զանցելու էր․ լաւ ևս էր ամբողջ գումարը նոցա յատկացուէր զի, այնու կը պատրաստուի կ՚նոյնի և Ս․ տաճար Աստուծոյ, կրթեալ անձ Տէրութեան և ազգին և օգտակար անդամ մարդկային ընկերութեան։

Չմոռնանք ըսել որ, կտակի քանակին փոք-րաքանակութիւնը մէկդի թողունք, անչափ կալ-ուածներ բնաւ չի կտակուիր։

## Մատաղ եւ Ուխտագնացութիւն

Նախորդ տարիներու մէջ շատ կը գտնուէին Ե-րուսաղէմ, Մշոյ Ս․ Կարապետ և Բարձրահայեաց Ս․ Աստուածածնի վանքերը, այցելութեան և ուխտի գա-ցողներ․ սակայն վերջերս զանազան պատճառներով պակսած են առ այդ ըլլալիք ճանապարհորդութենէ․ այնպէս որ երկու երեք տարին մի անգամ հազիւ ոք կը գտնուի որ իր ընտանեօք կամ առանձին ուխ-տի երթայ յիշեալ սրբավայրերը։ Բայց քաղաքին

երկու վանքերն ալ այցելելնուն խօսք չուզեր ինչ-պէս վերն ըսինք։ Գրեթէ տարւոյն ամէն եղանակին ուխտաւորք անպակաս են, մանաւանդ տաղաւարի և մատաղ եղած օրերն խուռն բազմութեամբ կը լեցուին, ուր մայրն զաւակը չը ճանչնար։

Երբ ընտանիք մը այդ վանքերէն միոյն մէջ նը-պատակիւք մատաղ ընել խոստանայ, իբր հարսա-նիք և կոչունք, կը հրաւիրէ իր բոլոր բարեկամ-ներն, ազգականներն ու դրացիներն, որք հանդերձ ընտանեօք պէտք է երթան, եթէ ոչ մատղի տիրոջ խաթրը կը մնայ ուր մինչև լոյս խմել՝ պարել՝ խա-ղալ՝ պառալ և նուագելէ յետոյ մատաղն ուտելով՝ դոյլերով ալ տունը մնացող անդամներուն բաժին կը բերեն։

Ընթերցողք լաւ կրնան մակաբերել թէ՝ այս ճաշ կամ ընդունելութիւն անուանեալ «մատաղ»ը ինչ չափ կամ օգուտ ունի անանկ, թշուառ և կարօ-տեալին․ որովհետև երբեմն «մատաղ»ը՝ աղքատաց կե-րակուր է կ'ըսուի։

Գալով սասկ ուխտագնացութեան մասին՝ կիներն գովելի են քան զայր մարդիկն, քանզի նոքայ եր-կու ժամուան ճամբու դժուարութիւնը առ ոչինչ գրելով՝ հետի ու բոկոտն և մինչև հոն աղօթքներ մրթմռթալ ու մրմնջելով կ'երթան։ Նոյնպէս վան-քին մէն մի քարերուն և գետնին իրենց երեսներն քսել և համբուրելով՝ այլևայլ խնդրուածներ կ'ընեն։ Իսկ էրիկ մարդիկ՝ ոչ թէ հետիոտն երթալ, այլ եկե-ղեցի անգամ չմտնել ու բնաւ արարողութեանց կամ ժամերգութեանց ներկայ չգտնուելով՝ միայն գինին ու օղին կը պաշտեն սենեակներուն մէջ նստած։

## Եկեղեցի յաճախել
## Եւ եկեղեցւոյ ու պաշտօնէից նուէր տալ

*Արդէն ըսած ենք թէ Մխիթարինէի հայոց եկեղեցին երեք է և որոց չէնքը ու դիրքը բաւականին փառաւոր։ Հիմա մեզ կը մնայ գաղափար մը և ծանօթութիւն մը տալ ի մասին եկեղեցական մէն մի նուիրատուութեանց ու կարգապահութեանց։*

*Ինչպէս ամէն գաւառաբնակ քրիստոնեայք (բայց կեդրոնաբնակք թող ներեն) նոյնպէս Մելիտինեցիք ճշմարիտ հաւատք, հաստատուն յոյս և անկեղծ սէր ունին առ Աստուած. պարզ ըսենք՝ «պօզապայր», «փօլատ տինը» են։ Ասոնք՝ աւելի ծերերն ու կանայք, խիստ եկեղեցասէր ու կրօնամոլ են. իրիկուն առաւօտ եկեղեցի երթալ և իրենց փոքրիկ լումաներով գանձանակն ու եկեղեցականը յարգել ու լոյս հաւատքով Ս. Սեղաննու սրբոց պատկերներն լուսաւորելը և այլն, իբր ջերմեռանդ քրիստոնէի պարտաւորութիւն՝ անթերի կը կատարեն։ Իսկ նոր սերընդեան աւելի միայն այբ ու բէն սորվելով ինքնակոչ իմաստակներու համար՝ առաջիններուն ըրածը նախապաշարում և աւելորդապաշտութիւն համարելով՝ լաւ օրերը բնաւ, Կիրակի և տօն օրերն ալ «Փառք ի բարձունս»ը և կամ Ս Պատարագի բակաւիլը սահմանակէտ որոշելով՝ յետ այնու կը դիմեն եկեղեցի, եթէ չենք սխալիր, այն ալ ի ցոյց մարդկան և ձև կատարելու համար։*

*Է՞հ, մասամբ ասոնք այսպէս ըլլալու են և պատճառն ալ բանացի է, ի՞նչպէս. եկեղեցական եր-*

գեցողութիւնք և երաժշտութիւնք մահամերձ վիճակի մատնուած՝ ինչպէս իրենք կ'ըսեն՝ «հոգւոյ տէրը կը փնտռեն»։ Այնպէս որ եթէ գրքակալին նուէն 70–80ամեայ ծերերու խապատ ու կերկերիչ ձայնն ալ չլսուի՝ մէկ երկու տարի յետոյ բոլոր ժամասացութիւնք բողաձայն լսել հարկ է, քանի որ եկեղեցեաց և ոչ մին չունի օրինաւոր ուսուցիչ և չարականագէտ դասատուն։

Քահանայք. — Հոգելոյս քահանաներէն մին՝ «կղերը բամպակի հակ է, ամէն ոք կ'աքցանէ (աքցով զարնել), բայց չի ցաւիր» կ'ըսէր. ուստի քիչ մ'ալ մենք հարուածենք։

Ասոնք, բացի մէկ երկուքէն, անուս ու տգէտ են։ Թողունք իրենց Ս. Կոչման բազմատեսակ պարտաւորութեանց անծանօթ ըլլալու թերանալնին, հասարակ ընթերցանութեան և սակ չիակէ չիտակ իրենց անունն ստորագրելու կարողութենէն զուրկ են։ Ասոնք ալ յանցաւոր չեն. որովհետև շատերը քահանայի զաւակ ըլլալուն և ոմանք ալ այս կամ այն աղային ու «չորպաճու»ն շնորհիւը ձեռնադրըուած են։ Ուրեմն, սիրելի՛ ընթերցողք, դուք ըսէք թէ այսպիսի եկեղեցական ունեցող ժողովրդեան մը վիճակը ո՞ւր կը յանգի։

Բայց և այնպէս, պէտք է գիտնալ թէ նոցա (քահանայից) նիւթական կարողութիւնք ալ գոհելի չեն, և հոս մեղաւորը քահանան չէ միայն. ժողովուրդը ի՛նքն ալ ըստ արժանւոյն չի գիտեր իր հոգևոր հովիւը, եկեղեցւոյ և Աստուծոյ պաշտօնեան յարգել այնչափ որչափ իր վսեմ պարտաւորութիւնն է։

Քահանայից եկեղեցւոյ մէջ առած դրամական նուէրի շաբաթական գումարը 5—6 դահեկանը չանց-

*նիր. Նոցա եկամուտի (*) ամենահաստատ աղբիւրն է հարսանիք, մկրտութիւն, թաղում, անօրհնէք և տապանօրհնէք։ Ամենահարուստ ընտանիք մը պատկադրամ կը վճարէ առ առաւելն 50 ղրուշ. մկրտութեան համար 4 ու կէս, թաղման համար 3 ու կէս և միւսներն ալ դուք հաշուեցէք. և իցիւ թէ յիշեալ գումարներուն ամբողջը իրենց վերաբերէր. Կիլիկիոյ Ս. Աթոռին, Առաջնորդի կամ տեղապահի եկեղեցւոյ սնտուկին, լուսարարի և ժամկոչի բաժիններէն աւելցածը միայն իրենց կը մնայ, ալ չենք յիշեր ձրի պաշտօն կատարածնին։*

*Ալ աւար ըսելիք կա՞յ։ Ուստի տէր պապաները բան գործ որ չունին՝ եկեղեցի թող գան, գերեզման վազեն, տուն վազեն։ Եկեղեցպանն ալ թող չի կենայ եկեղեցւոյն կալուածք և եկամուտի այլ աղբիւրներ չատյնէ։ Աստուած չատ քաշել չի տայ։*

*Արդ, մեզ կը մնայ ըսել թէ քահանայից, այս Ս. պաշտօնէից նիւթականը բարւոքելու համար տըրոց քանակութիւնն աւելցնել մեր անհրաժեշտ պարտքն է, որովհետև քահանան է գլխաւոր պատկեր և հայելի այն ժողովրդեան որ քրիստոնեայ է։ Այսպէս նաև, ապագային ուսեալ և օրինաւոր քահանայ ունենալու համար՝ կանուխէն զրկուելու են այդ կոչման ձիրք ունեցող աշակերտներ Երուսա-*

---

(*) Ասկէ 20—25 տարի առաջ քահանայից մեծ մասը հոգեւոր պաշտօնին հետ արհեստ ալ բանեցնելով՝ բաւական ստակ կը շահէին եւ իւրաքանչիւր քահանայ իր մասնաւոր ծուխն ունենալով՝ իւր անոնց հոգեւոր պէտքերը կը հոգար, նոքա ալ իրենց տաներէց քահանան կը գոհացնէին ճոխապէս։

ղէմ, Արմաշ, և այլ ժառանգաւորաց վարժարան ու-
նեցող տեղեր։

## Սովորութիւնք մեռելոցի աւուրց

Մեռելոցի օրերը միակ տօնն է Մելիտինեցի հա-
յուն որ ամենէն աւելի բարեպաշտութեամբ տեղի
կ'ունենայ։ Այդ օրերը, աւելի Ծննդեան ու Զատկի
երկրորդ օրերը, ամէն հայու տուն փիլաւ կամ թա-
նապուր և կամ մի այլ տեսակ կերակուր եփելով՝
աղքատաց ու դրացեաց կը բաշխուի։ Զատկի երկ-
րորդ օրը, ինչպէս նաև Մեծի Պահոց բոլոր Կիւրա-
կէները, Աւագ Ուրբաթ օրն և այլ շատ օրեր՝ տու-
ները բոլորովին թափուր թողելու պայմանաւ կը
դիմեն գերեզմանատունն, ուր արդէն ներկայ են մեր
«տէր պապա»ները, հաւատացեալց 5—10 փարան ըն-
դունելով նոցա ննջեցեալներն օրհնելու համար։
Մինչ նոքա (քահանայք) տապանէ տապան կանչուե-
լով կ'օրհնեն, պզտիկ տղաքները գերեզմանատան
ընդարձակ գետնին վրայ կը ցրուին ծաղիկներ ժող-
ուել և ուտելու, այն խորհրդով տնկուած ծառին
լալկան ճիւղերն փնցունելով զբօսնելու։ Գերեզմա-
նատան վարի բաց տեղը — որոնց հետ գործ ունին
էշն ու ջորին — մականի (ճրիտ) կը խաղան. միւս
կողմէ առոյգ երիտասարդներ խճողուած՝ նոր նըն-
ջեցելոյ մը վրայ տապանաքար կը գլորեն։ Այլք
շրջագայելով իրենց նշանածները տեսնելու բարե-
բաղդութիւնը կ'ունենան։ Այս ատեն աղջիկներէ
շատերու ալ նշանուելու բաղդը կը բացուի։ Իսկ տա-
պաններուն վրայ խանդակաթ մայրեր, համեստ հար-
սեր և պարկեշտ օրիորդներու ողբն ու կոծը ար-

*ճագանք կուտայ, արտերու կը բաղխի և կը փղձկեցնէ զմարդ։ Ասոնց հոս քիչ մը տարապայման լալուն համար մեղադրելու չենք որովհետև աւելի վերջին տարիներս ահռելի երկրաշարժն ու յանդուգն քօլերան ասոնց ամուսինը, ասոնց զաւակը, միայն ծնողքը, միւսին եղբայրն և այլ սրտահատորները խլելով՝ յանձնեցին սև հողին։ Այո, թող լան ու թրջեն իրենց անդարմանելի կորուստը. և հուսկ յետոյ սեղան պատրաստելով կ'ուտեն ու կը վերադառնան տուն։*

# ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆՔ ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԱՅԼ ՏՕՆԱԿԱՆ ԱՒՈՒՐՑ

## Ա.

### Այցելութիւն Ծննդեան եւ Զատկի

*Սոյն աւուր տօներու առաջին օրերէն սկսեալ՝ ամէն ոք իրեն ընկեր ունենալով 4—5 անձ ալ՝ կ'այցելէ բոլոր բարեկամաց, ազգականաց և դրացեաց տուները։ Այցելած բոլոր տուները թէև իրեն անծանօթ՝ բայց ընկերին ծանօթ են։*

*Երբ ո՛ր ևէ տան այցելու մ'երթայ, տանտիրոջ անհրաժեշտ պարտքն է որ կամ սուրճ, կամ օղի, կամ օշարակ և կերակուր ներկայացնէ։ Այցելուն հոդ կ'ուտէ ու կը խմէ, ուրիշ տուն մը կ'երթայ*

*դարձեալ և տեղ մը օշարակ միայն, տեղ մը օղի, տեղ մը սուրճ և տեղ մըն ալ տարբեր կերակուրներ ուտելով, ոմանք «խաթըր» համար, ոմանք ալ տարւոյն մէջ առաջին անգամ միայն այսպէս ուտել, խմել տեսած ըլլալնուն, իրենց ստամոքսը «ճինկէն քիւլէկի» կը ձևացնեն։ Հետևա՞նք, խայտառակութիւն, անպատուութիւն, մէկ քանի օր հիւանդութիւն են...։*

# Թ.

## Նոր Տարի

*Նախընթաց տարւոյն վերջին օրը որ «կախուկ» կ'անուանէր՝ պզտիկ տղաքը մէյմէկ տոպրակ կամ ծրար առած կը պտտին ամէն տուն և «կախուկ» տըւէք ըսելով կը հաւաքեն միրգ կամ պտուղ։ Եւ իրիկունը, որուն պիտի յաջորդէ Նոր տարին, չուանի մը ծայրը պզտիկ տոպրակ մը կամ օղիի շիշ մը կապած կը կախեն ամէն տան ծխնելույզէն վար և «կախու, կախու, փաճու, փաճու, ...օղլու, տո՛ւր քէմէճէ» ըսելով կ'իմացնէ տանտիրոջ. տան տէրն ալ կամ 10–20 փարայ, կամ միրգ ու պտուղ տալով և եթէ շիշ ալ կայ, օղի լեցնելով «քաշեցէք» կ'ըսէ և կը քաշեն։*

*«Կախուկի» օրուան կերակուրը(*) ամէն տան հա-*

---

(*) Սոյնպէս Յարութեան խօսումի իրիկունը ձուին խաշելով (երեկ ճաճեղ կ'ըսեն) պահք կը բանան։ Միւս երեք տաղաւարներուն նաւակատեաց օրերն ալ պուղրամա (խաշած դդում) կ'ուտեն։ Մեծ պահոց երկրորդ Կիւրակէն՝ նոյնպէս ամեն տուն «ճաշիկ» (խաշած ցորեն)

*մար բերբեր (սէմիզ օթու) կ'ըլլայ։ Այս մանուածը կերակուր եփուելէ ետք՝ որչափ կիսերից(կիսացրած) փայտ որ գտնուի վառարանին մէջ՝ մէկ դի կը դըրուի որ յիշեալ կերակուրէն աւելցածն ալ պահելով Ծննդեան խթումի իրիկունը պահքը բանալու համար վերստին իւղով տաքցնելով ուտեն։ Կիսայրածներուն կը յաջորդէ կոճղ մը իբր կաղանդչէք վառարանին, որ մինչև լոյս պէտք չէ մարել, ինչպէս որ այդ գիւղին ճրագն ալ չեն մարեր։*

*Նոր տարուայ ցորեկը՝ այր մարդիկ այնքան այցելութիւն չեն տար իրարու, այլ երեկոյեան բարեկամ բարեկամի և դրկից դրացիի տունն երթալով կը շնորհաւորեն Նոր Տարին։ Այդ օր խնամիներու օրն է։ Այն որ խնամի ունի, մէյ մէկ խոշոր ծըրար միրգ և պտուղ կը ղրկէ, որ խնամին ալ եղած պտուղները փոխել և հատ մըն ալ վրան աւելցնելով ետ կը ղրկէ։*

*Կախուկի և կաղանդի օրերուն մէջ մանր տը-*

---

Ս. Սեղբեստրոս Հայրապետի «կուլիբա»ն կ'եփեն եւ եօթը տնէ այդ կուլիբայէն ուտելն անհրաժեշտ պարտք կը համարին: Այսպէս նաեւ Միջինքի, այսինքն մեծ պահոց միջին Չորեքշաբթի օրը խոշոր քիւֆթէ եփելով՝ միոյն մէջ մատանի մը կը դնեն իմանալուն համար թէ արդեօք ընտանեաց մէջ բաղդաւորը ո՞րն է, ուստի ով որ այն մատանին գտնէ, այն է բաղդաւորը:

Աւագ Չորեքշաբթի օրն ալ թարխանա եփելով տան չորս պատերուն վրայ կը սրսկեն՝ որ կարիճը զիրենք չի խայթէ: Եւ Աւագ Հինգշաբթի օրն ալ միջօրէի ժամուն, սեւ կուտով շորվա (թանապուր) կամ պահոց հերիսա կ'եփեն եւ այս վերջինն ի նշան հոգեւոր հարսանեաց է:

ղոյաց «քէյֆը» տեղ մը չկայ վասնզի ա՛լ իպօպը (յապայ) սնտուկին բանալին բերած է ու իրենց ճէպըն ու ծոցը ուռեցընելով լեցուն է։ Սակայն կաղանդի իրիկունը կանուխ պառկելու են տարւոյն ամէն օրն ալ կանուխ արթննան եթէ ոչ «Շիւոտ»(*)ը զիրենք կ'ուտէ։

## Գ.

## Համբարձման Տօն

Համբարձման նախորդ օրը (Չորեքշաբթի) արդէն ամէն բերնէ կը լսուի թէ «վաղը վիճակ է»(**)։ Ուստի հարսներուն խորհրդովը պզտիկ աղաքներ ու պատանիք կը վազեն դաշտն ու պարտէզ, վաղուան խորհրդաւոր հանդէսին համար ծաղիկներ բերելու·

Արեւը սարին ետեւ անցաւ· ծաղկահասակ աղաք ծաղկեփունջք ի ձեռին կայտառելով տուն կը դառնան։ Ծաղկանց մէջ վեհապանծ կ'երեւնայ հանգոյն

---

(*) «Շիւոտ»ն է հրէշ կամ ուրուական որով յիմար մայրեր կը վախցնեն իրենց պարզամիտ զաւակները։

Անկիրթ մայրեր ուրիշ անէծներով կը յանգցնեն այսպիսի չզոյ եւ չպիտոյ անուններ ու բառերու արտասանութեամբ ինչպէս «Անմա՛ն, տանկազանը կը խածնէ, Խօխօն կ'ուտէ» ըսել եւ տղուն կոնակէն տարօրինակ ձայներ հանելով վախցնելու, փոխանակ համոզիչ խօսքերով հեզ դարձնել կամ սիրաշահելու, երբ տղուն բռած կամ ընելիքը վնասակար բան մ'է։

(**) Ի յիշատակ վիճակաւ ընտրութեան Տիօայի եւ Մասաբայ։

*մանչկին և քան զայն գեղեցիկ ծաղիկ մը, այն է՝ «Գայնանան կէլլիր տիթրէ»ն։ Այդ համեստ հարսն, ծաղկանց տիկինը, իր երփնագոյն ընկերներով կը հիւրընկալուի կանխաւ պատրաստուած ջրալից տաշտին մէջ լոգնալու, ուր արդէն պարտիզաց զանազան ծաղիկները կը ցողուին և կը համբուրեն զինքը։*

*Ծաղկաբերք տակաւին չի լրացուցին իրենց պաշտօնը ցատկռտելով ու վազվզելով կր մանեն ամէն տուն և «Հարսնուկ մեր տունը վիճակ պիտի քաշէք բան տուէք ու տանինք» ըսելով տնական մանր առարկաներ, ինչպէս դանակ, մկրատ, ունելի, բանալի (ընտանեաց թւոյ քանակութեամբ) կ'առնեն ու կը տանեն ծաղիկներուն մէջ և կը ծածկեն տաշտը։*

*Համբարձման առաւօտուն ժամերգութենէն ամիջապէս ետք՝ թաղին բոլոր կիները, հարսներն ու աղջիկները հաւաքուելով յիշեալ տաշտին շուրջը և կը սկսին վիճակ հանել, այսինքն բաղդերնին փորձել հետևեալ կերպով։*

*Պզտիկ աղայ մը տաշտի ծածկոցին տակ նստեցնելով ներկաներէն ամենէն տարիքոտ կին մը նախ «Օղորմի Աստուած» կ'ըսէ տղան տաշտի մէջի առարկաներէն հատ մը դուրս կուտայ այդ ելած իրը որու որ է, «Օղորմի Աստուածն է նորայ վիճակը։ Հետևաբար մէն մի կին (անոնք որ առած մը գիտեն) հատ մը կ'ըսէ նոյնպէս տաշտէն իր մը դուրս կ'առնուի, մինչև որ տաշտին մէջ ոլ իր չմնայ։*

*Աւելորդ բան մը դրած չենք ըլլար կանանց այդ առթիւ ըսածներէն մի քանին հոս շարելով.—*

*Բէշկիր բէշկիր իւստիւնէ,*<br>
*Բէշկիր տիզին իւստիւնէ,*<br>
*Օթուրմուշ եազը եազար,*<br>
*Քրիստոսըն էշգընա։*

Տամ պաշընտա փիրփիրիմ,
Հի՞չ մի հօգ էդիս փիրին։

Հէպկէ խաիմ հէպ օլաում,
Փաշա խաիմ պէկ օլաում,
Կէրիաէ տաւրաւր իքէն,
Հէփաինաէն ևէկ օլաում։

Գույումճըլար ևէլլէսին,
Ջուպուղըմ կիւմիւշլէսին,
Պէնիմ ևարըմ պիր տանէ
Հազգ պանա պաղըշլասըն։

Վարի կարաս, վերի կարաս,
Ասվա՛ծ, ընծի դոռ մը բանաս։

Ծովուն վրայ փրփրիս,
Օսկուն վրայ քրքրիս։

Ակն յատակ, փաք նատաք,
Քէնց կովլըկին կաթն յատակ։

Կոխեցի թախթը,
Ելայ դրախտը։

Կանչէ՛, մանուկս, կանչէ,
Ամեն արտըս կանանչէ։
Օլուր օլմազ չըւէններ,
Ետևըս ներս կը հաջէ։

Հերու ունէի մէկ Գօտի,
Էստարի երկու գօտի,
Դուն կլմանիս տուտու գուշի
Տիւշմընին աչքը փըշի։

Ծնճղուկ ըլլիմ, դոռը նստիմ,
Մարգրտէ չէպիկ հագնիմ,
Ալէմին Սուլթան ըլլիմ։

## Դ.

## Վարդավառի Տօն

*Այս տօնը միայն հայոց սեփական տօնը, բացի կրօնական արարողութենէ հանդէսէ զոր եկեղեցին կը կատարէ փառաւորապէս, ի վաղուց անտի արտաքին այլ խորհրդաւոր հանդէս մըն ալ ունի, որ ժողովուրդը կը կատարէ մեծ ցնծութեամբ։*

*Այդ սահմանեալ աւուրց մէջ, ամէն ոք եկեղեցիէն ելլելով մինչեւ տուն երթալու ատենն ալ թէ ցրցքնուելու (ջուր սրսկել) երկիւղը սրտին մէջ կը կրէ, բայց աւելի հոգն ունելէ ետք՝ դուրս ելլելու պատի տակ կենալէ խիստ կը վախնայ, որովհետեւ ոչ միայն պատանիք ու երիտասարդք կը սոթտուին ու հին լաթ կը հագնին «վարդը վառ» ընելու այն է՝ իրարու վրայ ջուր սրսկելու, այլ չափահասն ու ծերն ալ անտարբեր չեն գտնուիր հանդիսակցելու։ Մէկ կողմէն կը տեսնես որ խումբ մը տղաք մերկացած՝ մանր դոյլեր ու թասեր ջրով լեցունելով զիրար կը հալածեն, միւս կողմէ պատանիք ու երիտասարդք ճիգ կը թափեն զիրար ջրաթաթաղ ընել կամ աղբիւրին ու առուին մէջ խխել։ Արդէն ջուրը փողոցները թրջած է գաւիթներէն անուղղակի կերպիւ նետուած ըլլալով, եւ կը թրջէ նման տեղատարափ անձրեւի որ սաստիկ քամիին առջեւ տակնուվրայ կ'ըլլայ։ Մինչ այս մինչ այն պատերու տակ անհոգ ու անտարբեր կեցողներուն վրայ տանիքէն առատ ջուր կը թափեն ու կ'ողողեն։*

*Սոսկ ատով չի բաւականացուիր, պէտք է դաշտն երթալ, եւ ահա խումբ խումբ դաշտը կ'երթան, ու հոն այն ծառալից ու ջրալից զբօսավայ-*

քերու մէջէն հոսող ջինջ ու կարկաչուն առուներու և վտակներու մէջ եւ լողալով զիրար կը ցըցքնեն։

Կը պատմուի թէ Նոյ Նահապետ տապանէն ելլելէ անմիջապէս ետք՝ իր ընտանեաց բոլորին երեսը ջուր կը սրսկէ, որպէսզի յիշեն տիեզերաց արարչին ամենակարող զօրութիւնը, որ համայնական ջրհեղեղով մեռցուց այն ամեն «որդիք մարդկան» անսանձալ չար ու աշխարհասէր մարդիկը և միայն զիրենք ազատեց, զոր անմոռանալաբար կատարելով՝ հայք իրենց գլխաւոր կուռքերէն միայն տօնախմբութեան ատեն մեհեանը և արձանը վարդի փունջերով զարդարելէ զատ՝ վարդի ջուր եւ կը սրսկէին արձանին վրայ, և այն խորհրդաւոր աւանդութիւնը Քրիստոսէ ետքն ալ գոյութիւն ունենալով՝ Լուսաւորիչն մեր Սուրբ Գրիգոր երբ յիշեալ կուռքի մեհեանը կործանելով՝ տեառ տօնի օրն ալ Այլակերպութեան «վարդավառի» տօնը կը կարգէ, կը հրամայէ որ ջուր սրսկելու հանդէսն ալ ամէն տարի այդ օրն կատարուի։

---

## ԾՈՄԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Մալաթիոյ հայուն համար եթէ ըսենք, ինչպէս կրօնամոլ, նոյնպէս չափազանց կանոնապահ են, չենք սխալիր, որովհետեւ ոչ միայն ոչինչ պատճառի այլ բանաւոր պատճառի համար իսկ անժուր (պահոց օր) մը ուտեաց կերակուր ուտող մէկը ակնյայտնի մահացու մեղք գործողի մը պէս ատելի է յաչս իր-

կանց։ Ալ ո՞ւր մնայ Չորեքշաբթին, Ուրբաթը և շաբաթապահք կամ մեծ պահքն լուծուիլը։

Գալով ծոմապահութեան՝ ամէն հասակի անձանց անհրաժեշտ է մեծի պահոց մինչև ճաշի ժամը նօթի մնալ։ Իսկ թէ՛ այր և թէ կին մարդիկ աւելի պառաւունք ամբողջ մեծ պահքը օրն ողջոյն պահելէ զատ՝ շաբաթապահքն մինչև գլուխ անսուաշ պահողներ ալ շատ են։

Երբ նշանուած կամ նշանուելիք աղջկանք երեք կամ հինգ օր անսուաշ պահեն, նոցա ազգականուհիք աւելի խնամիները նախաճաշով ըլլալով՝ քանի մը տեսակ պահոց կերակուր (հալուա, փագլավա, խօշաւ և Մալէզ) տանելով այցելութեան կ'երթան. աւելորդ է ըսել թէ նշանուած աղջկան համար ոսկի կամ հանդերձցու ալ կը տանին, զի աղջկանց այս պահեցողութիւնը կամ բաղդ փնտռել և կամ օժիտը շատցունելու յուսով է, կ'ըսուի։

Հայ հարսանները պահեցողութեամբ հանդերձ եկեղեցւոյն և աղքատին օգնելն ալ պարտք կը սեպեն իրենց. ինչպէս, թէ՛ մեծ պահոց և թէ շաբաթապահոց վերջին իրիկունը կամ առաւօտուն. աղքատին համար հաց և միրգ, եկեղեցւոյ համար մէյմէկ կոժ (վիլակ) մանած տանելով՝ եկեղեցի կը դիմեն ու նոյն օրուան սուրբը կամ սուրբերը բարեխօս բռնելով՝ կ'աղօթեն ու կ'աղօթեն։ Եւ Առաջաւորաց պահքի Չորեքշաբթի օրը ընտանեաց իւրաքանչիւրի գլխէն մէյ մէկ քիչ մազ կը կտրեն։ Հարսանները այս մազ կտրելը «էշ կնտում» կ'անուանեն, որոյ մասին կ'աւանդեն թէ՝ յունաց ատելի այլ հայոց պաշտելի Ս. Սարգիս զօրավար այդ օր իր էշը, այն է ձին՝ կնտած է մկրատով։

# ԱՂՕԹՔՆԵՐ

*«Ամէն բանի մէջ կին մը կը տեսնուի», կ'ըսէ Հիւկօ։ Մեր ալ գրածներէն մեծ մասը կանանց ա-բարքներէն էր և աղօթքի մասին ալ դարձեալ կի-ները գործ ունին, վասնզի կիները քան զմարդիկ ջերմեռանդ և երկիւղած ըլլալով՝ թէ՛ յեկեղեցւոջ, թէ ի տան, թէ ի պարապոյ և թէ ի գործոյ մերթ մեղմ և մերթ բարձր կը մրմնջեն, կ'երգեն, կ'եր-կրպագեն, կը խաչակնքեն ու կ'արտասանեն արձակ կամ ոտանաւոր աղօթքներով, որոնցմէ մեր գտածնե-րը կը ներկայացնենք սիրելի ընթերցողաց։*

## ԱՂՕԹՔ ԱՌԱՒՕՏԵԱՆ

*Առաւօտեան բանն է բարի,*
*Էրնէք էն մարդն ելլայ բանի.*
*Շրղշղան սուրբ նախշուն խալի*
*Քրիստոս վրան կը թաւալի,*
*Մեղաւորին մեղքը հալի։*

*Լուսացաւ լուսն ի բարին,*
*Քեզ հաւատամ Տէր կենդանի,*
*Երկինքը պայծառ ծընանի,*
*Մարիամ նստաւ Ս. Սեղանի։*

*Առաւօտեան լուսն է ցաթեր,*
*Օղորմութ ան դուռն է բացեր*
*Աղօթք երէք խօրոզ խօսուն,*
*Արժան ըլլիք Աստ'ծու տեսուն։*

Էս գիշեր էլայր դուրս,
Տեսայ Աստուծոյ լոյս,
Սուրբ Պօղոս Սուրբ Պետրոս,
Ընդունելի Ս. Կիրակոս։

Տէրն յիշեցի, ըսի մեղա՛յ,
Իս մեղաւորս աշխարհ էկայ·
Լուսահոգիս կորսնցուցի,
Մութ մարմինըս կրակն էրեցի։

## ԱՂՕԹՔ ԵՐԵԿՈՅԵԱՆ

Գըլխակս բարձ, լեզուակս բաց,
Խօսիմ, խոստվանիմ առնամ սրբութուն
Հոգիս տամ բարի հրըշտակաց։
Քընիմ մէջ գիշերուն,
Չի վախեմ մէջ երազիս·
Գաբրիելը աջ թեւիս,
Միքէիլը սօլ թէւիս,
Երկընուց սանը սրտիս,
Օսկի աւետըրանը գըրկիս,
Ճաշակ ամանը բերնիս
Աստուծոյ եազլըղը սրտիս։

Էլայ էլայ էն լառը,
Տեսայ հրըշտակաց գալը,
Շատ դժար է հոգի տալը,
Հոգիս բարի հրըշտակին տամ,
Հրըշտակն ըլլի պահապան,
Չի խաբէ չար սատանան,
Մէկ հատ ժամուս տէր մի թողո՛ւր
Չար սատանաները հալընցուր։

# ԽԱՌՆ ԱՂՕԹՔՆԵՐ

*Բալլին ընկաւ բարձիս վրայ,*
*Տիվան խանէն սրտիս վրայ,*
*Տունկս դնեմ աղօթք ընիմ,*
*Լօս գերեզմանը համբուրիմ։*

*Լօսը կ'եյլայ կամար կամար,*
*Լուսաւորչաց խաթերն համար,*
*Ելաւ գնաց Լուսաւորիչ,*
*Անմահութեան ջօրը խմից։*

*Էկաւ, էկաւ, իրեք ձիաւոր,*
*Իրեքնա կանաչ կապաւոր,*
*Մէկը Յիսուս. մէկը Քրիստոս,*
*Ընդունելի Սուրբ Տեփանոս։*

*Իշին կ'երթայ թօզուն վրայ,*
*Եւ անյատակ ծովուն վրայ,*
*Խաչ կը հանէ հայուն վրայ։*
*Կուս գեղացիք խաչ կը հանին,*
*Խաչափէտը ես կը չէլկիմ,*
*Երկար ճամբայ էրթալն ի քէն*
*Մէճէլ չունիմ.*
*Քրիստոսայ համար տալիք, ժամ*
*Էնէլիք պաշար չունիմ։*

*Խասերուն խա՛սը,*
*Աւագ Ուրբաթը նստել են եասը,*
*Դուն նասիպ էնիս նշխարն ու մասը։*

Մեր տէրն երէկ ամպը գնաց,
Էլաւ նստաւ աթոռ փառաց,
Տէ՛ր, մի՛ ձգեր մեզի ձեռաց
Քու ստեղծած, քու յօրինած
Սուր աւազան մկրտըլած։

Վանքըսվան տո՛ւր օղորմութիւն,
Ըռընվան տո՛ւր խաղաղութիւն։
Վաստըկւորին կենդանութիւն։

Մարիամ մէ՛ր, դո՛ւն գըտիս,
Իմ մեղաւորիս դո՛ւն լըսիս՝
Չար մըտքերս մոռցունի՛ս,
Խաւար սիրտերս լուսցունես,
Արքայութեան դուռ ցըցունիս։

Մարիամ մէ՛ր, դուռը բաց,
Առջեւս ընկիր ճամբայ բաց,
Դժողքին դրանն անցուր,
Արքայութեան դուռը ցըցուր։

Վալոտ աս աղօթքը յիշէ,
Ասված էնուր մեղքը չ՚իշէ։

## Նոր լուսինը տեսնելու ատեն

Լուսնկանս նոր նոր,
Չար կամարս կոր կոր,
Էկար, գացիր փիր իխթիյար,
Էղար կըյրիճ թագաւոր,
Ասված էնէ չնհաւոր։

## ԱՐՁԱԿ ԱՂՕԹՔՆԵՐ

*Օչնալ տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն։ Օչնալ հար սուրբ, օչնալ օրդիտ սուրբ, օչնալ հոգիտ սուրբ Հաւատա խոստանամ և երկիր պագանեմ։ Բարի լոս, բարի վաղնաէք, դուն բարի դուռդ բանաս։ Ս. Գէ-վորգ դունբարեխօս ըլլիս։ Աման տէր դուռդ դըռ-նակդ մեռնիմ, կուլդ կուրպանդ ըլլիմ, դուն կաֆըլ կատաներուն պահիս։ Մեղայ տէր, դուն մեղք երեայ չի՛ զնիս։ Մեղայ Յիսուս մեր աստուածածին, դուն դուն գտիս, դուն հասնիս, դուն օղորմիս Աստուա՛ծ, ըս քըրգի մեղայ դուն ընծի օղորմա։ Աման տէր կո-ղըդ մախիրտ լզիմ, առջեդ մեռնիմ Ա ված, փուշմա-նիմ հազար անգամ գործած մեղացս։ Տուն արքա-յութիւնդ չէնիս Աստուած։*

---

## ԵՂԵՐԵՐԳ ՈՒ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳ

*Սոցա մասին՝ ըստ կարելւոյն հետաքրքրու-թեամբ փնտռելէ յետոյ՝ հոգիս մէջ մէկ նմոյշ ձեռք ձգելու կարողացանք, որք են.*

### Եղերերգ

*Յովհաննէսն է հագիր ալ մօրին վրայ,*
*Սուրաթը քաշեցին պիլլորին վրայ,*
*Էրնեկ կուտայ մուրատ առնողին վրայ,*
*Վա՜խ, արեւատ եարըդ մառնի Ուհաննէ՛ս,*

*Նատիմ, կէնճուկ եաւդ պահիմ Ուհաննէս(*)*

*Էս ի՞նչ մանտր, բոլէգ, խօշէգ հացերէ,*
*Ուհաննէս ժամուն պաղչան գացեր է*
*Կատարին սիւրմէի աչքը լացեր է,*
*Վա՜խ, արեւտ մէրդ մառնի....։*

*Ի՛նչ գէշ կուգայ ձեր խավրմային հոտը,*
*Ըսէք իմ զոնքչիս, չգամ իմ մօտը,*
*Մանծ քենիս Թող կըյրէ ինծմէ ումուտ,*
*Վա՜խ արեւտ եարդ մառնի....։*

*Լօխմայ մի կավուրման բերնիկս մնաց,*
*Ջագու գինիկները ճիպիկս մնաց,*
*Վա՜խ արեւտ եարդ մառնի....։*

*Ծոցի բալլին առին ծընտգլան գնացին,*
*Թօփ մի կտաւ բերին պատանք ձեւեցըն,*
*Ջու տաքպուցին հինգն աղեկ մի լողցուցին,*
*Վա՜խ արեւտ մէրդ մառնի....։*

*Հարսնեւորներն եկան դուռը մնացին,*
*Փետատին հող տապանը փորեցին,*
*Տանէրկու քահաննեց նստան ու լացին,*
*Վա՜խ արեւտ եարդ մառնի Ուհաննէս*
*Նատիմ, կէնճուկ եաւըդ քաշիմ Ուհաննէս։*

---

(*) Սոյն եղերերգին որո՛ւ ծնուած ըլլալը թէեւ յայտնի չէ, բայց ողբացեալին (Յովհաննէսի) ասկէ հարիւր յիսուն տարի առաջ իր առագաստ մտնելու գիշերը թշնամիներէ թունաւորուելով մեռած ըլլալը կ'աւանդուի

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳ

*Էսօր հօրէսսէկին մէկ եար մի տեսայ*
*Մէջքը բարակ հինքը ճէյրան կըմանի*
*Շատ ալ մնացուր հոգիս տանուր·*
*Աչիցը ունքերն ալ չահէն կըմանի։*

*Դըմացէն քալողին հէյրան եմ էղիր*
*Երեսէն կը վազի քէրէքու մեզիր,*
*Վարդի հոտոտ եղօք մազերն է խզեր*
*Մէջքը բարակ հինքը ճիվան կըմանի։*

*Իսա կոյիպ էրի չգիտեմ հուր է,*
*Էրիսները ճերմակ այնէ պէս Թոր է·*
*Հոգիս ուզէ կուտամ լաքին հինք ծուրէ*
*Փէք մէչհուր պեհելիք տօղան կըմանի*

*Շատ ազկեկ է էս «մէյտան» ին եարը,*
*Էրեսը չէքէր է, սիւքկէր է, պալը····*
*Պզտըկուցը նազլի պէհիր է մէրը,*
*Նազլը պեհուած աղէկ ճէրան կըմանի։*

*Վարդի ծառ ըլլէի դուռը բըսնէի,*
*Պիւլպիւլ ալ ըլլէի՝ կուրսկը նստէի,*
*Ամէն առաւօտուն բէչին քսվէի,*
*Պուլպուլուկը բացված վարդ կըմանի։*

## ՕՐՕՐ

*Ծոր, ճոր, ճոր էինք,*
*Խզտիկ կապան նար էինք,*
*Սև հուը կուրպան էնինք,*
*Փետուրները գլխուդ բարձ,*
*Փօսը վրէդ քիւրք էնիք։*

Ծոր, ճոր, ճոր ապար,
Օսկուն քարին պարապար,
Նէնէն էկօ կուզին տար,
Գըտըտիկ է խողիմ տար։

Ծոր ճոր ճոր գնա՛,
Ե՛լ վազէ մպման գնա,
Մաման քէզի ինչ տայ,
Ծեպդ լիցուկ նուշ տայ,
Ուտիս, ուտիս մեծնաս,
Գօզ ձիանքը հեծնաս։

Տօմ, տօմ, տօմէրէք,
Գրթ գըք բերիմ համ ըրէք,
Հարչէ մաման ժամուն փայ,
Տանծին տակը պայ ըրէ։

Ծոր, ծոր, ճորն էրթաք,
Ջուազեղ ընիք ձոր էրթաք,
Կատուի ձագեր խպլածէք,
Հաւու ձագեր հօր քըռէք,
Հիմի լէն ըսիր թէ՝
Կուզին առնաք մերն էրթաք։

Ծընկր, ճընկր ձան կուգայ,
Ելէք տեսէք վավ կուգայ,
—Ինչ է բարձեր պօզ իշուն,
—Բուրթու բամպակ էպրշում,
—Էպրշմին գինն ինչ է,
—Գինը քէօշկէրն է տարեր,
Քէօշքէր կօշինքս կարէ,
Հագնիմ էրթամ Հինտիստան,
Քըղի բերեմ մատնիստան,
Ընծի բերեմ խալիստան։

### Միայն մանչ տղու համար.

*Իմ տղաս կայներ կարմուճին,*
*Մէնկիւշ օղը անկըճին*
*Խապար երէք զոնքըչին,*
*Կուրպան ըլլի էօպէօ աղա կըյրիճին,*
*Մէ տղան պէկ կը լմանի,*
*Փերզամը թափ կը լմանի.*
*Սեւ սապոնս աչքերը*
*Մէյրանի ակ կը լմանի։*

### Միայն աղջկայ համար

*Մոր մոր մանուշակ,*
*Քրթուն տղա՛ն, մեր մուշակ,*
*Հայաէ՛, ձգէ՛, տեղ տէօշէկ,*
*Գան, նստին խնամիներ,*
*Մազերն ուսին ու ճներ։*
*Աղջին, աղջին, խան աղջին,*
*Խնամեստան գան աղջին,*
*Հազար նալսուզ տան աղջին,*
*Կինէ քեզ չեմ տար աղջին։*

## ՍԵՂԱՆԻ ՎՐԱՅ ԵՐԳ

*Պատրաստել է այս սեղան*
*Եահնի, պէօյրէկ և փաղլաւան.*
*Հինգ հատ հաւուն և կախաման*
*Եղը լեցուն ծովու նման*
*Բարեխօսեա մեծ բնձանեն*
*Պատասխանէ կըյրուկ բախին։*

*Արեւելք գերարքեն*
*Եւ արեւմուտ կանաչ փարջին*
*Աղնիւ քէպապ վրան տարչին*
*Նստել ուտենք մատանօսին*
*Բարեխօսեա՛ են.։*

## ԱՅԳԱՆՈՒԱԳ

Դեռ գիշերուան բոյլ բոյլ աստեղց անաղօտ լոյսն չմարած
Եւ հրամաղ արշալոյսը կարմիր բոցով չի վառած,
Ելէ՛ք, կարդանք երգ՚ւ ալելուք աչքեր յերկինս սեւեռած
«Որ էն»ն էակին,
Ծեր, տղայ, այր, կին։

Դեռ այգածին և լուսափիւռ արեգին շող ճառագայթ,
Ցամէն սփիւռ ծով ու ցամաք, բարձր լերանց վեհ գագաթ
Չի սփռած, և մարդոց վրայ նապաստակը չառներ կայթ.
Օրհնենք մենք այգուն
Զհայրն գերագոյն։

Դեռ ագռաւն բոյնէն ելած՝ յոստըս ծառոց չի կռաւեր,
Եւ բակին մէջ չեն կըտկըտար աքաղաղն և իւր հաւեր,
Կամ այլ թռչնոց քաղցր դայլայլքն չեն կարդար մեզ հրաւէր,
Աղօթենք կանուխ
Առ տէր սրտաբուղխ։

Դեռ անդէոց մէջ ժիր մեղուն չի թառիր ծաղկէ ծաղիկ,
Եւ երփնաթեւ թիթեռնիկը չ՚ոստոստար անդ անմեղիկ,
Նոյնպէս մրջնիկն դեռ չէ ելած ճարել ուտեստ խաղաղիկ
Պաշտենք անյողդողդ
Զաստուածն ամբաւոյթ։

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳ

*Ահա բերին մեզի լավաշ*
*Ուտիք խմիք հաւաշ հաւաշ*
*Ոնչ կռիւ ունիք, ոնչ հաւաշ*
*Գինի լիլիլից, րախի լիլիլից*
*Հոյի հոգէկ տուր ըմպիք։*

*Ահա բերին մեզի կաղեր,*
*Եղն ելեր վրէն կը վազէր,*
*Մեզի պէտք է չիֆթէ սազեր*
*Գինի լի լի լից, րախի ևն.։*

*Ահա բերին մեզի պանիր,*
*Աչիցը քուննալ չի տանիր,*
*Ոնչ զանքաշ ունիք ոնչ անիր*
*Գինի լի լի լից ևն.։*

*Ահա բերին մեզի խանչա*
*Վարդ մ'է բսեր կանձա կոնձա,*
*Լիցաուր խմեք մեք տոյունձա*
*Գինի լի լի լից ևն.։*

*Ահա բերին մեզի սինի*
*Վրան քէպապ րախի գինի*
*Մէկ հար մ'ունիմ մէկ մ'ալ գինի*
*Գինի լի լի լից, ևն.։*

*Ջեր տունն ըլլէր մերն ըլլէր*
*Արալըղի պատը չըլլէր,*
*Եարսալ քովս ալ մարդ չըլլէր*
*Գինի լա լա լար, րախի լա լա լար, հոյի հոգեկս բար անուշ ըմպէի։*

## ԱՅԼ

*Մեծ և ազնիւ է այս սինին,*
*Անթիւ ծաղիկ ի մէջ սորին,*
*Բամկալ թաղեն վրայ ծառին,*
*Տուղուն, կումրեն հետ պիւլպիւլին,*
*Ի սմա կաքաւն ու աղաւնին,*
*Րախին, գինին մէջ պիլլորին,*
*Որ թէ կ'ուզէք չըլլալ մոլին,*
*Սակաւ ըմպէք յետ խորտիկին։*

# ՏԵՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՈՎ
# ԱՌԱԾՆԵՐ ԵՒ ԲԵԿՈՐՆԵՐ

## Ա.

*Ալիրը մաղիր՝ ալիրմաղը ցիցն է կախիր։*
*Ալիրին ճուալը քանի թօթուքինէ՝ թօզը կ՚ելլայ։*
*Ահը սրտէն՝ ամօթը էրեսէն չի տանէ։*
*Աղէկ խընձորին քար նետող շատ կ՚ըլլի։*
*Աղքատը գողութուն չի գացիր, գացիր էնէ՝ լուսինը*
*առջի ըռըկվընէ է ցաթիր։*
*Անուշ ապրէն վա՞վ կը փախչի։*
*Անուշ լեզուն օձը ծակէն դուրս կը հանէ։*
*Անցուկը մոռցուկ կ՚ըլլի։*
*Անօթի մկտիքը՝ կը կրծեն չոր քըթիկը։*
*Աչքը՝ լուսուն վատը չուզիր։*
*Ասված՝ լառանը կէօրէ ձանը կուտայ։*
*Արկայ ըստըկցունելօք փոր չի կշտանար։*

## Բ.

*Բաղդ չըլլինէ՝ հաւը ծառը կ՚ածէ։*
*Բանը բանելօք, ճամբան էրթալօք կը հատնի։*
*Բանը քըզմէն թող վախէ, դուն բանէն մի վախիր։*
*Բանն էնէ եու տէրտէրը խաղայ։*
*Բաց ամանը շունը կը լկէ։*

## Գ.

*Գեալը գիտէ գեալ բանը։*
*Գեալը միացածը կու լայ, տէրը՝ գացածը։*
*Գեալին կօյին կարծի՞ս ըսեր են՝ նստիր, լացեր է։*
*Գետինն անկած ունի։*
*Գողն ընծոք էլլանէ՝ տանը տէրը գող կը բռնէ։*

### Դ.

*Դախղեղ էղիրէ հու, բերան կը զեւցընէ։*
*Դըգալօք կը ժողվէ, չերեփօք կը տաղտըընէ։*

### Է.

*Էշը գիր՝ բաղնիք կ'երթայ։*
*Էշը իշուն քով կապէ, հա ռուացը կ'առնա՝ հա փառացը։*
*Էշն է էծիր՝ էշ կը փնտըռէ։*
*Էտեւէն չի գանէ՝ ծալը կը ցամքի։*
*Էրես էրեսէ կը ամըչնայ։*
*Էրկու պինար՝ պատէ պատըռ էր։*
*Էփած ապրին ջօռ չին խառնիր։*

### Ը.

*Ըղունկ ունիս նէ՝ գլօխդ քերէ։*
*Ընկողնիդ կէօրէ օտքդ երկնցուր։*
*Ընկողին տակը չիթիլ չի մեծնար։*

### Թ.

*Թոռլան ծուռ է, կովը կաթ չի տար։*

### Ժ.

*Ժամուն մոմի ուտող կատուին՝ աչքը քէօր կ'ըլլի։*

### Ի.

*Ինը խելը՝ տասն էղաւ։*
*Իշուն ըրէհէնէն տուիր, բերանն է խօթիր։*

### Լ.

*Լեզուն չըլլինէ՝ գլօխը կռակռը կը տանէ։*

### Խ.

*Խաչը տէրը կը զօրացունէ։*
*Խեւը խրատն ինչ էնէ։*
*Խեւը հարսնիքին տարիր, քէնց մեր տունն աղէկ է ըսիր։*
*Խըռուն ջաղացքը Աստված կը դարձունէ։*

*Խունկ ու մոմ էլայ ժամերուն, ծիդը ծամմ էղայ փողերուն։*

## Ծ.

*Ծանոր կեցիր ուր, ըլլիր գաս։*
*Ծանըր քարը տեղացը չի խլփչտար։*
*Ծառ թող ըլլի, ծուռ թող ըլլի։*
*Ծովը կ'երթայ, ցամաք կը դառնայ։*

## Կ.

*Կաթը թէփած կատու է դարձիր։*
*Կատուն նեղը թողուս նէ՝ երես կը պոռքայ։*
*Կատուն ալերին ճուալը հաւեն համար կ'առնէ։*
*Կոտկան ջաղացը՛ սոտէ կը մնայ։*
*Կուշտն անօթուն մանար կը բրցէ։*
*Կուտը հոս կ'ուտէ հաւկիթը դուրսը կ'ածէ։*
*Կուրպան ըլլիմ Աստուծոյ՝չէմիչին ա կոթ տուեր է։*

## Հ.

*Հազար չանկ ու չաղլա՝ չարժեր դգալ մի թարխանա։*
*Հարդէ խելօքը մամատոյ՝ խեւը ողան կը կորդէ։*
*Հարդէ հաստը բարկնայ, բարակին հոգին կ'ելլայ։*
*Հարդևոտ օրը ջօռ տըվող չատ կ'ըլլի։*
*Հարդէ ունկողը կից չի տեսնայ, քար չի նետեր։*
*Հարսնետունը չի գտէ, չերեփն առեր կը վազէ։*
*Հարսն ու փեսան թող խնտան, խեւ դըրացին քեզի ինչ։*
*Հարը կուլար ամինը՝ շունը կուլար ամինը։*
*Հաւը անօթենանէ՝ արատան միաքը կ'ըյնի։*
*Հաւը կ'ածէ, ճիճին կը խմէ։*
*Հաւը հաւ է նէ՝ ջօռ խմենէ էրկինք կը հայի։*
*Հուվանտը աղեկնալիք է նէ՝ հէքիմը քովը կուգայ։*

## Ձ.

*Ձին տիրուն ըսած տեղը կը կապեն։*

## Ճ.

Ճրագկալը տակը լոյս չի տար։
Ճին չեղած մարդ կը չարփէ։
Ճուվալակը վարտիք չէպիք չունենար։

## Մ.

Մահուն կը բռնեն ուր, թողուն կայիլ ըլլի։
Մանծ բանը պզտիկ չըլլիր։
Մանծ լօխմա կեր, մանծ զրուսք մի զուրցիր։
Մարիամ, աղայ կը բերե՞ս.— Ալ Ասված։
Մէկը՝ մէյ մէ, երկուքը չարա՞ր է։
Միան ըղընկէն չի զատուիր։
Միր էշն ուտող գեալինա չի մնար։
Մուկը ծակը չըրողուիր, ցախ էվէլն ալ օւան կը
  կասկեն։
Մահը լալօք՝ հարսանիքը խնտալօք։

## Ց.

Ցիցծուն օրւան մեծւաքը մէկ հեղէն չի բռնուիր։

## Շ.

Շանը բարեկամութիւնը չըլլիր։
Շանը կը զենինուք տիրուեմէն կ'ամչնան։
Շանը հետ ճուլ չի մանըվիր։
Շատ մարդ ձիտ կը ծամմէ, համմա քըրթուն աղջի-
  նը համը կը բերէ։
Շուկան չէմիչ կայ, էղածին ալ տէրը կոթօք է։
Շունն ինչ ուտէ, էն կը փսխէ։
Շունն հոսկէ ուտէ, հոնկէ կը հանէ։
Շունը յիշէ, քարը քովդ դիր։

## Ո.

Ուտողն ուտողը չուզեր տանը տէրը հէչ մէկը,

## Ձ.

Ձի հասած գեղիտ՝ քովը պառկից։

## Պ.

Պաղն աղկեկին ճակատը կ'ըլլի։
Պալըս տէրտէր էղեր է, իս անճաշակ իմ գացիր։
Պատ կայ, պատին էտեւը մարդ կայ։

## Ջ.

Ջաղացքը ջօւն է տարեր, ջախջախը կը փնտռէ։
Ջաղջին վրի քարը կը կայնի, խոքըւինը չի կայնի։

## Ս.

Սոխ չեմ կերեր ու կզվենամ։
Սուտին օտքը կոյրած է։

## Օ.

Օձը օձ է նէ՝ ջօւ խմած տեղը մարդու բան չէնէր։
Օղորտ թէնճիրէն ապուր չէփիր։
Օջիլատը քերվիր, անօթէն կեռման է ընկիր։

# ՏԵՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՈՎ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Ագին բրդէ, հոգին երկըթէ(մախաթ)։*
*Ագի ունի, հոգի չունի (տապակ)։*
*Անծակ մարգրիտ, անոլոր գերձան, Ասված կը չէրէ, ինսանը կը քակէ (խաղող)։*
*Անծիկ, անծիկ կը ցանիմ, հոգա լիտի կը վերցունիմ (ճակնդեղ)։*
*Բան մը ունիմ բան չէ, սուտ կը դպնում, իրաւ կը ճնչէ (վին, կիթառ, ևն…)։*
*Բերանն երկթէ չուն մը ունիմ(սնտուկ)։*
*Դեղին կովը սև կովը կը լզէ (բոց ու սան)։*
*Էգին անկաճը կարմիր օղօք տղայ մ'ունիմ(կեռասնե-նի)։*
*Էրկան բարտին շուք չունի (առու)։*
*Էրկան է պոչը՝ կը կրէ կոչը (դգալ)։*
*Էրկու աչէն, չորս պուտէն, ագին կռնակն է բսած (կշիռ)։*
*Էրկու աղբրէն ջօռ կը վազէ, հինդ աղբար դէմ կը վազէ (ռնգունք և ձեռքի մատունք)։*
*Էրկու արապ դըմարդեմ կայներ են (վառարանին երկու քիթը)։*
*Էգին մազօք մօրուօք մէկը կայ (եգիպտացորեն)։*
*Թակ ըսիմ, թակլար ըսիմ, անունն ըսիմ դուն նը գիտնաս (թակ)։*

Թոնիրին մէջ չորս հաց ունիմ (ընկոյզ)։

Լառանն էտև չախմախ քար ունիմ (աստղ)։

Լառանն էտև կէս հացի ունիմ (լուսինն վերջին քառորդին մէջ)։

Իմ տափուկս, քու տափուկդ, իմ օլօլօղս, քու ծախուկդ (երկան իշոյ)։

Կզկիմ, կզկիմ, չի հատնիր (ճամբայ)։

Խպըլիկը ծառն ելաւ, ինչ կայ չկայ վար թափեց (ածելի)։

Հարս մի ունիմ էկող գացողին ձեռքը կը պագնէ (դուռ)։

Հէքիյա, հէքիյա, հէք մը գտայ, էգին գացի վէգ մի գտայ, փորիցք փորիցի կապարօք հարս մի գըտայ (քզուկ)։

Մազաքիկ՝ լեզուն տաճիկ՝ հոգի ունի, օսկեր չունի (տզրուկ)։

Մինէրէէն կը ձգիմ չի կոյրիր, ջօռը կը ձգիմ՝ կը կոյրի (թուղթ)։

Ներսը օսկի դուրսը արծաթ (հաւկիթ)։

Չէնթ է մի անանուկ ունիմ (թուզ)։

Սըրըղ՝ սըրըղին վրայ՝ թուլուղ թուլուղին վրայ, ջաղասք ջաղասքի վրայ, գըդում գըդումի վրայ, մէջը՝ ջայիր ջայիրին մուռջում (մարդ)։

Սև, սև, սև օլէռ, հէրչօպան չրննայ քակեր (գրել ու կարդալ)։

Փառս Փառաց է, ճերմակ ոստա թէփիցուն (կարկուտ)։

# ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔ
# ԵՒ ԱՒԵԼՈՐԴԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՔ

*Արեւը մարը մտնելէն յետոյ ոեւէ մէկուն տունէն աւ բան բերող սուգ բերած կ'ըլլայ իր տունը։*

*Այցելու մը գացած տունը կերակուր ուտելու հանդիպի, զոքանչը կամ կեսուրը զինքը սիրելու նշան է։*

*Առանց քթախոտի և կամ այլ գրգռիչ պատճառներու փռնգտացող մէկը, այդ վայրկեանին ուրիշներուն զինքը բամբասելնին կ'ապացուցանէ։*

*Գիշերը ծութ ծամելը՝ մեռելի միս ծամելու պէս է։*

*Գիշերը հայելիով նայիլը մեծ մեղք է։*

*Դանակով կոփտուկ ընող(փայտ տաշող)ին դուռը պարտատէրերը կը պաշարեն։*

*Երաշտի ժամանակ չորս անգամ ամուսնացողի մը տանիքէն ջրորդան մը տանելով՝ առատ ջրոյ մը հոսանքին տրուի, առատ անձրեւ կուգայ։*

*Կարկուտը տեղալու ժամանակ Թոնիրին չամբուրները եթէ խաչաձեւ դրուին կարկուտին տակ, կամ կարկուտին հատիկը եթէ պզտիկ մանկան մը կռնակը ձգուի, ալ չի տեղար։*

*Կրակին վրայ դրուած ջուրը եթէ պարապ տեղը եռայ, դրացիները կը հարստանան։*

*Հարբուխ եղողի մը հանդիպողը ինքն ալ չբռնուելու համար՝ «Ջաղացէն նոր եկայ» ըսելու է։ Իսկ բոր կամ քոսի հանդիպողը պէտք է «եօթը տարիէ ի վեր մեռելի միս կը ծամիմ և մեռելոց ծոցն իմ պառկած» ըսէ։*

*Հաւը՝ եթէ աքաղաղի պէս խօսաց ընտանեաց*

*մին մեռնի, իսկ անծեղ որ խօսայ՝ ակնկալեալ համ-բորդն գայ։*

*Հիւսուած գուլպան ձեռքով քակողին տունը կ'ա-նիծուի։*

*Ջեռքին մէջ մարմաջող մէկուն՝ որևէ անգէ նա-սիպ կուգայ։*

*Մոմը մարելէն անմիջապէս ետք՝ առկայծող պատ-րոյգը փչելով վերստին վառելու յաջող մարդը ար-դար է։*

*Շատ նստելու սովորութիւն ունեցող հիւրը շուտ գրկելու համար՝ կամ տան աւելին կոթին վրայ ին-կել և կամ հիւրին ոտնամանին մէջ աղ լեցնելու է։*

*Մանածի կարժարը որ պարապը դառնայ՝ սաս-տիկ քամի կը փչէ։*

*Վառած մոմի բոցին չուրջը ճարպէն կամ ճը-րագումէն սեպաձև չերտեր որ ցցուին՝ յաջորդ օրը նոյն թուով հիւրեր կուգան։*

*Տղայ մը որ պարապ մաղի մէջ նստի, իր ծա-ղիկը այդ մաղին պէս կոյր կ'ըլլայ*

*Տան որևէ յարկին մէջ որ մրջիւն բնակի, նոյն տանտէրը կը հարստանայ։*

*Գամ գանող մէկուն կինը կամ մայրը մանչ զա-ւակ կը ծնանի իսկ ասեղ գտնողինը՝ աղջիկ։*

*Վառարանին մէջ փայտին բոցը որ վոնջէ՝ տան-տէրը կը բամբասուի։*

*Եթէ ջորին ծնանի. աշխարհանցում կ'ըլլայ։*

*Եթէ մէկուն ականջը չչնչէ, այլք զինքը կը բամբասեն։*

# ԼԵԶՈՒ

Ինչպէս ամէն գաւառ՝ նոյնպէս Մալաթիա իր առանձին լեզու ու արտասանութիւնն ունի։ Ասոնց լեզուն չըսենք կոչ՝ խիստ թանձր և կոկորդային է և ոչ միայն Թուրքերէնէ Պարսկերէնէ և Արաբերէնէ մուտ գտած բառեր, այլ հին ու նոր Հայերէնն ալ աղաւաղեալ է։ Եւ ուստի գրերու հնչման և լեզուի արտասանութեան վրայ մանրամասն տեղեկագրել գործոյս ընթացքէն դուրս ըլլալուն համար, զանց առնելով՝ գաղափար մը տալու համար միայն կրճատեալ, տառադարձեալ տառափոխեալ, աղաւաղեալ են. բառերէ հաւաքեալ «հաւաքածոյ»ն մէջ կը բերենք։

## Ա.

Ա — Բայերու ներկայէն վերջը յաւելեալ մասնիկ, ինչպէս է Սեբաստիացւոց «կոր»ը, Արաբկիրցւոց «նը»ն, Տիւրիկցւոց «ի»ն, ևն.։

Աղամա — կաղամար։

Ա. ալ — ատա — տալ։

Ագիցը հետ խաղցող — օրհասական։

Ագին թեթև — այծ և ուլ։

Ագըլել — նետել։

Ալեմինո — խիստ շատ։

Ալիր — ալիւր։

Ախպրանուն — կնքահայր։

Ակոք — հաց. ...կարդալ՝ հաց ուտել։

Ահանդաք — ահաւադիկ։

Ահանաք — ահաւանիկ։

Ահանսաք — ահաւասիկ։

*Ախբիր կամ ախպիր — աղբիւր.*
*Աղբուն — աղբ, աղբակոյտ.*
*Աղկիկ — գեղեցիկ.*
*Աղընտէկ — աղըղնած, գրղած. (բամպակի այն մասը՝ զոր գզիչը գաւազանով կը զատէ)։*
*Աղօս — աղիւս, աղուէս.*
*Ամելիքան — ամերիկեան.*
*Անկանը օղ ընել — միտքը պահել.*
*,, թողել — զանց առնել, մոռնալ.*
*Անկճէ նետել — նոյն ընդ վերին.*
*Անկճին էտեւը տեսնալ — իր ուզածին չարժանանալ։*
*Անտամ — անդամ, ընդամէնը.*
*Անյալօք — յղի (կին).*
*Անվըլայ — անլուայ.*
*Անտազա — կանքուն.*
*Աչք — աչք.*
*Անազար կամ անաղաք — այնքան.*
*Աղել կամ աղկել — հօկել, սպասել.*
*Աշխած — ածխացած.*
*Աշխարհք — աշխարհ։*
*Աշխրքօք ըլլիլ — չափազանց ուրախանալ։*
*Աջնորդ — պահապան։*
*Աչք ունենալ — նախանձիլ, ցանկալ։*
*Աչք մանալ — սիրուիլ։*
*Աչ-վարտիք չառնալ — բանի չհամարիլ։*
*Առ ելլալ — եռալ։*
*Առեւուն ելլալ — բանի չգալ, ոչնչանալ։*
*Առ է — եռացեալ է։*
*Առջօր — եռանցն։*
*Առսուն — երեսուն։*
*Ասել — ասեղ։*
*Ասված — Աստուած։*

*Ատորք — արտորցիր։*
*Արաղ — օղի, տաակ։*
*Արգակ — արեգակ։*
*Շագկըմ արգակ — բարկ արև։*
*Ավլէ — դարձեալ։*
*Ափսօնել — թավել։*

## Բ.

*Բազմանալ — կատաղիլ, բարկանալ։*
*Բալըքել — պահուիլ։*
*Բաղաղ կամ բաղարջ — մաղաս։*
*Բանտ — բարակ կապ։*
*Բանտակ — հակ. կէս բեռն։*
*Բանտորել — գործել։*
*Բարկենդակ — բարեկենդան։*
*Բազ մատ — բութմատ։*
*Բեղկ — բողկ։*
*Բեռնի տուիք — քիմք։*
*Բերնհամ — իւղ, պանիր,աղ։*
*Բերնաէկ — բեռնկապ, բերանեկապ։*
*Բէտ — փայտ։*
*« բռնող — բարապան, ոստիկան։*
*Բխէրիկ — ծխան, ծխնելոյզ։*
*Բնօրք — բնութիւն։*
*Բզտոտիլ — ծակծկիլն վիրաց։*
*Բողող — բղուղ, բղուկ։*
*Բուր — դղումին եւ. ի ցօղուն։*
*Բօն = չոցն։*

## Գ.

*Գատախք = ղագաղ։*
*Գաղտնել կամ գոնտել — գանգատիլ։*

Գանտ — զանկ, գերեզման։
Գավազուկ — կերակուր ծածկելու մեծ սակառ։
Գետնագետինք ըլլիլ — պատկառանք ամօթխածութիւն։
Գերիկնալ — գերիի պէս աղաչել։
Գըտնալ — գիտնալ։
Գիր տըվող — վճռատու, դենպետ։
Գլտորել — գլտորել, գլտորիլ։
Գլխու մազը ոտքը էջըցնել— սաստիկ յանդիմանութիւն, նախատինք։
Գլխնոց — գլխարկ։
Գլօխ — գլուխ։
Լառան գլօխ — լերան գագաթի մասը։
Գլօխը մածնալ — համբաւաւորուիլ բազմահոգութիւն։
Ցորենի գլօխ — հասկ։
Գլօխ չունենալ — չախորժիլ։
« փաթտոց — չղարշ, եազմա։
Գօն — գոյն։
« տալ-առնալ — ամչնալ, այլայլիլ։
Գօնտօլ — գանձ, մթերք։

## Դ.

Դատրուկ — դիմացկուն։
Դաժա — նոր։
Դաժա դաժա — անմիջապէս։
Դահեկ — դայեակ։
Դահնա — ջնջոց, ձեռնսրբոց։
Դաչ — կեանք, շունչ։ ...ը կըյրիլ՝ մեռնիլ։
Դատ — դատաւոր։
Դատանք — աշխատութիւն։

*Դարպաս = տարպաս, կառավարական պաշտօնարան։*
*Դեղ = քթախոտ։*
*Դիյաւար = դիւանար։*
*Դղաձկան = տղաձգան, նորածին (կին)։*
*Դող = տենդ, ջերմ։*
*Դուխտալ = դղրդիլ։*
*Դուըսը դնել = փախչողի մը ետեւէն վազել։*

## Ե.

*Եաբ = երբ․․․ու՝ երբոր։*
*Եատ-ետ-քը = ետքը, յետոյ։*
*Եատքէն = վերջը, յետոյ։*
*Եառ = ու, երաստակ։*
*Եաձ = վեց։*
*Եացծու, եաթսը = ննջման ժամ։*
*Եու, եո ր, եուք = որ, տես և ու։*
*Եէտքե = ներքե, տակ։*
*Եաքըսե = սիրտ, փոր։*
*Երիկ = սաղմն։*
*Եէրիկը բռնել = սաղնարութիւն։*

## Ջ.

*Ջազա զազա — մեծ մեծ, կոշտ (աղջիկ)։*
*Ջալլել — եղծանիլ, աւրուիլ*
*Ջաղկել — ձաղկել։*
*Ջարգարդար — ծաղկազարդ։*
*Ջենել — զարնել, ծեծել։*
*Ջիպ իտի — լիրբ, լկտի։*
*Ջլափված — յղկուած, սըբատաշ (քար) ողորկ։*
*Ջիմտաալ — ընկողմանիլ։*
*Ջուրցնել — քննել։*

Ջրբել — սրբել մաքրել։
Ջրգա — նիգ պարզունակ։
Ջրգել (կրակը) — արծարծել։
Ջրնեխ — հիւլէ։
Ջօնքանչ — զոքանչ։

## Է.

Էգի — այգի, պարտէզ։
Էգմել — ճգմել, տրորել։
Էծնալ — հեծնել։
Էն — ան, այն։
Էնի — անի, ...կա՝ անիկա։
Էնդիտին — միւս կողմը, հանդերձեալ աշխարհ։
Էնել — ընել։
Էղած = ամէն, բոլոր։
Էնկիւ- նիւ = էն, մասնիկ քերականական։
« էղել = ամենէն առաջ։
Էնցէ = այնպէս։
Էս = աս, այս, ...ի՝ ասի։
Էսիկի = ասիկա։
Էսցէ = այսպէս։
Էտ = ատ, էտի՝ ատի։
Էտիկի = ատիկա։
Էտի = ետեւի, ետքի։
Էվիլ = աւել։
Էվրըկած = աւրուած։
Էվիր = տգեղ, գէշ։
Էրես — երես։
Էրին = արիւն։
Էրինի պազար բան բռնել = մահսպառնալ։
Էրիւկ = տաք (կերակուրէն)։
Էրկինք նաս՝ գետինն ի սան = հոծ բազմութիւն։

Էրվալ — երևնալ։
Էրվիլ — աւրուիլ։

## Ը.

Ըզմօք — ինձմով։
Ըժօք — ուժեղ, զօրեղ։
Ըլլել = ըլլալ։
Ըմար = համար, վասն։
Ընծի ըմար = ինծի համար։
Ընկէզ կամ ընկօզ = ընկոյզ։
Ըղրկել = ղրկել։
Ըղունք = տե՛ս ուղունկ։
Ընկողին = անկողին։
Ըռընկուն = իրիկուն։
Ըռընկվընոց = ընթրիք։
Ըռողվել = զետեղուիլ։
Ըռուփ = բուփ։
Ըսկարայ = կասկարայ։

## Թ.

Թանթաղ = թաղանթ, մխնոնք։
Թապլտել = տապալիլ։
Թացօք չորօք զուրցել = Քսութիւն։
Թեպուր = խեաթիւն։
Թեւր քաշել = սիրաշահիլ։
Թէփիլ = թափել։
Թէրթիչ = թարթիչ։
Թթի ջօռ = օղի։
Թըլֆիլ = մարիլ, նուաղիլ։

Թիւրքի — Թրքերէն խաղ։
Թիւ — Թեւ, փետուր։
Թիփը դառը էլլալ — ամէն բանէ զրկուիլ։
Թիփ — Թեփ։
Թոր — Թոռն։
Թումպ — փիլաւ։
Թուր դանակ խաղալ — գինախաղութիւն։
Թոմած — Թմրած, ընդարմացած։
Թօռ — դուռ։
Թօռը փէտ ընիլ — ոեւէ զոհողութիւն չխնայել։
Թօռղա — գաւիթ, բակ։
Թօռ Թօռ — Թրթուր։

## Ժ.

Ժահրա, ժարժա = Նրբաթել դղմած։
Ժաչք — գետնաշարժ։
Ժողվողք — ժողով։
Ժանկոչ — ժամկոչ։
Ժարմաղ = չարմաղ։

## Ի.

Ի՞նչենի — ո՞վ, ի՞նչ մարդ։
Ի՞նչըս, ի՞չպէս — ի՞նչպէս։
Ի՛չնամ — ի՞նչ գիտեմ։
Ի՛չնաս = ի՞նչ գիտես։
Իպոպոպ = յոպոպ։
Իս = ես։
Իրաւուստան = իրօք, ստուգիւ։

## Լ.

Լան — լայն
Լառ = լեռ։
Լափըսխա = խարտեաշ, կուշտ։
Լեզուին տալ = քրթմնչել։
Լեզուն տաք տեղը ըլլել = երջանկութիւն։
Լեղար = վեղար։
Լեննալ = լեցուիլ։
Լենկուկ — լեցուն։
Լեմլիկ = դանակի շեղբ։
Լխլխած = երերուն, մգլած։
Լխմել = լախտով ծեծել։
Լըխ կըյրած — լպրծուն։
Լկել = սառոյցի լուծուիլը։
Լճկել = մգլիլ, բորբոսիլ։
Լիտիր = լիտր, լիր։
Լվրցունել = շուտասութիւն, արագախօսութիւն։
Լրթել = լափել, հատցնել։
Լինճ = չեփած խիւս։
Լողքար = ղուղան։
Լօլիկ — տես՝ կօլել։
Լօս — լոյս։
« բարի — բոլորովին լոյս։
« ծակ — լուսանցք, լուսամուտ.

## Խ.

Խալա — մօրաքոյր։
Խալիմ — Ջրի դդում։
Խալսիլ — ազատիլ, լմնցնել։
Խալըսում — ազատութիւն։

Խալի — գորգ։
Խալխզոն — խղունջ։
Խախ-կոտր — խայտառակ։
Խածնել — խանձել։
Խանչըրին քարը ընկնել — մեծ վնաս կրել։
Խարզած — աղտէն մաշած (լաթ)։
Խառմախոր — խառնիխուռն։
Խարօք էրթալ — արշաւել։
Խեւ — խենդ։
Խզկել — խծկել, գոցել։
Խդխտալ — խտխտալ, շլանալ։
Խըզին — Ներքնատուն, մառան։
Խըզոր խըզոր — ծիւ ծիւ, կտոր կտոր։
Խըզտել — Խզել, կտրել, պատռել։
Խըլլեր բըլլեր — մանր մունր։
Խղում — կճեպով ցորեն։
Խըլփշտալ — շարժել։
Խըսիր — փսիաթ։
Խըռչիկ — քուրջ, ցնցոտի։
Խըրխոլ — խրտչիլ։
Խիր — գող։
Խլթպիլ — մարիլ, նուաղիլ։
Խմիր — խմոր։
Խննիկ — խլլիք (սիւմիւք)։
Խուլ խուլ — խլրտիւն, դոյլ։
Խռիկ — չոր, խռիւ։
Խօշեր — խոշոր։
Խօփպուր — փխրեալ (հող)։

## Ծ.

Ծակ — բանտ։
Ծակը նետել — բանտարկել։

*Ծամմել — ծամել։*
*Ծանար = ծանր։*
*Ծըծըռնիկ = ծիծեռնակ։*
*Ծըռխըռտիկ = ծղիրդ։*
*Ծէլ = ծալք։*
*Ծէր = ծայր։*
*Ծատուկ = ճանճի ձուածք։*

## Կ.

*կաղիլ = թիռ, խորգ։*
*կաղիկ = պզտիկ կաթսայ։*
*կալըպէ = կարելի է։*
*կամ տալ = մոռցնել։*
*կայնիլ = կանգնիլ։*
*կայնուկ = կանգուն։*
*կանանչ կարմիր գօտի = ծիածան։*
*կաննուղ = կանուխ։*
*կապէտ կամ կապօտ = կապոյտ։*
*կասփ = անուշ (կուտ)։*
*կավուն = կանգուն (կնտէզէ)։*
*կարթ-դան = տե՛ս օրձա։*
*կարմուք = կամուրջ։*
*կարվել = ղրկել։*
*կաֆ կտրել = սպառնալ։*
*կեառ = կեռ, քուրդ։*
*« վտալ — մարմաջ։*
*կզկիլ-կծկիլ — փախչիլ։*
*կզուենալ — կծուանալ։*
*կէզկիւրտիւկ — կայծակ։*
*կէթինք — կաթիլ։*
*կըժ — խէժ։*

կըժալ — հուալն ջրոյ։
կըլմանի — կը նմանի։
կըլտատել — կլանել։
կըմըլ — ոջիլ, մու։
« նետել — աղքատանալ, սնանկանալ։
կըմըղել — մեղքնալ։
կըսմել — սեղմել, պնդել։
կըսօղէ — կէս առ կէս։
կթնոց — կտուց։
կթնոցել — կտցահարել։
կլոր — քիւֆթէ։
կով — կին, տես և ներքինակ։
կնտել — յօտել (այգի ևն.)։
կնտել — մկրատով մազ կտրել։
կնտել — խաղի մէջ խաբել։
կից — չորգ։
կող — ընկոյզ։
կոնչել — խեթկել, կտտոցով զարնել։
կոմռտոտիլ — ընկողմանիլ։
կոռմիլ — ընկողմանիլ։
կուտ — դրամ, փող, ստակ։
Անկուտ — անխելք, տգէտ։
կարկուտիլ, էրկինք էլլալ — սաստիկ բարկանալ։
կոշնակ — կոչնակ։
կոր — կարիճ։
կործել — կործանել։
կուճուկ — ճկոյթ (մատն)։
կռիճ — կնճիռ։
կսկիծ — օճառ, կանաչ պիպէռ։
կտաւի վրէ քաշված — պաստեղ։
կտել — դուռը կիսափակ ընել։
կտօսք, կտօցք = կոյտ, դէզ։

կտօվիլ — կուտիլ։
կրիճ — խեցի։
կօլել — լճանալ։
կօնտ — կնտակ, մազը թափած։
կօնճը կարճ — կծծի։

## Հ.

Հար — ափ, ձեռք։
Աչքը հարը գալ — չարաչար տանջուիլ։
Հալաա — ցարդ, մինչև հիմա։
Հալագից = կորսուէ։
Հալևլիք = իւղ։
Համպրուք = համբանք։
Համպրքօք = համբանքով։
Հայեվար = հայերէն։
Հայլիկ = հայելի, քարի բարակ կտոր։
Հայանցուք = օ՛ն երթանք։
Հանտէ = վասն, համար։
Հո՞ւմ հանտէ = որո՞ւ համար։
Հանկօշտ = հանգոյց։
Հառու, հառուն = հեռու։
Հարգև = անձրև։
Հարգէ = մինչև, ց։
Հար մեր = «հայր մեր», տէրունական աղօթք։
Հարսնուկ = հօրեղբօր, վարպետի և վարժապետի կին
Հացծըւան = հացի սաւան, հաստ սաւան։
Հաւեղ = խաղող։
Հեմի = հեղ մը, միանգամ։
Հերթ = յարդ։
Հէնց = ձրի, ոչինչ, պարապ։
Հէնց է = այնպէս է։

Հէրիր — հարիւր։
Հէօրէսսէկ — կէսօր։
Հէօրըսըկնոց — ճաշ։
Հէօրք կամ հուրք — կրակին սաստկութիւնը։
Հըմմա — բայց, սակայն։
  « — հիմա։
Հըմպա՞ — հապա՞։
Հընտէ — այնպէս։
Հընքամէր — կնքամայր։
Հընքապապ — կնքահայր։
Հընքհըռէն — ինքնիրեն։
Հընտըռտալ — հոտոտել։
Հըռէն — իր, իրեն։
Հովարել — հովահարել, մխիթարութիւն։
Հուվանտ — հիւանդ։
Հունան — հոն։
Հուսան — հոս։
Հուտան — հոտ։
Հուվընտնալ հիւանդանալ։
Հուլում — ուլունք։
Հու՞մ — ու՞մ, որու՞։
Հրօք — օրական, աւուրչէք։
Հօմ — տե՛ս, հում։
Հօմպլօղ — սրածայր գագաթ։
Հօռ — ու՞ր։
Հօրբալ — պոռթկալ, ցատքել։

## Ձ.

Ձառ — լոյծ, կղկղանք։
Ձառք — ձեռք։
Ձան — ձայն։

Ձանոտել — ձայն տալ։
Ձանոտած — ընկոյզ։
Ձըյնիլ — ծնանիլն (գազանաց)։
Ձէն — ան'ս, ձօն։
Ձէք — ձեզ։
Ձօն — ձիւն։
Ձեռքը եղոտել — եռանդով գործի ձեռնարկել։

## Ճ.

Ճակատը պատին գալ — արգիլուիլ, չյաջողիլ։
Ճակտին կաշին պատռել — Շատ նեղութիւն ու
    դժուարութիւն կրել։
Ճանկ — բուռն (մարդոց)։
« ոտք — եղունգ (մարդոց)։
« — ճանկ (կատուի)։
Ճանկիկ = մուրկ, մանր ոջիլ։
Ճանկել = բուռն ալիր առնել։
Ճանկադել = ցրել։
Ճաշակ = Ս. հաղորդութիւն։
Ճաշնալ = ճանչնալ։
Ճէթիլ = ճաթիլ։
Ճըռմիկ = ծխանին յատակը, վառարանին շուրջը։
Ճրդան = ջրորդան։
Ճիճի = ճճի, որդ։
Ճնճղուկ թռցնել = անգործութիւն։
Ճնչել = ճչել, կանչել։
Ճուվալակ = կտաւագործ։
Ճապօտ = աղտեղի։
Ճակել = անյագաբար ուտել։

## Մ.

Մազ = կառավարիչ։

Մանծ — կուսակալ։
Մաղա — մէզլ։
Մաթմնալ — չուարիլ, ապշիլ։
Մախիր — մոխիր։
Մաղ — տան ունէ ծածքը։
Մաղը ծակ է — մեր լեզուէն գիտէ։
Մայրել — մանրել։
Մայրուք — մանրուք, պզտիկ տղաք։
Մանծ — մեծ։
Մանտր — մանր։
  « տաւար — ոչխար։
Մառնիլ — մեռնիլ։
Մառել — մեռել։
Մասումաք — մանկիկ։
Մատա — ախորժակ, (միտք)։
Մատը հառ տալ — գուշակութիւն։
Մատը հնդըտալ — «
Մաւի — երկնագոյն, կապոյտ։
Մատը մախիրը չթաթխել — բնաւ գործի չձեռնար-
    կել։
Մարինոց — մորենի։
Մեղլեր — մեծաւո՛ր, իշխան։
Մեղքը երեսը տալ — հրապարակաւ յանդիմանել։
Մեղք — տօն օր։
Մեյնել — փռել։
Մըզմըզ — թուլամարմին։
  « ուկ — մազի պէս բարակ։
Մէկտեղութան — ընկերութեամբ։
Մէշք — մէջք, ողն։
Մէրիլ — մարիլ, նուաղիլ։
Մըշնեկ — միջնակ (քոյր, եղբայր, ներ)։
Մթել — խորդ, քուրջ, հին անկողին։

Մթնտիլ — մթագնիլ։
Մընիկ — մը, մանիկ։
Մընկըլ — դրամ, ստակ։
Մըտխ — ախորժակ։
Միջվանականէ — տե՛ս մէկտեղութիւն։
Մխտել = մխել, մշտել։
Միք = մենք, զմեզ։
Մկլտել = մողէս։
Մոլորատ = տեառընդառաջ։
Մուխ = ծխախոտ։
« բունող = մաքսախոյզ, բէժիի տէր։
» ը տփէն չինել = կորստեան մը համար կարի վշտանալ։
Մուռջում = մրջիւն։
« բօն = մրջմնոց։
Մուսանտարա = մըսադարան, միս են․ պահելու տեղ
Մուտնուկ = քաջ, աչքաբաց։
Մուրկատ = մկրատ։
Մսած = այրելու մօտեցած։
Մօտա = կալի պարտի կարմիր ներկ։

## Յ.

Յագուգայ = ագուգայ։
Յիցծուն = յիսուն։
Յիշէք = պզտիկ դրամարկղ զոր քահանայք եկեղեցւոյ մէջ կը պտտցնեն ժողովրդեան կամաւոր նուէրները ընդունելու։
Յօղն էլլալ = տե՛ս կարկուտել։

## Ն.

Նազուկ = դալար (նազիկ)։
» = կարժար։

*Նախշ = ուղէնիօա։*
*Նախշար — նշխար։*
*Ներս — կառավարական պաշտօնարան։*
  *» նստիլ — կառավարութեան ոևէ ճիւղին անդամ ըլլալ։*
*Նեղլաթ — զինուոր, ռամիկան։*
*Նէ = (հասարակ) նա։*
*Նէզտաք — այնքան։*
*Ներքինակ — կին։*
*Ներքընա — մահիճ։*
*Նորկանց — նորէն, կրկին։*
*Նորսկանց — նորինորդյ։*
*Նոցէ — այնպէս, տե՛ս և էնցէ։*
*Նվի — նա, անիկա։*
*Նվանք — անոնք։*
*Նուստուկ — նստած։*

## Շ.

*Շալ — ցփսի։*
*Շալտըռավան — շատրուան։*
*Շանքարող — զրաբանութիւն։*
*Շատկեկ — խիստ շատ։*
*Շառ — մէջ։*
  *« ք — կշիռ։*
  *« ել — կշռել։*
*Շափշաճի — շաղփաղփ, փուճ խօսող։*
*Շէթ — կռուասէր։*
*Շէպիք — շապիկ։*
*Շէյինք — կշիռք տե՛ս և շարք։*
*Շնհաւոր — շնորհաւոր։*
  *իվէ — պղտոր երես։*

Շինք = շէնք։
Շիվան — շիվան։
Շշտել = նախատել։
Շողուք = լորձունք։
Շուլլալ — հորեւանցի կար։
Շուլլել = խզել, մխել,
Շրթիք = (աչքի) ջուր։
Շորվա = թանապուր։

## Ո.

Ու — որ, տե՛ս և հու։
Ուկ = անցեալ ընդունելութիւն շինող մասնիկ․ զոր օրինակ՝ ուտուկ (կերուած)։
Ութնել = խաղը շահիլ։
Ուղունգ — եղունգ։
« — (կովի և ոչխարի) կճղակ։
« — (ձիոյ և ջորւոյ) սմբակ։
Ունկող — տե՛ս՝ ընկէզ։
Ունտ — հունտ, հացհամեմ։
Ուռ — պալար, ուռեցք։
Ուտող — ամօթոյք։
Ուտի տակ չմնալ — վճարուիլ, բարիքը փոխարինել
Ունք — Յօնք։

## Չ.

Չագկու — զմելի, դանակ։
Չայել — (սրինգ) են․ սուլել։
Չանկ — ազդարարութիւն։
Չալըմ — սիգանդ, պճնանք։
Չախմել — գամել, բեւեռել։
Չէթէ — ո՛չ թէ։

*Չէ՞ մի եու = չէ՞ մի որ։*
*Չէմիչ = չամիչ։*
*Չէնէ, չէնէմ — եթէ ոչ։*
*Չիմ = չեմ ուզեր, պէտք չէ։*
*Չիմնա = չեմ կրնար*
*Չիմնարա = չեմ կրնար։*
*Չիննա =չի կրնար։*
*Չիննարա = չի կրնար։*
*Չիսնա = չես կրնար։*
*Չիսնարա = չես կրնար։*
*Չիրիչ = վայրի չրեչ։*
*Չորս օտէն = չորքոտանի։*
*Մանծ « = ձի, ջորի։*
*Չոքել — ծանրացրել, կքիլ։*

## Պ.

*Պալքան = պատինճան։*
*Պակասաւոր = կին*
*Պաղպնծելիք = պապանձելի։*
*Պաճի — հօրաքոյր, մեծ քոյր, քոյր, տալ, ևն.։*
*Պաճիտ — պատիճ։*
*Պամիյա — բամիա։*
*Պահմալ — պահ մ՚առաջ։*
*Պահմլուկ — պահ մ՚առաջ։*
*Պահմի — պահ մը ետքը։*
*Պայմի — պահ մը ետք։*
*Պահառ — անպարկեշտ (կին)։*
*Պաննել — սպաննել։*
*Պաշլայել — սկսիլ։*
*պապ — հայր։*
*Պապա պապա — մեծամեծ։*

*Պառաթի = կերոն։*
*Պաստեղ — բաստեղ։*
*Պատմել — (մեռել) պատնել։*
*Պատըրգան — պատուհան։*
*Պարէքս — գէթ, գոնէ։*
*Պզտի — պզտիկ։*
*Պեճարել — ճարել։*
*Պէճիտ — կարեւոր։*
*Պզաօ — պզտիկ (ներ)։*
*Պէյել — պահել։*
*Պէյնը ուտել — համոզուիլ։*
*Պէյնը փաթտել — հաւանիլ։*
*Պէյնը ջրել — համոզել։*
*Պէյրուք = պատրոյգ։*
*Պընկըլ պընկըլ — պղպջալով։*
*Պիլէկ — արմուկ։*
*Պիւքմիւշէլ — ոլորել։*
*Պլամպէր — եգիպտացորեն։*
*Պուզպուզած — սառած։*
*Պճիքուկ — պրպտել։*
*Պուլպուլուկ — բողբոջ, կոկոն։*
*Պունկղնել — (խօսքը) պնդել։*
*Պուտուղ — պտուղ։*
*Պումշել — պինդ ոլորել։*
*պտլա = կէտ։*
*պուտ — երբուծ, ումպ։*
*պրճել — (գործը) հարեւանցի տեսնել։*
*պրկունք, պուրկունք — շրթունք։*
*պտխեցնել = (աչք) պայթեցնել։*
*պտղուց մի = պտուղի մը չափ։*
*պրպուտ = սառնամանիք։*
*պօլտիկ = պոլաճիկ։*

Պօղ — (բաղնիքի) ծրար։
Պտտել — պտոյտ ընել,

## Ջ.

Ջաղասք — ջաղացք, ջրաղաց։
Ջառ — մանելու ճախարակ։
Ջինթիյան — վարտիք։
Ջիր — չոր պտուղ։
Ջխվեր — ջրհոր։
Ջրդիկ — իգանդամ, ծնծակ։
Ջրջքնել — ցրցքնել, սրսկել։
Ջօռ — ջուր։
Ջօռի = ջորի։

## Ս.

Սագել = չակել, յարդարել։
Սաղտաք — այսքան։
Սանտ — սանդ։
Սանտի ձառք = սանդխառն։
Սապէն — օճառ։
Սառատ — (մեծ և նոսրածակ) մաղ։
Սավլեր — սալոր։
Սատուր — սակար։
Սաւսան — ասեղ։
Սեղանդիր — հացի սեղան։
Սէնքիաէմ — կարծես թէ։
Սեւադլօխ — վեղարակիր, վարդապետ։
Սէրպել = թողուլ, արձակել։
Սըբուն = ի վեր (մանիկ)։
Վանքու սըբուն = առաւօտէն ի վեր։
Սըւոր = ասոր։

Սըւըճուկ — սաչափ։
Տըւըճուկ — այդչափ։
Նըւըճուկ — այնչափ։
Սիլւըճուկ, սիթիլ — սիրտ, կուրծ։
Սիւ — սև։
Սիւ ճլան վրայ նստել — սնանկանալ։
Սիւ ջօռ — սուրճ։
Սիր — սեր։
Սղկել — յղկել։
Սնցէ — այսպէս։
Սսառ — սիսեռ։
Սրսռուկ — սարսուռ։

## Վ.

Վազան — ոջիլ։
« — վազող։
Վո՞վ — ո՞վ։
Վանտիկ — (հակի) հաստ չուան։
Վա՞ռ մի — որ մի։
Վայծուն — վաթսուն։
Վանքաց կննուղ — վաղքան ընդառաւօտս։
Վանքոնոց — նախաճաշ
Վերկուլ, վերկացուր — վերցուր։
Վէտէ — իվեր։
Վանքուվէրէ — առաւօտէն իվեր։
Վէրք էյնիլ — սարսիլ։
Վըլաք — լուացք։
Վընել — հոկառակիլ։
Վըրա — չարունակ։
Վիժօն — աղմուկ, ձայն։
Վրան արգակ ցաթիլ — բախտը բացուիլ։

Վրանոց — զգեստ, լաթ։
Վրան էրկինք չգտալ — նիհարնալ։
Վօռնից = վարտիք։
Վըլվըլ — աղմուկ։

## Տ.

Տակը թաց — հաստատութիւն չունեցող։
Տախտակը պակաս — պակասամիտ։
Տախտակը մըխ չվերցնող — աղքատ։
Տաղտատ — այդքան։
Տաղտաք — « «
Տաղտրնել — ցրուել, բաշխել։
Տարտղնել — « «
Տանգալ — բան չսեպել։
Տապան տալ — դիմանալ։
Տատա — մեծ պապ, հաւ։
Տասկել — ծածկել։
Տասկուկ— ծածկուած։
Տաքտուն — բաղնիք։
Տէ՛, տի՛ — օ՛ն։
Տէ — ատ, ատիկա։
Տէկօ — օն՛ եկուր։
Տեղիր — անկողին։
Տեղիր տեղ — անկողինի պահարան։
Տեղծած — ստեղծած։
Տենիր — տանիք, կտուր։
Տէք = ազգատոհի և այլ միքանի բառեր ցոյց տը-
ւող յոգնակի մասնիկ։
Տէքրտէք — տաքրեր։
Տիրւըրտէք = նէրեր։
Տըւի, տըւիկի — ատ, ատիկա։

Տիյա = ահա, ահաւասիկ։
Տիյանաք — « «
Տկել = ծալլել։
Տղար = քան, չափ (մասնիկ)։
Տղաք — « «
Տնկուկ = ձիգ, տնկուած։
Տնմիայ — տունը միացած, պառաւած (աղջիկ) տես
և՝ զաղա։
Տնցէ — այդպէս։
Տուն դնել — ուռիլն և թարախոտիլն (վէրքի)։
Տուն տալ — բնազդը մաքերել։
Տռզպիլ — քաշուիլ։
Տռօտիլ — սրդողիլ։
Տտիկ առնալ = հանդարտ նստիլ։

## Ց.

Ցած — բոզ, վատահամբաւ կին։
Ցորին — ցորեն։
Ցորմաղ — ցորենի մաղ, ձարէ մաղ։
Ցնդպտիլ = անհամբերութիւն։
Ցուցանք = բարկութիւն (Աստծոյ)։
Ցնծալ = տուժուիլ։

## Փ.

Փախուկ = խելայեղ։
Փարա խաղցնել — կաշառել։
Փարթ = քաղիրթ, փորոտի։
Փարտել = ման գալ, պտտիլ։
Փլորուկ = խարոյկ, կրակ։
Փոր փոր — փխրուն, փշրած։

## Ք.

Քաղցր — բուփ, մեղր են.։
Քարակտըրված — քարուքանդ։
Քարմաքուրան — « ։
Քարէ ծառ — մինարէ, աշտարակ։
Քեռռի — քեռի, մօրեղբայր։
Քեռքշտալ — զգացուիլ, ձգռտիլ։
Քերիզմիր — գերեզման։
Քիզ — քեզ։
Քըզմօք — քեզմով։
Քէծ — քած, մատակ։
Քէմիս — քամոց։
Քէնց — քան զ՛ (Նախադրութիւն)։
Քէս — « « «
» քիզ գէշ — բան զքեզ գէշ։
Քիւֆթէ կոճ — միս ծեծելու կոճղ։
Քշկուռ — քակոր։
Քոմոց — կռուասէր։
Քշվել — յանդիմանել։
Քըշըրտօզ — շատ քիչ։

## Օ.

Օղկալ — ործկալ, զզայրիլ։
Օլեռ — ոլոռ։
« ը քակուիլ — խելայեղութիւն։
Օնմել — վախնալ։
Օնմօք — պատկառելի, երկիւղալի։
Օչ — ուչ, անսապած։
Օսպ — ոսպ։
Օսպը քարոտ է — տե՛ս, մաղը ծակ է։
Օսպ ոսռ փնտռել — հետաքրքրութիւն։

*Օռան — օրորոց։*
*Օտից — ստնաման։*
*« ս ծակ է։— տե՛ս օսպը քարատ է։*
*Օտնդնա — նոր ոտքի ելող (մանկիկ)։*
*Օտք — ոտք։*
*Օտք կոխել — տե՛ս պոնկ դնել։*
*Օրթխտան — տե՛ս կիսօղէ։*
*Օրշնէք — օրհնութիւն։*
*Օրնակ — օրինակ, տեսակ։*
*Օրի՞ — է՞ր, ինչո՞ւ։*
*Օրձա — պառաւած (աղջիկ)։*
*Օրսէ — (մասնիկ) որ ըլլայ։*
*Հօռ օրսէ — ուր որ ըլլայ։*
*Հօմ օրսէ — որու որ ըլլայ։*
*Օրք — տակ, յատակ։*
*Օջիլ — ոջիլ։*
*« ը հոգա հոգա ըլլալ — սնափառութիւն։*

# ԹՈՒՐՔԵՐԷՆԻ ՄԷՋ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՀԱՅԵՐԷՆ ԲԱՌԵՐ

| Հայ. | Տաճկ. | Հայ. | Տաճկ. |
|---|---|---|---|
| *Բալուար* | *— բարավէր։* | *Մազման* | *— մազման։* |
| *Դղաձկոն* | *— դղէսկէն։* | *Նաճար* | *— նաճար։* |
| *Թումպ* | *— թումպ։* | *Մանանայ* | *— մանանայ։* |
| *Լող* | *— լող։* | *Չպլակ* | *— չէլէկ։* |
| *Խառամախոր* | *— խառամախոր* | *Չիւանք* | *— չիւան։* |
| *Խննիք* | *— խննիք։* | *Պատուհան* | *— պանուհան։* |
| *Խոզան* | *— խոզան։* | *Սալ* | *— սալ սամի-սամի։* |
| *Կուտա* | *— կուտա։* | *Սանդ* | *— սէնդ, սպանախ։* |
| *Հիծան* | *— հեզալ.* | *Սատար* | *— սատըր։* |
| *Հերիկ (հերկ)* | *— հերիկ։* | *Սու* | *— սով (յու)։* |
| *Հիմ* | *— հիմ։* | *Սամիթ* | *— սամութ։* |
| *Ձրդօն* | *— ջորդոն։* | | |

# ՄԱՆԿԱԿԱՆ ԲԱՌԵՐ

*Արայ — եղբայր։*
*Ախէնիմ — ծեծեմ։*
*Այ — աղբ, կղկղանք։*
*Ապուճայ — կերակուր։*
*Աչի, աչօ — աչք։*
*Բաբա — հայր։*
*Բահ ըլլալ — աղտոտել։*
*Բըս, բըսի — կատու։*
*Բու — տգեղ, գէշ։*
*Գըթ գըթ — խառնուած։*
*Գըխ — տգեղ, տես՝ բու։*
*Գըլօ — գլուխ։*
*Էլլօր — օրօրոց։*
*Թէթիկ — թաթ, ձեռք։*
*Լօլօ, լօլօկ — միրգ։*
*Խօխօ — ուրուական, հրէշ։*
*Խըծի, ծըծիկ — ծեծ։*
*Կակակ — ընկոյզ, հաւկիթ*

*Կըզընել — խածնել։*
*Կըտիկ — ոչխար, գառն։*
*Կ'ընտի կընտի — երերուն գլխոյ։*
*Համմա — ուտելիք։*
*Համ էրէ — կե՛ր։*
*Հավհով — շուն, տե՛ս և օշօ։*
*Հօփպա՛լան — կանգնէ։*
*Ձուճ — առնանդամ։*
*Ծըս — կրակ։*
*« ընել — այրել։*
*Ճուճուկ — թռչուն։*
*Մանի — պանիր։*
*Ջամչամ — լողալ, լոգալ։*
*Ջըթչըթ — ընկոյզ, հունկիթ*
*Ջըշօ — էշ։*
*Պեխ ընել — պահել։*
*Պում — ջուր։*
*Պէպէ — մանուկ, պատկեր*
*Պըզ — մէզ։*
*Պըխպըխ — դանակ։*
*Պըխպըխ ընել — մորթել։*
*Պիյ — վէրք։*
*Պճիկ — կով։*
*Պուպուկ — նոր լաթ, գեղեցիկ, աղէկ։*
*Վէվէ — ուղտ։*
*Տա՛տա՛ — ձի և ջորի։*
*Տըտիկ էրէ — նի՛ստ։*
*Տատիխ — ձեռքէն բռնելով պտտցնել։*
*Տօտօ — տե՛ս օտօ։*
*Տանկաչ — տե՛ս օխօ։*
*Տում — ջուր։*
*Փաթա ըլլալ — իյնալ։*
*Քէքնր — շաքար։*
*Օխ — քուն։*
*« ընել — քնանալ։*
*Օճիկ — ոջիլ։*
*Օխօ — ուրուական։*
*Օտօ — ոտք։*
*Օշօ — շուն։*

# ԱՂԱՒԱՂԵԱԼ ԵՒ ԿՐՃԱՏԵԱԼ ԵՐԿՍԵՌ ԱՆՈՒՆՆԵՐ

## ԱՐԱԿԱՆ

| Ուղիղ | Սխալ | Ուղիղ | Սխալ |
|---|---|---|---|
| *Աբրահամ* | *Աբըլօ* | *Արիստակէս* | *Ըռստաքէս* |
| *Աղեքսանդր* | *Սանդըր* | *Ջաքարիա* | *Ջաքօ* |
| *Ահարոն* | *Արքէն* | *Թադէոս* | *Թէդօ* |
| *Աստուածատուր* | *Աստուր* | *Թաթու* | *Թիւթէլ* |

| Ուղիղ | Սխալ | Ուղիղ | Սխալ |
|---|---|---|---|
| Թորոս | Թորիս, Թոլիկ | Յովհաննէս | Օվաննէս, Օվօ |
| Լևոն | Իարօն | Յովակիմ | Օվակ |
| Կարապետ | Կարօ, Կարիկ | Յովսէփ | Օսիփ |
| Համբարձում | Համբօ | Յովասափ | Օղասափ |
| Հայրապետ | Հարապետ, Հաստօ | Նազարէթ | Նազար |
| Ղազար | Կազար | Ներսէս | Նորսէս |
| Մաղաքիա | Մահաք | Պաղտասար | Պաղտօ |
| Մատթէոս | Մաթիյոս, Մաթօ | Պետրոս | Պեյրոս, Պետօ, Պետիկ |
| Մարտիրոս | Մարտիկ, Մարօ | Պօղոս | Պօղէս, Պելօ |
| Մերկիրոս | Մերկօ | Ռափայէլ | Ըռափ, Ռափօ |
| Մելքիսեդիկ | Մքըսէթ | Սամուէլ | Սամէլ |
| Միքայել | Միքէիլ, Մքօ | Սարգիս | Սագօ |
| Մկրտիչ | Մկր, Մչօ | Սենեքերիմ | Սենօ |
| Մուշեղ | Մըսեղ | Սեդրակ | Սեդօ |
| Յակոբ | Ակոբ, Ակօ | Սերովբէ | Սերոբ |
| Յարութիւն | Արթին | Սիմոն | Սիման, Սըմօ |
| | | Քերովբէ | Քերօփ |

## ԻԳԱԿԱՆ

| Ուղիղ | Սխալ | Ուղիղ | Սխալ |
|---|---|---|---|
| Աննա | Աննիկ | Երանեակ | Էրնէ |
| Գառն | Գարան | Զանազան | Զանօ |
| Գոհար | Գուհար | Զարմանազան | Զարման |
| Եղիսաբէթ | Եղբէ, Եղսա, Եղսաբ | Թագուհի | Թագ, Թագիկ, Թագուկ |

Իսկուհի — Իսկու
Կատարինէ — Կատար
Հռիփսիմէ — Հօրօ, Հօռօփ
Հեղինէ — Հեղնա, Էղնիկ
Մարիամ — Մարեամ Մալան
Մալիկ — Մալօ
Մարգարիտ — Մագկօ
Մարինէ — Մարնէ
Մանուշակ — Մանուշ
Ցուղիտա — Ուղտա
Նազելի — Նազիկ
Նարկիս — Նարիկ
Շամունէ — Շամօ
Ոսկի — Ոսկէկ
Սրբուհի — Սրբօ, Սրբիկ
Վարդուհի — Վարդօ
Տիրամայր — Տիրէմէր, Տիւրիկ։

## ԱՌԱԿ

Մելիտինէի տեղական լեզուի մասին գաղափար տալու համար թեեւ բառական հանելուկներ, առածներ, երգեր եւ զանազան բառեր գրեցինք բայց սիրելի ընթերցողներս զուարճացնելու յոյսով հետեւեալ առակն ալ ըսել աւելորդ չենք սեպեր։

## ԷՇ, ԵԶ ՈՒ ՄՇԱԿ

Մէկը կար, մէկը չկար, Աստուծմէ կայրի ալ մարդ չկար։ Ջանկլին Թիձձըրին մէկը գեղի մի մէջ շատ տուներ ունէր, էտտիղ ամէն օրնակ շատ մի տավար տօլուղ կը պէհէր։ Տարվանը մէկը կնկօքը և ադերքներօքը գեղը գնաց ուր Թարլաններէն մէկուն մէջ զառէն հինգ ցօրեն ցանէ ուէյրիէս մարդը հէյ-վնները լեզուէն ադէկ կը հասկնար, հըմմա հարգէ հուէն նէֆսը Թէնլիքէի տակ չի դնէ նը՝ պաշտաուն

չէրնա պատմիր. էսուր հանտէ պէտք չէր ու հաէն իմաստութիւնօքը ուսած բաները մէկուն ըսեր։

Երկուքը մէկ ախոռի մէջ կապուած էշ մի ու էօքիւզ մի ունէր։ Օրին մէկը թիւճարը հաէն տղօց խաղերը տեսնալօք էկլէնմիշ ըլլելու հանտէ էասնց քով նստելն իքէն, լսեց ու էօքիւզը էշուն կ'ըսէ եա. «Արթուն. իշ խատար ուզուրլի տեսնմ ա քեզ եարու քու քշած ըրէ հէթութիւնդ ու քիչի աէհմէդք աչքիս առջևը բերիմ։ Մախսուզ մարդ մի քըզքմըր-ղաթ կ'ըլլի, կը վլանայ, մալուած թէմիզ գարիսո-պուզի պէս ջօռ կուտայ։ Քու ամմենէ մանծ գործդ, միր տէրը չէլկէլ է, եարու քաղաք եա պաշխատեղ մը երթա էկէր տատ չըլլիրնէ ամմէն տաէն պարապ պիտի մնայիր։ Էէքին իմ հետս շատ պէշ վարվինա, հէմ իմ հալս իշ շատք նետելիք, քուդ էն շտակ գո-վ՛լիս է։ Կէս գէշեր ըլլի թէ չըլլի, տա՛ քըզի սապանի մի կողմիշ կ'ընիին էս ու հօրչէ ընկուն քշել կուտան. էսօնք էնպէս կը խզնճին ամա քու՝ շատ առեն պիւթիւն ուժս կը քաշվիյա, մնակ էստ չէ, չիւթճիւն ուր տայիմ էտևէս կուգայ, հա՛ պառ մաստայօքս կը ծեծէ։ Ասարանը քաշիլէն քաշիլէն չըլլիցս կաշին կեղվըրված է, ինչ էնիս հարցէ ախչամ բանիշէն եաքը՝ եարու տուն դառնամ առջևս մընակ չոր մի լալնուն դամ՝ հէչ չէ նը մէջի քարը քէսէի ճէն սոկցնէր ուր ըրեհէթ մի ուտիմ. իմ էս ու-ղուրսուզութեանս պատկառը թմմնալու համար քշերն ա թրիքիս վրան պառկելու մէնճպուր եղած եմ։ Հըմ մաքու հալիդ ցանկանալու հագգ ունիմ թէ չէ»։

Էշը ճար կուլաղիյօք մտիկ էրաց. ու եաք էօ-քիւզը խօսքը թմնցուց. «Բըզի քու անկուտ (անե-լիք) ըսիր ինէ՝ ըսած էնոր, ա՛ղօքն է. շատ թէ-վլէքէլի ես. կը թողուս ուր հաէնց քէֆին պէս քեզ

բանեցնին. հիչ խելք մի չես մտմտար. լաքին քու քաշած ամմեն հազարէթէտ քըզի ինչ ֆայտայ կայ։ Դուն հընքըզինքդ կը չարչրկիս ա էնպէս մարդոց ըրէհէթութեանը համար ուր հէչ մի ադին մը կատիրդ չին ճաշնար։ Քու հետդ էտպէս չէին վարվիր թէ, ուր ուժիդ կէօրէ էօտ ալ ունենայիր։ Եարու քիզ մուսուլը կապելու կը բերեն՝ ինչո՞ւ հանտէ դէմ չես կայնիր ա, ինչո՞ւ հանտէ կօնջօքդ չես կօնջիր ա. ինչո՞ւ հանտէ ոտքիլընեբէ գետին զէնիրուք հէրս չիս էլլար ա, ինչո՞ւ հանտէ մէրամ, պիթիւն ա չիս օհմեցնիր ա եէկին մի պաջելօք։ Աւլած հընքըզինքտ սիրցունելու ամմէն բանը արւիր է հըմմա, դուն չի գտիսէտ չոր հիրթըէտ քըզը բերիմնէ հիչ մի ստիրիչէկէր քըզի տըւած էս խօրաւրդներս բանիս նէ՝ էնպէ՛ս մի մխաթ պիտի ըլլին քըզի եաւր, էն ատենը կը հասկնաս ըածներուս հազլի ըլլիլը. հէմ ընծի շնորհակալ պիտ՝ ըլլիս։»

Էօքիւզը իշուն թամպածները վրաւ հասկցաւ, հէմ շնորհակալութիւն յայտնեց. «Սիրելի Արթուն, բաւ իշուն, ամմ՝ն ըսածներդ միւքքէրդ պիտի էնիմ. հէմ տեսնաս քի իշպէս գլօխ պիտի հանիմ։» Էս զրուցքներէն ետքը հիւսքիւթ կիցան ու թիւճարր ամէն բաները մոլիկ էրաց։

Մէկալ օրը կաննուխ մաւշակը էկաւ, էօքիւզն առաւ, տարաւ սապանի կողմիչ էրաց ու բանեցուց։ Էօքիւզը իշուն խրատի միտքը պ.հիր էր՝ էն օրը գլօխը անկից, հաւսու ըսըն՛ ունի՛ մուշակը բերաւ ուր մուսուրը կապէ՝ ամմէն օրուան պէս, առնին էվըրկածը՝ պաւյնուզնիրը հըքըհուն երկնցնելու անց պաչլայեց սէրթութուն էնել ու պաշելէն ետա ետա քաշվիլ, գլօխն ալ ծըռիկց, կէօյէքի մաւշակին զէնել

կ'ուզիր։ Մէկ խօսք՝ իչուն տուած թէրպիաները պիւթիւն բանեցու։ Մէկալ օրը մուչակը էկաւ օր նորէն տանէ, հըմմա տեսաւ ու ըռըկուան դըրած հերթօք մուսուրը լենկուկ է, հէմ էօքիւզը գետինը մէյնըվիր, ոտքերը վեր տնկեր պէտ պէտ կը հեւայ։ գըտցաւ թէ հուանտ է մեղքըցաւ վըրան, և տեսաւ ուր փայտա չունի էտի բանեցնելը՝ գնաց թէզօք թիւճճըրին ըմցուց։

Թիւճճարը էն սաութս հասկցաւ ու էօքիւզը իչուն խրատները մէկիկ մէկիկ բռնիր է։ Իչուն ճունան (պատիժ) տալու համար «թէզօք գընա', ըսաց մուչակին, էօքիւզին տեղը էչն տա, աղէկ մը խօնճեցուր ու խելքը գլօխը գայ»։ Մուչակը էս թանպահը կատարեց։ Էչը մէճպուր էղաւ հարզէ ըռընկուն չիւթ քշել (քաշել) և եէկին մի խոնճեցաւ չինքի էտպէս բանելու հէչ ալըշմըշ էղած չէր։ Էսկից զատ՝ լն զտար փէտ կէրաւ ուր՝ տուն էկաւ նէ օտքի վրայ կայնելիք հալը չի մնաց։

Լէքին էօքիւզին քէֆին վրայ քէֆ չի կար, հուէն մուսուրին մէջ ինչուր կար՝ կերիր զըրիր պիւթիւն օրը եան նստիր էր, հընքըռէն քէֆլէնմիշ կ'ըլլէր ու իչուն խրատները բռնից. չատ մի օրհնէք կատար էնուք. հէմ եաք էնուր գալը տեսաւ վազեց հուէն չնորհակալութիւնը յայտնելու։ Էչն իչէ էնպէս նեղացիր՝ հոգին բերանն էկիր էր ուր բան մի, խօսք մի պիլէնէմ չըսաց։ «Իմ իչութանս էրուր եա՝ ձօնը իմ գլօխս էկաւ, կ'ըսէր հընքըռէն. ամմեն ուզածս տեղն էր, քէֆիս վրայ քէֆ չիկար, սուչն իմն է՝ ու էս պէլայիս մէջ ընկայ հէմ էկիր ասկից խալըսելուն մէկ կօլայ ճամբան չի մտմտամ նէ, բանս բըսիր է։» էս ըսելօք էտ զտար ուժէ, մուտարէ ընկած էր ուր, հուէն մուսուրին տակը մա-

*ռնելի պէս գետինը մէյնըվեցաւ։*

*Թիւճճարը եար լսեց իշուն էս հալը, տեսնամ հալս էօքիւզին ու էնուր փաթը ինչ Փըըլտաղ պէ-տի դառնայ ըսելօք՝ ըռընկվընոցը ուտելուն պէս հասաւ՝ լսեց ուր էշը էօքիւզին կ'ըսէր․ «Հընքա-պապ, ըսէ տեսնամ թէ ի՞նչ պիտի ընիս եար վաղը մուշակը ուտելիքդ բերէ։ — Ի՛նչ պիտ ընիմ, ըսաց էօքիւզը, քան ընծի տուած թէրթիւպդ պըտի բա-նեցընեմ։ Առաջք պիտի հասաւննամ, էրէկվան պէս պուրնաւներս պիտի ցըցընիմ, սուտ հուանտ պիտ' ըլլիմ ու հոգի քաշելու պէս պիտի ընիմ։ — Ջի ըլ-լի եու Լապէս բան մի ընիս ըսած էշը էտ պէսօք գլօխս վրայ կու տաս․ չիւնքի էս ըռընկուն տաւն դառնալն ի քէն՝ միր տիրոջը քըզի հանաէ ըսած մէկ խօսքը լսեցի նէւք սիրտս դող էլաւ։*

*— Է՞հ, ի՞նչ լսեցիր, ըսած էօքիւզը, իրիճա կ'ը-նիմ, բան մի մի պահիր ըսէ՛ ընծի, սիրելիս։ — Տէրս, ըսած էշը մուշակին ըսաց թէ, «քանի ուր էօքիւզը ոտքի վրայ չինեայ կայնիր հէմ ուտելիք չինեայ ուտիրա, կ'ուզիմ ուր վաղը համանմորթիմ Աստուծու սիրուն հանրէ միսը աղքատներուն տաղ-տընիմ, կաշենա մըզի պէտք կ'ըլլի, տապաղին կու-տաս հըմմա չմեռնաս կասապը կանչելա»։ Իշտէ էս իր քըզի ըսելիքս, հեագ ունեցած բարեկամութեան-նուս կապէ մէճպուր էրայ իս էս բանը քըզի ըսե-լու նոր խրատ մ'ալ քըզի տալ։ Նախ և առաջ եար հերցդ բերին ոտքի ել ու ընի չէպիկ մի լըթէ․ Միր տէրը Լսի տեսածին պէս՝ պիտի հասկնայ ուր աղէկ-ցիր իս․ ու խօսքը եաա պիտի առնա․ չէ եու պախ-չա թէվիւր ընինէ բանըդ կը բռնի, խալըսումչու-նիս»։*

*Էս խըռատները իշուն ուզածին պէս էօքիւզին*

Թէեսիր էրաց։ Էօքիւզը քօն տուաւ տուաւ ու վախուն (վախէն) պաչլայից պաշնել։ Տէրը հարու էս զրկանքները ճան կուլաղիքօք մաիկ էրայ, էնպէս բանձր քաչքաչօք մի խնդաց ուր, տուննէ էվրւլիք կնիկը էնդի ծէրը զարմացաւ։ «Հասկցուր ընծի, ըսաւ էնուր թէ ինչու հանաէ էգպէս մէկին բանձր կը խնդաս ուր իսա քու հեադ խնդամ։ Կնիկ ըսաց թիւճճարը, իմ խնդալս լսիլդ մեակ հերիք է քըզի, Չէ, ըսաց կնիկը, կուզիմու սէպէպդ հասկնամ։ Չիմնա էդ ուզածդ էնիլ, ըսաց ջրիկը, մինակ գացիր ու մեր իշուն ու էօքիւզին վրայ ըսած խօսքին վրայ կը խնդամ, մնացածը էնպէս սըր մէկա, քըզի չիմնայ ըսիր։ Վո՞վ չի թողուր, ընծի ըմցնելու, ըսաց կնիկը։ Էկէր ըսիմ նէ գըտցիր որ կը մեռնիմ, ըսաց էրիկը, իմ վրաս կը խնդաս, ճնչաց կնիկը ըսածդ օղորտ չելար, էկէր հմմա ինչո՞ւ հանաէ խէդալդ չըսիլ, հէմ իշուն ու էօքիւզին մասպէյնը անցցած լաֆերը ըզմէ պահենց, Աստուծու վրայ կ'երդընեմ ուր ալ էսկի հաթքը մէկտեղ չպիտի կենանք։

Էս խօսքերը թմցունելով՝ տուն գնաց քէօշէ մի նստաւ և էնտեղը հարզէ լօս լալօք անցուց։ Էրիկը մէկալ օրը տեսաւուր, տահա լալուն ձայնը չիկտրիր ա, «կնի՛կ էն խելքդ խելք չէ, ըսայ էնաւր, ինչու ցաւ կ'էնիսա, քանիքու օչինչ բան է։ Էնտղաք հոգու ցաւ կ'էնիմ էսաւր, հանաէ, ըսաց կինը, որ հարզէ չըսիս նէ պիտի լամ։ Լաքին զարաֆութ չէ ըսածս, ըսաց էրիկը. էկէր քու էս ըղաչանքդ լսիմու ըրրը պատմիմէ իս պիտի մեռնիմ։ Աստուծու էմրը ինչ է նը թող ըլլի. ըսաց կնիկը, իս տայիմ պիտի լամ, պիտի դադրիմու ըսիս ակէյի։ Տիկնամայաքու քըզի խօսք հասկցնելը շատ կիւճ է։ Հէմ միս մըքինը չիկայ՝ ու քանիքու էտպէս ինատուղլունօքդ

հընքըզինքդ պիտի մոռցնիս, տղեքդ կանչիմ ու մառնելէդ առաջ քեզ տեսնանք»։ Համան տղաքը բերել տուաւ, Էնցն ալ մարդ կառվից ու կնկանը պապը. մէր ու խնամ(ազգական)ները կանչին։ Երբ էղածն ա էկան ժողովիտան ու գործին էղիլութիւնը Էնոնց հասկցուց, էսոնք պիւթիւն վարպետութիւնին բանեցուցին թէ հազգ չունի էսպէս ինատին ձին էծնալու։ Ըմմա կնիկը պիւթիւնն ալ փիւր սիաս էրաց (վհատեցուց) ու ըսացքի աղէկ է մառնիլ քան թէ էս գործուն մէջ էրկանը որ էջըցնել. Կէրէկ մէրըկէրէկ պապը ու կէրէկ զաւկները զառէն զառէն զուրցեցին, հէր ինչ էրինէ կանմիշ չեղաւ։ Թիւճարն ալ շաշմէ էղէր ինչ էնելիքը չէր գիտեր։ Հռեն տանը դրան առջև մինակ նստած՝ կը մոմտանքի սըրը կնկանը ըսելօք հինք մառնէր չէնէ չըսելօք կնիկը մառնէր.

Էս Թիւճարը Թուղին մէջ հարծող լեցուն հաւուր խորազ մ'ունէր. Էնցէ ալ աղէկ չուն մը ունէր որ տանը մղէթ կ'ըլլեր։ Իշպէս բաք եաբ նստեր ինչ անելիքը կը մոմտար, տեսաւ ուր չունը խորոզին վրայ կր վազէր ուր հաւու մը վրան էլեր կը կոխիր ու լսեց ուր չունը սա խօսքերը կ'ըսէր խորոզին. «խորոզ, Աստուած քու էդ զէվէք քշելդ շատ չպիտի էրկնցունէ, դու չի՞ս ամչնար ու էտ բանը էսօրա կէնիս տ»։ Խորոզը մէճիզներու վրայ թիք մի կայնեցաւ ու չան դառնալով, «ինչո՞ւ մար էսօր ու չէքէ պաշխոռոր էս բանը ընծի եասաղ եղած ըլլի։ Բանի եու չգիտես , ըսաց ..ոնը, զացիր ուր մեր տէրը էսօր սուգի մէջ է. կնիկը կ'ըսէ եաճու պէհուած բան մի ըսէ էնուր. էնա էյեր էս ուզածը ըսէնէ հընքըզինքը պիտի մոռցնէ։ Գործերը էսպէս են. հէմ վախնում թէ կնկանը ինատութիւնը ախըը-

ըսլու տէյնաւ խելք չունի. չիւնքի էնիկի շատ սիրէ
եա. կապիլէ քի պիտի մառնի, պիւթիւնիս ամէկ-
զմէկ ջարդ ու փուրդ կէնիք էատեղ, մընակ դուն
մեր թատայինա չիս հայիր չիրքի պէս հաւերուդ
հետ քէֆ կէնիսայ։

Խօրոսը աէպէս ճէվապ տուաւ շանը Ճաղիրին.
«ինչ անկուտ է եղեր մեր տէյրը. սատէ մէկ կնիկ մի
ունի ու էնուր հետ ա հուն չինիա էլլար, իս իսէ
էատին յիդծուն հատ ունիմ ու էմրէս դուրս չհնէլ-
լար ա։ Թող խելքը գլօխը թօփէ ու թէզօք էտկի
խալսելուն ճարը գտնայ։ — էհ ի՞չ կուզիս որ էնպէս
էնէ, ըսաց շունը։ — Թող կնկանը էղած տեղն էրթայ,
ներս մանայ ըսաց խօրոզը ու դուռը, կղպելէն ետա-
քը՝ թող թէմիզ զօփայ մը առնայ ու էնիկի աղէկ մի
թրջէ էն ատենը խելքը գլօխը կուգայ, փօլատ պէս
կ'ըլլի»։

Թիւճճարը խօրոզին էս խօսքերը լսեց թէ չի
լսեց ոտք էլաւ. մեծկակ ու չի կոյրելիք փէտ մի
առաւ գնաց հաէն կնկանը քով ուր տահա կուլախա,
էնուր հետ ներս մտաւ, դուռը կղպեց ու էնպէս աղ-
կէկ փէտ մի զրբիցուր. կնիկը ճնչել պաշլայեց, «Ջաւք
կուտայ, էրիկս ձառք կուտայ, իս թող տուր, ա՛լ
բան մը չեմ հարցներ քեզի»։ Էս խօսքին վրայ էրի-
կը տեսաւ ու հաէն կնիկը բիւշմանութիւն կը բերէ
ինատութեանը վրայ քէօթէկը թէրկից, դուռը բացաւ
էղած խամներ ներս մտան, ուրախացան կնիկը ի-
նատութիւնը ձգիր է, ու շնորհակալ էղան էրկանը-
մնէ եու էսպէսօք էնուր խելքը գլօխը բերիր է։

# ՋՈՒԱՐՃԱԼԻՔ

*Վանական միաբանի մը փոքրաւորն սովորութիւն ըրած էր միաբանին պառկելէն վերջ՝ ամէն օր հաւկիթ մը ճրագին բոցին վրայ բռնելով խաշել ու ուտել։ Մեծաւորը հետաքրքիր ըլլալով սար ուչ պառկելուն վրայ, իրիկուն մը արթուն մնալով կը հսկէ և ահա փոքրաւորն դարձեալ հաւկիթ մը բերելով խաշելու վայրկեանին՝ անկողնէն ցատկելով ձեռքէն կը բռնէ և «այս ի՞նչ է, անպիտան» որ կ'ըսէ, փոքրաւորը ալ ուրիշ ճար չգտնելով, «սատանան սովրեցուց» կը պատասխանէ։ Այդ միջոցին խկոյն սատանայ մը երևան գալով կ'ըսէ թէ «Անիրա՛ւ, մենք ամէն բան գիտենք, սակայն հաւկիթ խաշելը ո՛չ իմ նախնիքս գիտէին, ո՛չ ես գիտեմ և ոչ ալ մեր զաւակները» ու ամօթահար կը թողու։*

## ԱՅԼ

*Ժամանակաւ թագաւոր մը կ'ուզէ 20000 ղրուշ պարգևւ տալ այն անձին որ օրինաւոր սուտ մը կը խօսի իր ներկայութեանը։ Շատ մը մարդիկ իրենց հնարած սուտերն կը խօսին սակայն չեն արժանանար խոստացուած պարգևւին։ Որբ տղայ մ'ալ իր խորդ մօր հրահանգով պզտիկ կարաս մը չալկած կը ներկայանայ կայսեր և՝ «Տէ՛ր Վեհափառ. ձեր հոգելոյս հայրն այնինչ պատերազմի ժամանակ հօրմէս ոսկի փոխ առած է այս կարասով և չվճարելով վախճանած է։ Արդ՝ եթէ սուտս օրինաւոր կը գտնէք, տուէք կամ ոսկին և կամ ձեր խոստացած նուէրը»,*

կ՚ըսէ. Թագաւորն ալ հաւանելով սուտին կը կատարէ իր խոստումը։

## ԱՅԼ

Հայրենակ գիւղի մէջ կատարուած հարսանիքի մը ատեն, ըստ սովորութեան երբ կանայք քաղցրեղէն կը բաշխեն հրաւիրեալներուն, բաշխողը նորեկ հարսին ալ մօտենալով՝ «դուն ալ կ՚ուտե՞ս, քեզ ալ տամ», կ՚ըսէ. հարսը՝ «չեմ ուտեր, ճէպս դիր» կ՚ըսէ։

## ԱՅԼ

Մարդ մը որ բնաւ չէր սիրեր աղօթք ընելը, բարեկամներն զինքը կը համոզեն որ երթայ գէթ մեծ ծառի մը տակ միանգամ աղօթէ։ Մարդը համոզուելով մինչ ծառի մը տակ կ՚երթար, օտարական մը որ նոյն պահուն այդ ծառին տակէն կ՚անցնէր, եկողը կասկածելի մէկը կարծելով անմիջապէս ծառը կ՚ելլէ։ Մարդը ծառին տակ կը հասնի և կը սկսի.— «Աստուած իմ, այս մէկ աղօթքս բոլորին տեղ ընդունիլ հաճէ»։ Ծառին վրայինն ալ «բնա՛ւ չեմ ընդունիր» կը պատասխանէ։ «Կ՚ուզես ընդունէ, կ՚ուզես մի ընդուներ, արդէն ընելիքս ալ այսչափ էր» կ՚ըսէ ու կը մեկնի։

## ԱՆՍՈՒՐՑԻՆԵՐՈՒ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔԸ

Ասոնցմէ մին՝ առաջին անգամ ըլլալով երբ պատարագ տեսնելու համար քաղաք կուգայ և կիւ-

րակէ առաւօտ եկեղեցի կ'երթայ, պատարագի խոր-հրդայն վերաբերումէ ետքն երբ սարկաւագն պատարագչին աջն համբուրելով բեմէն վար իջած և Ս. ողջոյն ներկայ կրօնականին տալէ ետք՝ դարձեալ բեմ ելլելով պատարագչին խաղաղութիւն տալու ատեն բուրուառով դէպի ժողովուրդն խնկարկելն կը դիտէ, կարծելով թէ աս բոլոր բաներն զինքը բըռնելու նշաններ են (որովհետեւ ժողովուրդը զիրար համբուրելով մինչեւ իրեն մօտ կուգան) ի փախուստ կը խուճապէ և տաճարին դռնէն դուրս ելլելուն պէս կծիկը կը դնէ և մինչեւ գիւղը շնչասպառ կը վազէ։ Իր հայրը, ատոր այսպէս անակնկալ գալու պատճառն իմանալ ուզելով՝

— Տղա՛ս, կը հարցնէ, բարի՞ է. ինչո՞ւ այսպէս շնչասպառ և գունաթափ եկար։

— Հա՛յրիկ, կը պատասխանէ տղան, մի՛ հարցներ. առաւօտ եկեղեցի գնացի որ աղօթք ընեմ, այն բարձր տեղը կեցող ու գեղեցիկ զգեստ հագող գըլուխը բաց մարդը՝ ձեռքը շղթայի փունջ մը կրող մէկը՝ որ իր մօտը կեցած էր, իրեն կանչեց և ականջն ի վար բան մը խօսեցաւ. ան ալ վար իջնելով մէկու մը ըսաւ. ան ալ ժողովուրդէն մէկին ը, սաւ ու ժողովուրդն ալ իրարու ականջին տակ խօսելով դէպ յիս մօտեցան։ Տեսայ որ զիս բռնելու համար է այս բոլոր դարձուածքը՝ ելայ ու փախայ։

Հայրը քմծիծաղով մը ալիքը ձեռքն առած՝

— Տղա՛ս, ատոր բարի ողջոյն կ'ըսեն. էս սպիտակ մօրուքը անգամ մը տեսած է լուսահոգի տատուդ մեռած ատենը։

## ԱՅԼ

*Տարուան ձմեռը երկար կ'ըլլայ, այնպէս, որ ձիւնն մինչև տանիքները կը բարձրանայ և ցուրտ քամին ամէն բան կ'ուռեցնէ կ'ճաթեցնէ։ Գիւղացիք ասկէ խիստ նեղուելով՝ կ'որոշեն որ ձմեռը ելլելէ ետք իրենց պարոնին քով երթան որ ժամ մ'անդին ուրիշ գիւղի մը մէջ կը բնակի և ըսեն որ ասոր փոխարէն յառաջիկային մեղմ և երկար ամառ մը տալու շնորհքն ընէ իրենց։ Կը ներկայանան պարոնին ու խնդիրնին կ'առաջարկեն. պարոնը կ'խոստանայ տալ երեք ամիս ծաղկալից և վեց ամիս ալ պտղալից ու տաք օրեր, որուն համար իրենց խորին յարգանքն ու շնորհակալիքն մատուցանելով մեկնելէ ետք՝ ճամբան իրենցմէ ամէնէ բանգէտը «ընկերներ, գիտէ՞ք պարոնին բերանը թոյլ էր. եթէ չորս ալ ուզէինք պիտի տար» կ'ըսէ։*

## ԱՅԼ

*Ասոնք գիւղին մէջ քահանայ չունենալնուն համար՝ զէթ ծննդեան և զատկի տօներուն քաղաք գալով քահանայ մը տանիլ և իրենց հոգևոր պէտքերն հոգալու պարտաւոր էին։ Տարւոյն մէկը իրենց պարոնի յատկացեալ տուրքը վճարելու դժկամակելով, նեղացուցած և բարկացուցած էին զանի, նա ալ վրէժխնդիր ըլլալու համար երբ այդ տարուան զատիկը կը մօտենայ, միջոց մը կը խորհի. այն թէ՝ գիւղացիները դեռ վաղուց չեկած՝ գայ քահանաները կերպիւք համոզէ որ իրենք գիւղացւոց հետ չեր-*

թան այլ՝ Ս. Հացը իրեն տան որ ինք տանի ու գիւղացիները հաղորդէ։ Կը խորհի և կը զարծագրէ։ Գիւղացիք որ քաղաք կ՚երթան քահանաներէն համոզուելով գիւղը կ՚երթան ու գիւղապետէն ընդունին Ս. Հացը։ Զատկի խթման օրը պարոնը հրաման կ՚ընէ գիւղացւոց որ իրիկուան մեծ ու պզտիկ եկեղեցի գիմեն ու հոն հաղորդուին։ Իսկ ինք՝ իր տունը գըտնուած մեղուայից փեթակը գաղտուկ եկեղեցի տանելով խորանին վրայ կը դնէ ու վրան պիտուական շորով մը կը ծածկէ։ Երեկոյեան երբ բոլոր գիւղացիք եկեղեցին կը լեցուին կ՚ըսէ որ ամէն մարդ մերկանայ ու սեղանին առջև մօտենայ և եկեղեցւոյ դուռը և ամէն ծակ ու ծուկ գոցեն ց՚աւարտ արարողութեան, այլ միայն աղօթեն նաև մաքաւորին։ Բոլոր ժողովուրդը ամենայն ջերմեռանդութեամբ աղօթելու ատեն փեթակին բերանը կը բանայ։ Մեղուները կ՚յարձակին և խեղճ գիւղացիներուն իւրաքանչիւրին մարմնին ամէն մէկ կողմը կծելով փեթակ կը դարձնեն։ Այս պահուն ոմանք ինքզինքնին մեղաւոր և անարժան համարելով և իրենց ձեռքն մեղուներու մէն մի կճած տեղւոյն վրայ չափ զարնելով «վա՛յ ինձ, վա՛յ ինձ, վա՛յ ինձ» պոռալնուն պէս, ոմանք ալ «օ՜յ պապուս հոգւոյն օ՜յ տատուս հոգւոյն» կ՚պոռան, բայց կիներու հարուածներուն ա՛լ դիմանալու անկարող ըլլալով հազիւ դուռը կ՚կոտրեն և մահուանէ մազապուրծ կ՚ըլլան։

# ՍՈՎՈՐԱԿԱՆ ՕՐՀՆՈՒԹԻՒՆՔ

*Ասված հանկօչտն ամուր էնի։*
*Ասվաց աիրուն օժտէ։*
*Ասված մընակ էկած կատաներէն պեհէ։*
*Ասված չատ քաշել չիտայ։*
*Ասված ձառաց օտաց չէնէ։*
*Անհատ հաց ուտէ։*
*Էրեստ խնտայ։*
*Ծըլիս ծաղկիս։*
*Էրեստ ճերմակ ըլլի։*
*Շա՛տ ապրես։*
*Կրկին տայ, կրկին ուրախացնէ։*
*Մօրուքը ճերմկի,*
*Մէկիտ հազար տայ։*
*Հիմա կսկիծ չտխնայ*
*Հող ճանկէնէ օսկի ըլլի։*
*Գէչըս ուզաղին բարի տայ։*
*Պէրխուտար ըլլի։*
*Ցաւ ջօռ չտեսնայ։*
*Զիկայ չտեսնայ։*
*Ասված արքայութան չէնէ։*
*Էտի լուսուն մահրամ չէլլայ։*
*Օրերը չատ ըլլի։*
*Տեսած աւուրը եստ չի թողու են...։*

# ՍՈՎՈՐԱԿԱՆ ԱՆԷԾՔ(*)

*Աղ ըլլի, հալի։*
*Աղջրվի։*
*Ախպրուկները վազի։*
*Աչիցը լօսը դուս ըյի (կամ հալի)։*
*Աչքը չուլլուի։*
*Բնատուղին գլօխն էլլայ։*
*Բերանը պաղպընծի։*
*Գնդէն գայ։*
*Գլխուն վերևը նստիմ։*
*Գլօխնուտէ։*
*Գրողը տանէ։*
*Դուռը կղպվի եոր հալի։*
*Ջուաղը կարճընայ։*
*Էտի առջի ուտիլ, խմիլ, էրթալ են. ըլլի։*
*Էրթալն ըլլիուք, գալը չըլլի։*
*Ը՜հ, ի՞նչ ըսիմու, ինչ ըլլի։*
*Թաթարխամի փակչի։*
*Կըյրիճ կտրտի։*
*Կուրուչուն վազէ անկաճը։*
*Հիննէն ձառքը մնայ։*
*Հոգուն տունն հանէ։*
*Ջաղկըվի։*
*Ջանը գետնէն գայ։*
*Ջառքվըները կտրտի։*

---

(*) Անէծքները սովորաբար կանայք կը գործեն։

Հացը ձի ըլլի հինքը չուն, վազէ, վազէ չհասնի։
Ճէհէննմին տակն ըլլի։
Ճէսէտ սըզըսին ըյնի։
Մանգիլը կարճընայ։
Մանուկ մանտրտի։
Մըթտիկս փակչի։
Ներսը նստի դրսին ցանկանայ։
Ջաղին չուտարին չհասնի։
Ջանկլները էլլայ։
Ջիքը չիմորքը գրվի։
Ջորս հոգուն բէճն էրթայ։
Ջըլլի չկատարի։
Ջունենա՛մ։
Պապաներ հանէ։
Պատ ոտկերը մնայ։
Պօյօքը գըտինը անցնի։
Ջրջրանքը վազէ։
Ջօւը տաքնայ։
Սատակն էրկննայ։
Սիւ հողը պատըկէ։
Սիւ ճլան վրայ նստի։
Սիւ փուշ քաշվի առաջքը։
Սիրտը սիւ էրին կօլի։
Վուրըճին քէսքին ըլլի։
Վա՞յն ըսիմ։
Տունն էվրի։
Տամլա մարազին ըյնի։
Օճախն անցնի։

# ՍՈՎՈՐԱԿԱՆ ԵՐԴՈՒՄՆԵՐ(*)

*Աստված վկայ։*
*Աստուծու լուսուն մաճրում էլլամ։*
*Աւետարան։*
*Ժամուն ճաշակը աչք բռնէ։*
*Խա՛չ։*
*Հացը բարի։*
*Հացը իս քէօրցնէ։*
*Կըյրիճութանս խէրը չի տեսնամ։*
*Մանուկ մանտրտիմ։*
*Պապուս, մօրս եւն. վայն ըսիմ։*
*Սեղանը բարի։*
*Սէ օրը վկայ։*
*Տուն չհասնիմ։*

(*) Անէծքները եզ. Ա. դէմքի փոխուելով՝ շատ անգամ երդման տեղ կը գործածուին զոր օրինակ «Քէօր ըլլի» «Քէօր ըլլիմ» «տունն էվրի» «տունս էվրի» եւն.։

# ՀԱԳՈՒՍՏ

Մելիտինէի մէջ եւրոպական զգեստ չէ այնքան ընդհանրացած, միայն պաշտօնականներն ու հարուստներն են որ կը հագնին զայն։ Հասարակութենէ արանց հագածն է երկար էնթարի (զպուն), բաճկոն (կարճ էնթարի) բաճկոնակ (ելէկ, եօլուղ). թիկնոց (միլթան, նիմթան) և ոմանք վերարկու։ Ջպունին վրայէն կը կապեն եւրոպական, պարսկական, կիւրիւնի ցփսի և տեղական քէմէր գօտի։ Ծնրակալղէններն (շապիկ, վարտիք) երկար են, որոնց պճղունքին (բաչա) ու թեզանիքները կապէ ու ճարմանդէ զուրկ են, միայն շապիկին օձիկը մէյմէկ ճարմանդ կրդանուի։ Արդի սերնդեան գլուխը բստորդի պահանջման ծոպաւոր ֆէս մը կայ միայն, իսկ չափահասք ֆէսը իր բնական ձևովը դրուիլ և հաստկեկ ծալ մ'ալ կախելէ զատ՝ ոմանք վրան եազմա, ոմանք ալ սև շղարշ (փօշու) կը կապեն։ Չափահասք ֆէսին տակէն կը դնեն ճերմակ գտակ մ'ալ։

Կանանց զգեստը, բացի շապիկէ և շապիկենէ էրիկ մարդոց հագածին յար և նման է։ Ասոնց շապիկը ընդհանրապէս կամ կարմիր և կամ կապոյտ և որոնց երկայնութիւնը մինչև իր ճղերը կ'իջնեն, իսկ շապընկերք զանազան տեսակ մանիսայէ, կերպասէ և սնդուսէ կ'ըլլան։ Կանայք իրենց հագնելու շապիկներուն գօգը (առջևը) եռանկիւն ասեղնանկար կը կ'ընեն բազմերանգ թելերով, զոր հազիւ 4—5 ամիսէն կը լրացնեն։ Կանանց համար շրջազգեստ

հագնիլն խոտելի բան մ'է տակաւին. կանայք իրենց գլուխը կը կրեն ըռկ ֆէս. ֆէսին շուրջը սև հագ-կեայ տէփէլիք բանուած արծաթեայ և ոսկեայ գմբէթաւոր ու ականակուռ թիթեղ մը կը կարեն որոց վրան ալ կը ձգեն կարապետ իւղի կամ տեղական ասլաղ (եազմա)։

Գալով տղայոց՝ ընդհանրապէս շապիկ թէ վարտիկ կապոյտ կ'ըլլան (*)։

Նախորդ տարիներուն մէջ մինչ մանիֆան մուտ գտած չէր հոս՝ զգեստները առհասարակ տեղական սև կտաւէ կը պատրաստուէին։ Սակայն քանի որ մանիֆան մուտք գտած է՝ տեղական կտաւէ զգեստը բոլորովին անարժէք բան մ'եղած է։

Հագուստներէն էնթարին ու թիկնոցը տարուան մէջ մէյ մէկ, բայց ճերմակեղէնները երեք չորսկան ձևք կը շինեն։ Այսուամենայնիւ չենք կրնար մոռնալ ըսել թէ՝ զգեստուց նորաձևութիւնը սկըսած է հոս ալ տարածուիլ կամաց կամաց և այս արդիւնք է զանազան գաւառներէ գաղթող ընտանեաց։

---

(*) Մալաթիացիք սովորաբար կապոյտ գոյնը կը սիրեն, որովհետեւ ի սկզբանց անտի թէ անկողնոց ներքինք կողմը, թէ գոգնոցները, թէ կրծկալները, ինչպէս քինք կանանց եւ տղայոց հագուստներուն մեծ մասը եւ մինչեւ իսկ տակաւին միջին եւ աղքատ դասակարգի չափահաս այր մարդոց վարտիկները կապոյտ ըլլալուն պէս՝ անկէ 20 30 տարի առաջ բոլոր հայոց գլուխի սուր եւ երկար քաղիֆ(քէչէ)ներուն վրայէն կապուած ապարօշներն (սարգ) ալ եւ ոտնամաններն ալ ընդհանրապէս կապոյտ էին։

# ԲՆԱԿԱՐԱՆՔ

*Թէև դարուս մինչև վերջին քառորդի սկիզբները շինուած տուները միայարկ և գեղջկական խրճիթի ձև ու նմանութիւնը ունէին, բայց անկից անդին շինուածներուն բոլորն ալ արդի ճաշակի համեմատ և գլխաւոր քաղաքաց շէնքերու նման բարեփոխեալ, գեղեցիկ, երկյարկ և հոյակապ են։ Տուները, ինչպէս ըսուած է, իրենց յարակից ունին պարտէզներ և են լայնագաւիթ։ Տանիքները ընդհանրապէս հողով ծածկուած են։ Գաւիթները սալայատակուած և ամէն տուն իր ճեմիչն ունենալով աղտեղութենէ և գարշահոտութենէ ազատ է։ Տան գըլխաւոր մասը կը կոչուի ձմրան տուն, ուր կը գըտնուի որմնային վառարան. ահա ա՛ս է խոհանոցն ու սեղանատունը։ Չի խոհանոց չգտնուելով երբ կերակուր եփի, անմիջապէս տախտակէ ցած ու կլոր սեղան մը առեան բերած՝ ու որոյ շուրջը հայրը ու մանչ զաւակները բոլորած՝ կ'ուտեն. ուտելէ ետք՝ եթէ որ և է սենեակ գտնուի՝ հոն կը քաշուին. եթէ ոչ սեղանը քիչ մ'անդին տանելով մայրը, աղջիկները ու հարսերը կ'սկսին ուտել։*

*Տան կահուց ու կարասեաց մեծ մասը պղինձէն է. ամէն տուն առնուազն* 100 *օխա պղնձէ աման կ'ունենայ։*

*Տուներուն մէջ սէտիր ըսուած զարդըաթոռ են. չէ այնչափ ընդհանրացած, սակայն անկողին, կապերտ, գորգ են. առատօրէն կը գտնուի ամէն տուն։*

*Անկողինները խիստ գովելի են, այնպէս որ ձեռք մ'անկողին պատրաստելու համար առնուազն տարի*

մը միջոց պէտքէ, որովհետեւ անկողնոց բոլորին ալ երեսները բոլորովին ասեղնագործեալ են եւ որոնց իւրաքանչիւրը կ'արժէ 3–500 ղրուշ։

# ԿԵՐԱԿՈՒՐ

Աստեղ բացի կանանչեղէնէ որեւէ բան (ուտելիք) օրը օրին առնելու սովորութիւն չըլլալով ամէն տուն յաշնանէ կը պատրաստէ իր տարեկան զախիրէն, զոր կը բաղկանայ իւրաքանչիւր անհատի համար 5 գրիւ ձաւար (պուլղուր), 5 գրիւ կորկոտ, գրիւ մը կանարմա (ծեծած ցորեն), 15 գրիւ ալիւրցու եւ սոյն համեմատութեամբ ոսպ, սիսեռ, լուբիա։ Ուստի թէ հաց եւ թէ կերակուր իրենք կը պատրաստեն։

Այս տեղի սովորական կերակուրներն են. փիլաւ քիւֆթէ, տափշիշ, կորկոտէ լափա, փըթ փըթ, լանգակ, թարխանա, տօլմա, սըմիտր, ծծիկ, փրչունք (փշրանք), ջրվրայ հաւկիթ, զանազան տեսակ թանապուր, եայլն։ Եւ բաց աստի իբր կերակուր կը ներկայանան պանիրն. կաւուրման (ճաճորակ) ու ամէն տեսակ խմորեղէնք ու անուշեղէնք։ Միսը տարւոյն ամէն եղանակին ալ առնելով ամէն տեսակ կերակուր կը պատրաստուի, բայց ձմրան համար ամէն տուն գէթ մէկ երկու ոչխար կամ այծ կը մորթէ։

Հարսանեաց կամ այլ կոչունքի առեն պատրաստուած կերակուրներն են. խոշոր քիւֆթէ, կապուրգա (կամ փորլիգ, բրինձով լեցուած միս), բամիա, հալվա (բրինձով լեցուն սերկեւիլ) բրինձով լահնա, բրինձէ փելաւ, սիւտլի, մէկ երկու տեսակ խմորեղէնք, պտուղք եւ յետ ամենեցուն պանիր։

# ՀԱԳՈՒՍՏ

Մելիտինէի մէջ եւրոպական զգեստ չէ այնքան ընդհանրացած, միայն պաշտօնականներն ու հարուստներն են որ կը հագնին զայն։ Հասարակութենէ առանց հագածն է երկար էնթարի (զպուն), բաճկոն (կարճ էնթարի) բաճկոնակ (ելէկ, ղօլուրղ). Թիկնոց (միլթան, նէմթան) և ոմանք վերարկու։ Զպունին վրայէն կը կապեն եւրոպական, պարսկական, կիւրքինի ցփսի և տեղական քէմէր գօտի։ Ծերմակեղէններն (շապիկ, վարտիկ) երկար են, որոնց պճղունքին (փաշա) ու Թէզանիքները կասկէ ու ճարմանդէ զար րկ են, միայն շապիկին օձիկը մէյմէկ ճարմանդ կրդանուի։ Արդի սերնդեան գլուխը ըստ արդի պահանջման ծոպաւոր ֆէս մը կայ միայն, իսկ՝ չափահասք ֆէսը իր բնական ձեւը դրուիլ և հաստկեկ ծալ մ'ալ կախելէ զատ՝ ոմանք վրան եազմա, ոմանք ալ սև չղարչ (փօշու) կը կապեն։ Չափահասք ֆէսին տակէն կը դնեն ճերմակ գտակ մ'ալ։

Կանանց զգեստ, բացի շապիկէ և շապիկենէ էրիկ մարդոց հագածին յար և նման է։ Ասոնց շապիկը ընդհանրապէս կամ կարմիր և կամ կապոյտ և որոնց երկայնութիւնը մինչև իր ճղերը կ'իջնեն, իսկ շապընկերք զանազան տեսակ մանիսայէ, կերպասէ և սնդուսէ կ'ըլլան։ Կանայք իրենց հագնելու շապիկներուն գոգը (տաջեր) եռանկիւն սեղանակար կը կ'ընեն բազմերանգ թելերով, զոր հազիւ 4—5 ամիսէն կը լրացնեն։ Կանանց համար չրջազգեստ

հագնիլն խոտելի բան մ'է տակաւին. կանայք իրենց գլուխը կը կրեն լոկ ֆէս. ֆէսին շուրջը սև հազմա և գագաթը տէփէլիք ըսուած արծաթեայ և ոսկեայ գմբէթաւոր ու ականակուռ թիթեղ մը կը կորեն որոց վրան ալ կը ձգեն կարապետ բուղի կամ տեղական տոլաղ (եազմա).

Գալով այլայոց՝ ընդհանրապէս չապիկ թէ վարտիկ կապոյտ կ'ըլլան (*).

Նախորդ տարիներուն մէջ մինչ մանիֆան մալա գտած չէր հոս՝ զպունները առհասարակ տեղական սև կտաւէ կը պատրաստուէին. Սակայն քանի որ մանիֆան մալաք գտած է՝ տեղական կտաւէ զպունը բոլորովին անարժէք բան մ'եղած է.

Հողագործներէն էնթարին ու թիկնոցը տարուան մէջ մէյ մէկ, իսկ ձերմակեղէնները երեք չորսական ձևաք կը շինեն. Այսուամենայնիւ չենք կրնար մոռնալ ըսել թէ՝ զգեստուց նորասիրութիւնը սկըսած է հոս ալ տարածուիլ կամաց կամաց և այսպեդինք է զանազան գաւառներէ գաղթող ընտանեաց.

---

(*) Մալաթիացիք սովորաբար կապոյտ գոյնը կը սիրեն, որովհետեւ ի սկզբանց անտի թէ անկողնոց ներքին կողմը, թէ գօգնոցները, թէ կրծկալները, քնքուշ կանանց եւ տղայոց հագուստներուն մեծ մասը եւ մինչեւ իսկ տակաւին միջին եւ աղքատ դասակարգի չափահաս այր մարդոց վարտիքները կապոյտ ըլլալուն պէս՝ անկէ 20 30 տարի առաջ բոլոր հայոց գլխի սեւ եւ երկար քաղթի(ֆէշէ)ներուն վրայէն կապուած ապարօշները (սարգ) ալ եւ ոտնամաններն ալ ընդհանրապէս կապոյտ էին:

# ԲՆԱԿԱՐԱՆՔ

*Թէև դարուս մինչև վերջին քառորդի սկիզբնե-րը շինուած տուները միայարկ և գեղջկական խրճի-թի ձև ու նմանութիւնը ունէին, բայց անկից աս-դին շինուածներուն բոլորն ալ արդի ճաշակի հա-մեմատ և գլխաւոր քաղաքաց շէնքերու նման բա-րեփոխեալ, գեղեցիկ, երկյարկ և հոյակապ են։ Տու-ները, ինչպէս ըսուած է, իրենց յարակից ունին պարտէզներ և են լայնագութ։ Տանիքները ընդ-հանրապէս հողով ծածկուած են։ Գաւիթները սա-լայատակուած և ամէն տուն իր ճեմիչն ունենալով աղտեղութենէ և գարշահոտութենէ ազատ է։ Տան գըլ-խաւոր մասը կը կոչուի ձմրան տուն, ուր կը գըտ-նուի օրինային վառարան. ահա ա՛ս է խոհանոցն ու սեղանատունը։ Զի խոհանոց չգտնուելով երբ կե-րակուր եփի, անմիջապէս տախտակէ ցած ու կլոր սեղան մը առեան բերած՝ ու որոյ շուրջը հայրը ու մանչ զաւակները բոլորած՝ կ'ուտեն. ուտելէ ետք՝ եթէ որ և է սենեակ գտնուի՝ հոն կը քաշուին. եթէ ոչ սեղանը քիչ մ'անդին տանելով մայրը, աղջիկ-ները ու հարսերը կ'սկսին ուտել։*

*Տան կահուց ու կարասեաց մեծ մասը պղինձէն է. ամէն տուն առնուազն 100 օխա պղնձէ ամա՛ն կ'ունենայ։*

*Տուներուն մէջ սէտիր ըսուած զարդըաթոռներ. չէ այնչափ ընդհանրացած, սակայն անկողին, կա-պերտ, գորգ են. առատօրէն կը գտնուի ամէն տուն։*

*Անկողինները խիստ գովելի են, այնպէս որ ձեռք մ'անկողին պատրաստելու համար առնուազն տարի*

մը միջոց պէտքէ, որովհետև անկողնոց բոլորին ալ երեսները բոլորովին ասեղնագործեալ են և որոնց իւրաքանչիւրը կ'արժէ 3–500 ղրուշ։

# ԿԵՐԱԿՈՒՐ

Աստեղ բացի կանանչեղէնէ որևէ բան (ուտելիք) օրը օրին առնելու սովորութիւն չըլլալով ամէն տուն յաչնանէ կը պատրաստէ իր տարեկան «պախրէջն», զոր կը բաղկանայ իւրաքանչիւր անհատի համար 5 գրիւ ձաւար (պուլղուր), 5 գրիւ կորկոտ, գրիւ մը կանարմա (ծեծած ցորեն), 15 գրիւ ալիւրցու և նոյն համեմատութեամբ սոպ, սիսեռ, լուբիա։ Ուստի թէ հաց և թէ կերակուր իրենք կը պատրաստեն։

Այս տեղի սովորական կերակուրներն են. փիլաւ, քիւֆթէ, տափչիչ, կորկոտէ լափա, փըթ փըթ, լանդակ, թարխանա, տոլմա, սըմսար, ծծիկ, փրչունք (փշրանք), ջրվրայ հաւկիթ, զանազան տեսակ թանապուր, եայլն։ Եւ բաց ատի իբր կերակուր կը ներկայանան պանիրն, կաւուրման (ճաճորակ) ու ամէն տեսակ խմորեղէնք ու անուշեղէնք։ Միսը տարւոյն ամէն եղանակին ալ առնելով ամէն տեսակ կերակուր կը պատրաստուի, բայց ձմրան համար ամէն տուն գէթ մէկ երկու ոչխար կամ այծ կը մորթէ։

Հարսանեաց կամ այլ կոչունքի ատեն պատրաստուած կերակուրներն են. խոշոր քիւֆթէ, կապուրգա (կամ փարլըջ, բրինձով լեցուած միս), բամիա, հալվա (բրինձով լեցուն սերկեւիլ) բրինձով լահնա, բրինձէ փիլաւ, սիւտլի, մէկ երկու տեսակ խմորեղէնք, պտուղք և յետ ամենեցուն պանիր։

# ԱՆՈՒՇԵՂԷՆ ՊԱՏՐԱՍՏԵԼ

*Գիտեմ, հիմա նորէն թուքերնիդ պիտի կլնէք, վասնզի որքան կերակուրներով ախորժակնիդ բացուեցաւ, ստամոքսնիդ լեցուեցաւ, բայց քիմքերնիդ չի քաղցրացաւ, ուստի մի քանի անուշեղէններ նըկարագրենք որ քաղցրանայք, որք են.*

## Ա. ԲԱՍՏԵՂ

*Թաց թութը կաթսայի մէջ քիչ մը եփելէ յետոյ՝ մասնաւոր տոպրակով մը քամելով՝ գոյացած քաղցուին խառնած՝ լինճ (չեփած խիւս) կը պատրաստեն։ Այս լինճը նորէն կը լնան կաթսային մէջ ուր արդէն կիսով չափ ալ քաղցու կը գտնուի և մինչև որ լաւ մը թանձրանայ ու եփի, մասնաւոր փայտով կամ փրփրակալով (քէվկիր) կը խառնեն, յետոյ տանեաց վրայ հանելով հոն ճերմակ կտաւներու և սաւաններու վրայ հաստարակ թղթի բարակութեամբ կը փռուին, և երեսը խաչխաչի հունտ և ծիրանի անուշ կուտ ցանելով կը թողուն որ ցամքի ու պնդնայ։ Հետևեալ օրը՝ արևուն սաստիկ տաքութեան առեն, կ'ելնեն ու բաստեղը քաշելու համար նախ կտաւին հակառակ կողմը ջրով կը թրջեն որ խիւսը կտաւէն թուլնայ և անգամ մը որ ծայրը զատուեցաւ, ահա կտաւին ամբողջութեամբը միակտուր բաստեղէ կտաւ մը հանելով ժամու մը չափ ձողերու և չուաններու վրայ կը սփռեն և յետոյ այդ խիւսէն կտաւը հաստարակ թաշկինակի մեծութեամբ կտրատելով և ներքին կողմը նշայ կամ ալիւր ցանած՝ քառակուսի ու եռանկիւն ծալլելով կը կոխեն բղուկներու և տուփերու մէջ։*

*Թասդեղին մէջ նշան ու ալիւրը երկու պատճառի համար կը ցանեն. առաջին՝ թասդեղը դեղնագոյն և գեղեցիկ կ'երեւայ, և երկրորդ՝ իրարու չի փակչիր։ Թասդեղը որքան բարակ ըլլայ, այնքան յարգի է։ Թասդեղը բնականաբար ձմեռը չորնալ և պնդնալով՝ երբ բերանդ տանիս՝ իսկոյն կը քրքրի, ուստի նորէն կ'ըսեմ, թող բերաննիդ ջուր չկտրի։*

## Բ. ՀԱՏԱՊԼԻԴ (ՔԷՍՄԷՃԷ)

*Ըստ վերոգրեալ մալէզը պատրաստելէ յետոյ պղնձեղէն ամաններու մէջ լեցնելով՝ կը թողուն որ պաղի ու թանձրանայ, և հետեւեալ առաւօտուն դեռ արեւը չծագած տանեաց վրայ հանելով՝ ամաններուն մէջ դանակով մանր այլ երկար քառակուսի կը կտրեն։ Եւ մաքուր ամաններու վրայ կը փըռեն ալիւրը փաթաթելով և այդպէս մէկ քանի օր արեւուն տակ մնալէ ետք՝ երբ տեսնուի թէ աղէկ մը ցամքեր է, ժողուելով կը լեցնեն սնտուկներու մէջ։*

*Այս պատրաստ հատապլիդը աւելի ձմեռը իբր լուկ միրգ և թէ հուկիթով տապկուելով՝ անհամեմատ ախորժակով կ'ուտուի։*

*Հատապլիդի խիւսը մինակ ալիւրով կը շինուի. զի նշայի մալէզը եթէ ամանի մէջ մնայ, ջուր կտըրելով բանի չի գար։*

## Գ. ՌԷՉԷԼ (ԿՏԱՊ)

*Ռէչէլը կը պատրաստուի մի քանի տեսակ սալորէ, ծիրանէ, չումէ, խաղողէ, գդումէ, եւայլն։*

*Ծիրանէ ու սալորէ ռէչէլ.— Թարմ պտղոց կու-*

տը (առանց կճեպը մնասելու) մախաթով հանելէ ետ-
քը՝ արդէն եփուած քաղցուին մէջ լեցնելով կը
փռուի արեւուն տակ եւ երբ քաղցուն րուբանայ
(թանձրանայ) կը լեցուի բղուկներու մէջ։

Զումի եւ խաղողի ըէչէլներն ալ թէեւ ըստ վե-
րոգրեալին կը պատրաստուին, բայց ասոնց կուտե-
րը չհանուելով՝ երբեմն ալ քաղցուին հետ կ'եփի։

Դդումէ ըէչէլ.— Ասիկա շինելու համար նախ
դդումը ջրդմայ (մանրուք) ընելէ յետոյ արեւուն
տակ չորցնելով եւ ապա ամաններու մէջ բաժնած՝
քաղցուն կամ րուբը վրան կը լեցունեն եւ նոյնպէս
քանի մը օր արեւուն տակ թողլով՝ թանձրանալէ
ետք մէջը վարդի ջուր եւ անուշ կուտ խառնելով կը
լեցնեն բղուկներու մէջ։

Ասոնց պէս անոյշ ծիրանը ու սալորը քաղցուին
հետ եփել ու թանձրացնելով՝ բէրվէրաէ ըսուած
մրգօղին ու թթու սալորէն նաւատ (թթու) կը
պատրաստեն։

Բէչէլը՝ ցամաք եւ բէրվէրաէն ջրով տրորել ու
հատելով կ'ուտուի, իսկ նաւատը կերակուրի կը
գործածուի։

Բաց աստի մալաթիացի կանայք տարբեներով ան-
մեսս կը պահեն պանիր եւ այլ աղած նպարներ։

Բայց պէտք չէ զարմանալ, եթէ ըսեմ, այս
մելիտինեցի կանանց պատրաստած անուշեղէնները
եւ աղածները կը գերազանցէ մինչեւ իսկ պոլսեցի-
ներու եւ այլ քաղաքացիներունը, որովհետեւ աւելի
անուշեղէն պատրաստելը առանձնաշնորհում մ'է
կարծես ասոնց համար։

Զմոռնանք նաեւ ըսել թէ հայ կանանց ասեղնա-

*գործութիւնն ալ գովելի է, և ինչպէս վերն ալ ըսինք՝ անկողնի երես, պաստառ և այլն, կը նկարեն սքանչելի կերպիւ, որոնք Եւրոպիոյ և Ամերիկայի մէջ իսկ յարգ գտած են։*

# ՆԻՒԹԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ

*Ինչպէս վերը արհեստի վրայ խօսած ատեններս ըսինք թէ՝ Թուրքերը իրենց անշարժ կալուածոց և հայք արհեստականութեամբ կ'ապրին մեծաւ մասամբ բայց ընդհանրապէս նշանաւոր և յիշուելու արժանի հարուստներ չկան ի սոյն քաղաք, եղածներուն ալ ամենաբարձր կարողութիւնը հազիւ մէկ երկու հազար ոսկւոյ կը հասնի։*

*Դարուս վերջին մասի սկիզբէն ի վեր նախ չերամաբուծութիւնը քանի մը տարի յաջողակ երթալով բաւական օգտած է նիւթապէս, բայց վերջերը հունտերը կեղծուելով փճացած է։*

*Շերամէն անմիջապէս ետքը մշակութեան ձեռնարկելով 10—15 տարւոյ չափ թէ հողատիրաց և թէ գործաւորաց և արհեստաւորաց շահն ու վաստակը բաւականին բարւոքուած է. սակայն վերջերը՝ երբ իբր անհաշտ թշնամի սորա, Ալիզարը յերևան ելլելով՝ բոլորովին փճացուցած է։*

*Եւ հուսկ յետոյ՝ ափիոնի մշակութեան խիստ զարկ ընծայելով այնպէս փայթեռանդն աշխատած են որ ափ մը պարտէզ ունեցողն անգամ ծառերը քաղելով արտի վերածած և արհեստն ու առևտուրը թողլով ասոր հետևած է։*

*Ափիոնի մշակութիւնը թէև ամենաթանկ եղած ժամանակներու մէջ ըրած և ամէն դասակարգի ժո-*

ղովուրդ բաւական օգտուեցաւ, բայց վերջապէս չը գիտնալով այսպիսի պատեհ առիթէ, անմիջապէս կորսնցուցին իրենց այդ առատ վաստակները, որովհետեւ կարծելով թէ սոյն (ափիոնի) մշակութիւնը տեւական և իրենց շահերը անսպառ կ'ըլլան՝ տուն չունեցողը տուն մ'առաւ, ունեցողը հատ մ'ալ աւելցունելով՝ հին չէնքը քակեց նոր և ընդարձակ ու փառաւորը վերականգնեց. այն կահն ու կարասին որ իրեն պէտք չէր՝ առաւ. պարսիկ ուխտաւորներուն հոս հանդիպած ատեն 50—60 ղրուշնոցին տեղ 4—500 ղրուշնոց ցփսի առնելով կլորիկ ոսկինները անոնց քսակին մէջ լեցուց։ Իսկ երբ ափիոնի գինը անակնկալ անկում մ'ունեցաւ, այն ատեն զգաց թէ խնայողութիւն և տնտեսագիտութիւն պէտք է եղեր. սակայն ի զո՞ւր, նետը աղեղէն թռաւ. ուստի սկսաւ այն ափիոն բերող արտն, վերջն առած տունն ու կարասիին հետ հին կարասին ալ ծախել ու դարձեալ հին երջանկութեան չժամանել։

Սակայն այսու ամենայնիւ, սոյն նիւթական անձուկ վիճակին մէջ իսկ մխիթարական բան մ'ունի մալաթիացին, որ գովանաց արժանի է. այն է թէ մուրացիկ չունին, և այս ոչ միայն այսօր, այլ ի սկզբանէ անտի։ Ինչպէս ասէ կերպիւ՝ եթէ մէկու մը թշուառ և աղքատ ըլլալն իմացուի, իսկոյն նոյն թաղի կամ դրացեաց մէջ պարէնի ու դրամի հանգանակութիւն մ'ընելով ըստ կարելւոյն կ'օգնեն ու կ'ամոքեն նորա թշուառութիւնը, և տեղի չեն տար որ նա իր քաղաքին մէջ կամ շրջակայ քաղաքներն դեգերի դռնէ դուռ մուրալով։ Բայց և այնպէս շրջակայ քաղաքներէն վկայակիր թէ առանց վկայականի ու իրենց գիտող աղքատները կը գոհացնեն իրենց առատ նուէրներով։ Ասկից կը հետեւցնենք թէ շատ

ալ օտարասէր ու հիւրասէր են։

Սա կէտն ալ ըսել չմոռնանք թէ աղքատներն դուրս չելլելնուն հետ մէկտեղ՝ առեւտուրի համար գէթ թող ըլլայ, պանդուխտան ալ չեն սիրեր, մինչդեռ ուրիշ քաղաքներէ, աւելի Արաբկիրէն, Սեբաստիայէն, Կեսարիայէն, Ակնէն, Կիւրինէն են. հոս կը գաղթեն ու բանուկ առուտուր կ'ընեն, իսկ իրենք հակառակ այն առածին թէ «նապաստակը բնիկը կ'որսայ», իրենց շահու աղբիւրները ուրիշին յանձնելով ինչպէս ըսինք՝ անտարբեր կը կենայ։

Ասկից 10—20 տարի առաջ եթէ մէկը Պոլիս երթալով վերադառնար, մատնանիշ կ'ընէին զայն թէ Պոլիսը տեսեր է. այնպէս որ հազուադիւտ էր պանդուխտը։ Սակայն նոր սերունդը աւելի վերջերս ըսկըսած է տէրութեան զանազան երկիրներն եւ թէ Ամերիկա երթալ։

# ԱՐԿԱԾՔ ԵՒ ՊԱՏԱՀԱՐՔ

# ՀՐԴԵՀ, ՍՈՎ ԵՒ ԵՐԿՐԱՇԱՐԺ

*Երբ Մալաթիայ անկման վրայ կը խօսինք՝ չենք կրնար պատահարներն զանց առնել որք մեծ բաժին ունին առ այն և վերջին հարուածը նոքա տուած են յաջորդաբար, որք են։*

*Ա. ՀՐԴԵՀ.*— 1889 *Նոյեմբեր* 8, *Ձորեքշաբթի ցերեկուան ժամը* 7*ին՝ Իփլիկ Պազարը բռնած խանութներէ միայն բամպակը՝ խանութպանին անզգուշութեամբ նետած սիկառի ծայրէն կրակ առնելով իսկոյն կը բռնկի ու կը ճարակի յիշեալ շուկան։ Այստեղի խանութները թէև ազիւսաշէն և տանիքները հողով ծածկուած ըլլալուն շուտ մը միւս շուկաները չի բռնկիր ալ նէ՝ ընդհակառակը այդ միջոցին արևմտեան սաստիկ հով մը փչել, ջրհան գործիք չգտնուիլ, ժողովրդեան մինչև այդ ատեն այդպիսի հրդեհ մը չի տեսնել ու հրդեհի ատեն ընելիք գործառնութենէ բոլորովին անտեղեակ ըլլալ, և ոմանք իրենց ապրանքը ազատելու և ոմանց ալ առիթէն օգուտ քաղելու մտօք կողոպուտի ետևէ ըլլալնուն համար, բոցը մի քանի բերաններէ կը շրջապատէ շուկայի* 3/4 *մասը և* 2—3 *ժամուան մէջ այրուցուեր կ՚ընէ ու աճիւն կը դարձնէ, յորում կը գտնուէր յայնժամ* 1800 *խանութ,* 3 *մեծ մզկիթ,* 2 *բաղնիք,* 5 *պանդոկ,* 10*ի մօտ սրճարան, ևայլն։*

*Հրդեհէն քանի մը օր յետոյ կառավարութիւնը երկրաչափ մը բերել կուտայ և այս վերջինը հրդե-*

նի վայրը չափելով՝ կ'աւելցնէ կրպակներու քանա-
կութիւնը, կը հարթէ, կ'ընդլայնէ. կը փոխէ տա-
ջի դիրքը և իւրաքանչիւր կալուածատիրոջ բաժինն
ու սահմանը ցոյց կուտայ. ուստի անյապաղ շինու-
թեան ձեռնարկելով 5–6 ամսուան մէջ կը շինեն
շուկան. շուկայ մ'որ իր մեծութեամբ և փառաւո-
րութեամբ համապատասխան է մեծ երկիրներու շու-
կային։

Աւա՜ղ, սակայն որ այդ շուկան գէթ մէկ տարի
չվայելելու դժբախտութեան կ'ենթարկեն զուգադէպ
արկածով մը. այսինքն 1890 Հոկտ. 24 ի գիշերուան
ժամը 2 ին միջոցները Համիկօղլու պանդոկին կողմի
խանութներուն մէկէն կրակ առնելով երկրորդ և
քան զառաջինն բոցողելու հրդեհ մը ևս կը ծագի։
Մինչև որ սոյն չարակսկիծ լուրը քաղաքին մէջ տա-
րածուելով՝ ժողովուրդը կը խուճապէ ամբողջ շու-
կան (հին այրած շուկան) նորէն և անմիջական կեր-
պով հրոյ ճարակ կ'ըլլայ. վասնզի շուկան առաջին
հրդեհէն ետք բոլորովին փայտաշէն ըլլալուն՝ բոցը
օձանման սողսկելով շուտ մը կը բռնկէ ու ապրանք-
ներն իսկ ազատելու միջոց չիտար։

Մալաթիոյ վերջին տարիներու արկածից սկիզբն
եղող սոյն հրդեհներէն թէև անձի կորուստ չկայ բայց
նիւթական վնասը մէկ երկու հազար ոսկին կ'անցնի։

## ՄԵԾ ԵՒ ԱՂԵՏԱԼԻ ԵՐԿՐԱՇԱՐԺԸ

Հրդեհներուն պատճառած կորուստը 1/10 չափ
չդարմանուած՝ մինչ մինչ ամէն ոք դէթ մէյ մէկ
խանութ շինելու մտահոգութեան մէջ կը գտնուէր անա
քան զայնս մեծ և աղետալի արկած մ'ալ, այսինքն
երկրաշարժը վրայ կը հասնի անակնկալի և սաս-

տիկ դղրդմամբ, որուն նմանը տեսնուած չէ։

Մալաթիոյ այս մեծ երկրաշարժը կը սկսի 1893 փետրուար 28, Եչ. ցերեկուան ժամը 3 ին։ Այդ առաջին ցնցումէն՝ որ մինչև յաջորդ (փետրուար 19) գիշերուան ժամը եօթն՝ 10—20 անգամ տեղի կ'ունենայ՝ բացի երկու քարէ աշտարակներ (մինարէ) գագաթնաքարն ու չէրիֆէն խախտեցնելէ և մի քանի ծխնելույզներ փլցնելէ ուրիշ կորուստ չի պատճառեր։ Իսկ երբ ժամը 7 1/2ն կ'ըլլայ, ամէն ոք որ ցերեկուն անվնաս ըլլալով՝ անհոգաբար կը ննջէ ի խոր քուն, սարսափահար կ'արթննայ, զի այս անգամ այնպիսի ուժգին ու տատանուտ ցնցում մը տեղի կ'ունենայ որ ամբողջ քաղաքը իր շրջականերովը՝ բնութեան օրօրոցին մէջ իբր մանուկ կ'օրօրուի, և դեռ շատերը չարթնցած ու անկողինէն չցատկած՝ պատերը կը ճեղքուին սիւները կը զառուին և տուները փլելով՝ ամբողջ ընտանեօք փլատակաց տակ կը մնան։ Անոնք որ այդ վայրկեանին կը յաջողին ինքզինքնին դուրս նետելով ազատիլ՝ կը լսեն մէկ կողմէ շէնքերու անհագնադորդ ճարճատմամբ կործանիլը, ծնողաց որդեգորով լալանքը, մանկանց աղօրմելի ճիչն ու աղաղակը և փլատակաց տակէն եկած խոր ու եղկելի ձայներ, որոց հետ խառնուած է զանազան թռչնոց ճռուողիւնն ու շանց հաջիւնն ու ոռնոցը որք բնազդմամբ մարդկանց կը ցուցնեին կարծես։ Սակայն գիշեր է ո՞վ է օգնութեան կանչողը և ո՞վ է օգնողը, որովհետև չի գիտցուիր ձայնէն ուստի և որ փլատակաց տակէն գալը. որո՞ւն տունն է փլեր ու որո՞նք են մեռեր։ Միայն անոնք որ իրենց մօտերը այդ տեսակ ձայն մը կը լսեն, կը փութան օգնութեան, այն ալ շատ ուշ, մեռնողը արդէն մեռեր է։

Երբ կը լուսնայ, կը սկսին մարդիկ շրջագայիլ և այցելել իրենց ազգականաց եւ. ի տուներ, տեսնել թէ ինչ վնաս եղած է։ Ահա այս շրջագայութեան ատեն է որ կը տեսնուին մէն մի քայլափոխի հողակոյտերու վրայ մեռելակայտեր ալ, որոց մօտ կը հեծեն վիրաւորք և մահամերձք միայն ոտքը ու թեւը ճզմուած, միւսին դէմքն ու գլուխը արիւնլուայ ասնցեայ մանուկը օրօրանին և խանձարուրին մէջ տափակցած՝ մէկ մօրը ստինքը իւր բերանը շնչասպառ եղած և մայրն ալ վրան կքած ու այնպէս մեռած. հայրեր իրենց զաւակունք կամ ընտանեաց ուրիշ մէկ անդամը ազատելու յուսով գեռ չգրկած կամ թեւէն բռնած՝ անկողնոյն վրայ մնացած։ Նորապսակ ամոլներ սիրային քաղցրիկ քունով գիրկընդխառն մշտնջենապէս ննջած, իսկ անոնք որ ողջ մնացած են անգամ մը մեռելներէն միայն կը փարին հեգ մը միւսին, դարձեալ մեռելներուն և հուսկ յետոյ՝ «գիս ալ, ձեր հետ տարէք» ըսելով նուաղելով կ'իյնան հոն։

Այդ օր մեռեալները թաղելու համար՝ եկեղեցական օրհնութեանց և զանգակի ձայներ չէին լսուեր ու դագաղք չէին բռներ այլ՝ երկու ձողի վրայ դիակ մը դրուած՝ պատկառակ պատկառակի, դագաղ դագաղի և մեռելակառք կը հանէին իրարու։ Հարկ չէ ըսել թէ այն ննջեցեալներու կարուանին յուղարկաւորաց ողբին, կոծին ու լացին սիրտ կը դիմանա՞ր որդեօք, քանզի քաղաքին թէև ամբողջ թաղերու աւելի հայոց խարազա ըսուած կողմն մինչև տապաղխանէ մահալէսի ամբողջ տները կործանուել է զատ, որոց իւրաքանչիւրէն երկու, երեք, չորս և մինչև եօթն դիակ ելած և եղած է տուն որ գէթ լացող մ'իսկ չէ մնացած։

Տեսնելով որ մեռելոց իւրաքանչիւրին համար է առանձին փոս բանալ չըլլար, ուստի մէն մի ընտանիքի համար փոս մը միայն բանալով՝ իրենց լաթերովը և անկողիններովը մէկտեղ կը թաղեն։

Ցորէ անտի Մելիտինեցիք բոլոր տարի մը պարտէզներու մէջ վրան զարնելով՝ տակը կը բնակին, տակալով ձեանց և անձրևաց տեղատարափին, վասնզի այդ տարին թէև ոչ այնքան ուժգին, բայց զգալի կերպով շարունակ ցնցած է։

Սոյն ծանօթ երկրաշարժէն ոչ նուազ վնասուած են Մալաթիոյ միւս (Հիւսնիմանսուր, Պեհեսնի, Քեախթա և Ադճատաղ) գաւառներն ալ։

*
* *

Ահա 134 տարի առաջ Մելիտինէի մէջ նոյնպիսի աղետալի երկրաշարժ մ'ալ պատահած ըլլալն որչափ կ'աւանդուէր, բայց աւելի համոզուած ըլլալու համար հետևեալ արձանագրութիւնն ալ մէջ կը բերենք։

«ՌՄԸ թուին հայոց Յունվար ամսոյ ԺԲ.
«եղեւ շարժումն մեծ և ահագին, յաւուրն Ուր-
«բաթի մինչև ԽԹ օր չի դադրեցաւ և յետ-
«դարձեալ յաւուր Ուրբաթի Գ. ժամու եղեւ
«շարժ մեծ սաստիկ յոյժ սաղ տուն մի չի մը-
«նաց. բազում մարդիկ մեռան և յետոյ ջատ-
«րով գերեզմանին առաջքը բնակեցան. և յետ
«այնորիկ Մարտ ԺԱ.ին էՃ. տարուան ուլու
«ճամին քակուեցաւ, մինէրէներուն չէրէ ֆէ-
«նէրն պէտէստէնին Գ. կողմը փլաւ. հայոց ոս-
«կերչաց ԺԸ. հոգի մեռան. Մարտ Ա.ին Ա-

պղրղէ յոյնեցաք որ և Տէր Աստուած հեռո՛ւ ա-
րասցէ այսպիսի շարժումէ։»

1893 տարւոյ երկրաշարժ տեղի ունեցած սահմանագծին մէջ՝ 700 տարի առաջ սաստիկ գետնաշարժ մը ևս տեղի ունենալով՝ հարիւրաւոր անձանց կորուստ և հազարաւոր բնակարանաց կործանում պատճառելը կը նկարագրէ Չամչեան։

## ԳՕԼԵՐԱ (ՄԱՂՔԱԽՏ ԿԱՄ ՀՆՏԱԽՏ)

Կարծես աղէտներն ալ բանական են եղած, և իբր խորհրդակիցք մի միաբան, կանոնաւորապէս կը յաջորդեն իրարու, վասնզի երկրաշարժէն ալ հազիւ հազ մազապուրծ եղած Մալաթիա՝ կ'ենթարկի քան զայն ահարկու աղէտի մը ևս այն է՝ Գօլէրայի։

Տեղական աւանդ առած մ'է դարձած սա աւանդութիւնը թէ՝ «Մալաթիոյ Գօլէրան Սեբաստիոյ կողմէն կու գայ, իսկ սովը Արաբիայէն կուգայ»։ Ուստի երբ 1894 ին Սեբաստիոյ մէջ ծագում կ'առնէ գօլերան՝ Մալաթիացիք դողը կ'առնեն։ Սակայն ի՞նչ օգուտ, միթէ զգուշութիւնը բան չէ՞. ահա նոյն (1894) տարւոյ Յունիսի սկիզբները մուտ կը գործէ այդ հիւանդութիւնն ալ։ Խուճապ կը տարածի և կը սկսի նախճիրներ գործել։

Քաղաքապետութիւնը (պէլէտիէ) առ այս ըլլալիք մէն մի զգուշութիւն և գործառնութիւն անթերի կը կատարէ։ Հասարակութենէ ալ քիչ թէ շատ կարգադրութեան տէր եղող և քիչ թէ շատ բանգէտ մարդ կ'սկսի հին ու նոր գրքերն ու լրագրերը թղթատելով՝ Գօլերայի վրայ գրուած հրահանգ կամ յօդուած որոնել և դատածներու բոլորին ալ տրամա-

*դպրութեան հետեւիլ, զանազան տեսակ դեղեր առնուլ ու պատրաստել, կրախառն արջասպի (զաճ եաղը) ջրով տուները, փողոցները, ճեմիշները ներքուստ և արտաքուստ հականեխել և Եգիպտոսի մէջ իսրա-յէլացւոց կոտորիչ հրեշտակի սպառնալիքէն ազա-տելով յուսով զառնուկի արիւնէն քսուածին նման դրանց փեղկերուն՝ սեմերուն ու բարաւորներուն վը-րայ քսել ու սրսկել, ամէն դուրս չելլել, վարակ-եալի կամ մեռելի չմօտենալ են. են.. Սակայն Գօ-լերայի չարաճճի միքրօպները լեգէօնը դարձեալ զատոնք առ ոչինչ գրելով՝ յանդգնաբար ամէն ծա-կուծուկէ, մանաւանդ վախցողներուն, մանաւանդ աղտեղիներու տները կը մտնեն և մէկ կամ երկու հոգի առնելէ ետքը կ՚ելլեն։*

*Գօլերային դիմադրելու համար ռամիկ ու աղ-քատ դասակարգին ձեռքը մէջքը կը մնայ, կը չո-ւարի, չգիտեր ինչ ընելիքը։ Թէ այս և թէ բազում ուրիշ դասակարգէ կը սկսին ջերմեռանդ աղօթքներ մատուցանել Աստուծոյ. վանքաց կանուխ մութն ու լուսուն (վաղ քան ընդ առաւօտս) ցերեկը ու գիշե-րը արտասուալից աղօք, հարսն ու կեսուրը՝ հայրն ու տղան, մայրն ու աղջիկը և մանուկն ու չափա-հասը առ հասարակ եկեղեցի դիմել, լուսահոգին մոմ խունկ և այլ նուէրներ տալ։ Ամէն թաղի բարե-պաշտ ժողովուրդէն մատաղին նախապատրաստու-թեան համեմատ հանգանակութիւն ընելով 100ի մօտ խոյեր կը գնեն և եկեղեցեաց առջև ու թաղերու մէջ որոշեալ տեղ մը մորթելով՝ կը բաշխեն ժողովրդ-եան և մասնաւոր բաժիններ կը ղրկեն տնանկ աղ-քատաց առանց ազգի ու կրօնքի խտրութեան բոլոր կարօտելոց դոյլերով ակաթաններով։ Ազգայինք կը սկսին նաև կրօնական հսկումներ ընել, խաչահան-*

դիա կատարել և Ս. Պատարագ մատուցանել։

Մեռելները ըստ սովորականին եկեղեցի չեն մըտ-ցըներ և, առ յերկիւղի նոցա յուղարկաւորութեան շատ մարդ չգտնուելով՝ միայն երկու երեք հոգիով կը տանին ու կը թաղեն։ Սակայն հայոց համար ըն-տելով օրական 20—25 մեռնողներ կ'ըլլան և այդ մեռնողներուն 3/4 ը բնական՝ թէ դիպական, չենք գիտեր, գիներն են եղած։ Սոյն գօլերային տեւողու-թիւնը եղած է ամբողջ 4 ամիս և տարած զոհերը 3—4000։

Ասոնք միայն բնական չեն եղած սոյն արկա-ծալից ժողովրդեան մահացութեան. կենաց և մա-հու խնդրին հետ հացի և ապրուստի խնդիրն ալ խիստ ցաւալի եղած է, որովհետև մինչև այսօր ալ աղետից հետ զուգընթաց եկած է առևտրաց անկումը և սղութիւնն ալ։

Մալաթիոյ ժողովուրդը՝ բաղդատմամբ իր երկրի մշակութեան՝ որ թէ հողը քիչ և թէ անտեղեակ եր-կրագործական գիտելեաց ու պահանջմանց, խիստ շատ է. ուստի արմտիք առատութեան տարիները միայն հազիւ հազ կը բաւեն տեղւոյն ժողովրդեան իսկ նուազութեան տարիները շրջակայ քաղաքներէն Հիւսնիմանսուր, Ուրֆա և Էլպիստան կը յագեցը-նեն զինքը, որուն համար եթէ առատութիւն ըլլայ յայս քաղաք երկու, իսկ նուազութիւնը 5—6 տարի կը տևէ։ Սղութիւնը աւելի տիրապետող է սոյն գօ-լերայի ժամանակ, որ մէկ կողմէն գաւառակին ա-մէն կողէ քարանթինա լարել ու շղթայի տակ առ-նելով՝ ոչ թէ միայն արմտիք՝ այլ ամէն պիտոյք չի ներմուծուիր. միւս կողմէն՝ Տերսիմի, Կամախի Չարսանճագի և Չմշկածագի մէջ միևնոյն տարին տևող սովի մը պատճառաւ այդ կողմերէն յոգնա-

խուռն ժողովուրդ գալով՝ իր օրապահիկն ալ կ'առնէ ու կը տանի և որով ալ ուխտի կը մատնուի անօթութեան և թշուառութեան անողոք ճիրաններուն, և հուսկ ամենայ մխիթայնի իր նիւթական կորուստը, այսինքն հրդեհէն ու երկրաշարժէն այրած ու կործանած շէնքերը շինել և վերստանալու համար 20-25 տարիներու կը կարօտի։

## ՀԻՆ ԳՕԼԵՐԱՆԵՐԸ

Դարերու մէջ պատահած են երեք գօլերայ ալ՝ Ա-ը 1834 ին, Բ ը 1867 ին և Գ. ը 1859 ին։ Ժողովուրդը յայնժամ գօլերայի ճիշդ անունը չգիտնալով առաջնոյն Եանր Գորա, Բ. ին՝ Վրիկ և Գ. ին Զարըգ Զգարտմոզ անունները տուած է, որոց վերջի երկուքին վրայ ընդարձակ տեղեկութիւն չտանելով՝ միայն առաջնոյն մասին գրուած հետևեալ ոտանաւոր արձանագրութիւնը մէջ բերուած է։

Ի ՌՄՁԱ-ԻՆ ԵՂԵԱԼ ԱՆՀԱՄԲՈՅՐ
ՎԻՃՏՔ ՎԻՊԱՍԱՆԿ ՈՏԱՆԱՒՈՐՈՔ

Ի սոյն հայոց թուականին
Եղեն փիշտք մեծ անտանելի,
Տիրեաց ժանտախտ անբուժելի
Յաւուրս հնձոյն ցորենի.
Վիրաւորեալքն թաւալէին
Ի մի ժամն վճարէին.
Քաջք և արիք մեռանէին.
Յոր աւուր սովն սաստկանայր,
Յոյն բազմաց նուազանայր,
Սաստիկ ձմեռն վաղ զօրանայր,
Աշխարհ ընաւ ի սուգ դնայր։

*Գոգցես և աչք ի լաց էին,*
*Սուգ, տրտմութիւն զգեցել էին,*
*Չի մի բեռ փայտ թէ գնէին,*
*Չերիս աւուրս սպառէին,*
*Եթէ գիւրաւ վաճառէին,*
*Հնգետասան (*) էր գին նորին։*
*Ազգ ամենայն տուայտէին,*
*Ազաւելով յոյժ սգային*
*Որ և մեծն է պատ՚ժկնին,*
*Եհաս առ մեզ յայսմ ամին,*
*Ցամաքեցաւ ակունք ջրոյն,*
*Սաղարթաթափ ծառք լինէին*
*Ս. և անսուրբ չորքոտանիք,*
*Սովու մեռան բազմադիմիք,*
*Ոչ ունելով տիրանց կարիք*
*Տալն զկերն օրն միանգամիկ։*
*Յորդն ի սպառ նուաղեցաւ,*
*Ունողին սիրտ յոյժ քարացաւ,*
*Թիւ երեսնից դահեկանաւ*
*Միոյ բեռին տալ ոչ տեսաւ,*
*Անարգ յարդն թէ յարգեցաւ,*

---

(*) Թէեւ այն ատեն կառավարութենէ չկայ եղեր ո՛եւէ արգելք, բայց գիւղացիները համաճարակ ախտէն սաստիկ վախնալնուն համար իրենց քաղաք չգալով հանդերձ՝ զգուշացած են ո՛չ վառելանիւթ, ո՛չ արմտիք եւն. չտալ եւ չհիւրընկալել իրենց դիմող քաղաքացիք. որով առաջ 2 ղրշ.ի ծախուած մէկ բեռ փայտը 15, բեռ մը յարդը 30 եւ գրիւ մը ցորենը 30—40 դահեկանի բարձրացած էր մինչեւ ժանտախտի վերջանալը։

*Զյորենուոյն ապարանեալ,*
*Լալով դամք շեղ պտոկոն տալ*
*Զայս դժնդակ օրս տեսեալ,*
*Մեր ոչ բնաւ էր սա եղեալ,*
*Զի սով, երաշտ չրջապատեալ*
*Մահ տարաժամ ընդ մեզ բնակեալ։*
*Զայս ամենայն մեր մոռացեալ*
*Վասն հարկին պահանջեցեալ։*

# ԲԱԶՄԸՆՏԱՆԻՔ ԳԵՐԴԱՍՏԱՆՔ

*Մալաթիոյ հայոց մէջ թէև ծանօթ գերդաստանք շատ կան, սակայն իւրաքանչիւրն մի առ մի գրելն աւելորդ սեպելով՝ ի միջի այլոց հետևեալները գրած ենք, որոնք* 10 *էն մինչև* 20— 30 *տարեկան կը համարուին։ Ազատեանք, Ասլանեանք, Արփակեանք, Բաղարեանք, Տ. Պողոսարեանք կամ Թէրզի Մանուկեանք, Թարխանեանք, Թէրզի Եողուպեանք, Թիւթէլեանք, Թիւթիւնճեանք, Ժարժաթեանք, Կարօղլանեանք, Կէզիւրեանք, Մարգարեանք, Նաւընեանք, Պէննէեանք, Սիմօնեանք ևն. ևն.։*

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՄԻԽՍ ԳԱՒԱՌԱԿԱՑ ԿԱՄ ՎԻՃԱԿԱՑՆ ՄԱԼԱԹԻՈՅ

## Ա.

## ՔԵԱԽԹԱ (ԳԱՂԹԱ-ԿԱԽՏԱՅ)

*Ասիկա Մալաթիոյ գաւառակաց մէջ ամենէն ընդարձակ ու ամենէն աւելի նշանակութեան արժանի եղողն է։*

*Քեախթայի կեդրոնն՝ Մալաթիայէն* 18 *և Հիւսնի Մանսուրէն* 8 *ժամ հեռաւորութեան վրայ կը գըտնուի, ուր կառուցեալ է կառավարութեան պաշտօնատունն հանդերձ հեռագրատամբ։ Մէկ մզկիթ և մէկ թուրք վարժարան, մի քանի խանութ կայ նաև հին եկեղեցի մը հայոց սեփական և Ս. Թորոս անուամբ, այն եկեղեցի ի չգոյէ բազմաթիւ ժողովրդեան, փակեալ է այժմ։ Հոս կայ բացի կառավարական պաշտօնեաներէ* 10—15 *տուն թուրք և* 5—6 *տուն հայ բընակիչ։*

*Կեդրոնին հարաւակողմէն, լերան դրութեանը յարմարցուած և մինչև եօթն յարկեան բարձրութեամբ վերջացած՝ ամրակառոյց և անառիկ բերդ մը*

կայ, որուն մաս մը յարկերը ու պատերը դարերու քաղմահոլով ընթացքին կործանուած են բայց կանգուն եւ անվնաս մասերը ի յիշատակ մարդկային ճարտարարուեստ ձեռաց մեծապէս կը հիացնեն այցելուն։ Աստ ամենէն վերին սարայարդին վրան 20—30 սանդուխներ ունենալէ զատ՝ 2—300 մեթր խորութեամբ իր տակէն անցնող գետակէն վեր ջուր հանելու համար՝ քարափոր սանդուխներով և նեղ լուսանցքով ջրուղին ալ իր հնաքրքրական կողմը ունի։

Քեախտայի կեդրոնէն դէպի արեւմուտք մէկ ժամ դուրսը հոսող համանուն գետակի վրայ շինուած Ճանտէրէ Քէօփրիւսի անուն հոյակապ կամուրջն ալ խիստ զարմանալի է, որովհետեւ մարդկային ձեռաց սոյն ճարտարարուեստի գործը՝ այդ կարկաջասահ և յորդառատ գետակին ուժգին բախմանց երկար դարեր դիմանալով՝ գոնէ որ եւէ տեղէն քար մ'անգամ չէ խախտած։ Սոյն կամուրջին վրայ իւրաքանչիւր 3—4 մեթր երկայնութեամբ և 1/2 մեթր լայնութեամբ պատուական քարերէ շինուած պատի մը երկու կողմը 5—ական մեթր բարձրութեամբ և 1/2 մեթր շրջագծով կանգնուած երկու քարէ սիւներու թէ բոլորտիք և թէ գագաթը յունական խաչոր տառերով դիւրընթեռնելի արձանքանդակ մը կայ.

Սոյնպէս կեդրոնէն երկու ժամ հեռաւորութեան վրայ Գարգուչ անուամբ ձեռաշէն և նշանաւոր բըլրոյն չորս կողմէ հինգ հինգ կանգուն բարձրութեամբ և մէկ կանգուն շրջագծով մէյ մէկ կոթողներ կան, որոց մին պատուական կնոջ մը, մին արծուի մը, մին գազանի մը արձանէ կը ներկայացնէ և միոյն ալ վրայ յունական գրով արձանագրութիւն կայ։

Դարձեալ կեդրոնին հիւսիսային կողմէ 1 1/2

հեռաւորութեան վրայ կայ «Պելին» կամ «Բելի» անուամբ։ Սոցա ալ իւրաքանչիւր կողմէ մարդկանց և կենդանեաց քարէ արձանները անկանուելէ զատ՝ լերան ամենաբարձր գագաթան վրայ եգիպտական բուրգաձև բլուր մը կայ մանր քարերով դիզեալ։ Սորա բոլորտիքը յունական գրերով արձանագրեալ աստիճանաց վրայ կանգնուած է արական և իգական մարմարեայ արձանք և այս բլուր շրջապատուած է 3 մ. բարձր և 2 մեթր լայնութիւն ունեցող բազմաթիւ սև քարետախտակներէ, որոց վրայ քանդակուած է այլ և այլ ձևերով, մարդկային և կենդանեաց պատկերներն մարդկային ամենանուրբ ճաշակաւ։

«Պելին» ը, նաև ծանուցեալ բլուրը յաւէտ ամպերով է պարածածկեալ։ Բլրոյն վրայ անցորդ մը մագլցելով ելլելու քաջութիւնն կ՚ունենայ և երբ օդոյն պարզութիւնն ալ օգնէ, դիտակաւ մը դիւրաւ կրնայ տեսնել Եդեսա, Հիւսնի Մանսուր, Սեւերեկ, Տիգրանակերտ, Խարբերդ ևն. քաղաքները։

Ասկէ քանի տարի առաջ կայսերական Միւզէոնի (Թանգարան) անօրէն վսեմ. Համտի պէյ գալով յիշեալ պատկերներու նկարներն առած է, փոխադրութիւնը դժուար ըլլալուն համար։

Կ՚ատանդուի թէ սոյն լեռ Նեփրովթի (Բէլայ) ամառանոցն է եղեր, յորմէ առացած է «Պելին»=Բելին անունն։

## ՍՏՈՐԱԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՔԵԱԽԹԱՅԻ

Քեախթա գաւառակը չորս գիւղախումբերու (Շիրոյ; Կէրկէր, Մրտեսը և Ջրաւքան) բաժնուելով՝ 300 է աւելի գիւղերէ կը բաղկանայ։ Սոյն գիւղերէ

տմանց մէջ հայ և Ասորի ալ գտնուելուն համար հարկ կը սեպենք անուամբք գրել զայնս ինչպէս.

ՇԻՐՈՑԻ ՄԸՋ — Քէֆէրտիզ ունի 20 տուն հայ, 15 տուն ասորի և 5—600 տուն Թուրք։ Այս գիւղի հայք չունին ոչ եկեղեցի ոչ քահանայ, բայց հակառակ իրենց փոքրամասնութեան՝ միանալով ասորւոց հետ՝ բացած են դպրոց մը, ուր կը դասախօսէ երեք տարիէ ի վեր պ. Եղիկիա Կոստիկեան, Մալաթիացի ուշիմ երիտասարդ մը։ Ասորիք ունին թէ եկեղեցի և թէ քահանա, սոյն գիւղի արեւմտեան կողմը պարտէզի մը մէջ կը տեսնուի հին՝ այլ ընդարձակ եկեղեցւոյ մը պատերն։

2. Աղվան 5 տուն հայ 10 տուն ասորի։ Հոս ալ նոյնպէս եկեղեցին և քահանան ասորւոյն է. իսկ դպրոցը հայազգի Կտապարեան եղբարք իրենց անձնականէն բանալով՝ բոլոր տեղացի քրիստոնէից զաւակները կը կարդան։

3. Իսմիւրիւն, 12 տուն հայ 10 տուն Ասորի։ 4. Քրատ 3 տուն հայ. — 5. Տամլու 4 տուն հայ, 8 տուն ասորի. — 6. Զամանհօ 20 տուն ասորի, ունին եկեղեցի և քահանայ որ կը վարէ վարժապետութեան պաշտօնն ալ. — 7. Մամաշ, 2 տուն հայ 2 տուն ասորի — 8. Ջամջիկ, 2 տուն հայ, 2 տուն ասորի. — 9 Արղուչայ, 3 տու. հայ, 2 տուն ասորի են.։

Շիրոյի նահիյէն ալ իր ստորաբաժանմունքն ունի, որք են։

Ճանպէկ (ճիհան պէկ), Բօսկրան, Հաքան. Ալուճը, Ճանտա (ճիհան տար) Պաղիկ, Նէֆսը (կեդրոնական) Շիրոյ են.։ Ասոնք ի բաց առեալ ճանպէկցիներն և բօսկրանցիները, միշտ Պալիս կ'երթեւեկեն, զի չունենալով երկրագործութեան ընդարձակ

*միջոց՝ ապրուստի մեծ աղբիւրնին Պոլիսն է։ Ծի-րայէն կ՚արտադրուի պատուական բամպակ, գխտոր, խուղ, մետաքս, ծխախոտ նաեւ են.։ Նոյն նահիէյի Ծիթոնիր ըսուած գիւղի տակը աղբիւրի լճակ մը կը գտնուի, ուսկից կը առնուն Մալաթիոյ սափրիչք և շրջակայ բոլոր գիւղացիք իրենց պէտք եղած տըզ-րուկներն։*

## ԿԷՐԿԷՐԻ (*) ՄԷՋ

*1.— Նէֆսի կէրկէրի մէջ կայ հին բերդ մը, որ ժամանակաւ շատ նշանաւոր է եղած. դղեակը կը տեսնուի քարափոր սենեակներ։ Նոյնպէս հոս կայ հին եկեղեցի մը, ունի 10— 12 տուն հայ և ասորի։*

*Քամիք. — 4 տուն հայ։*

*Գարուն. — 2 տուն հայ։*

*Կաղնուտէք — 2 տուն ասորի, 1 տուն հայ։*

*Պայիքի. — 2 տուն հայ։*

*Պըմբըրչօ. — 2 տուն հայ։*

*Թիլլօ. — 2 տուն հայ, 2 տուն ասորի։*

*Թէրքիտին. — 3 տուն հայ։*

*Մէզէրէ. — 2 տուն հայ, 1 տուն ասորի։*

*Բէթրկէ. — 6 տուն հայ։*

*Թէմշիսս. — 3 տուն հայ։*

*Վանք. — 18 տուն հայ, հոս կայ նաև հին եկե-ղեցի մը։*

## ԱՐՏԵՍԻ ԳԻՒՂԱԽՈՒՄԲ

*1. Պէօյօւք Պաղ — 10-15 տուն հայ։*

*2. Հասան տիկին — 3 տուն հայ։*

---

**(*) Սոյն վերջին տարիներ Բեախսայի Գայիմ Մէք-քամութիւնը երկուքի բաժնուելով եւ վերոգրեալ Շիրոյ Ճանիկի հետ «Բերկէ» գայմագամութիւն կը կոչուի եւ այս վերջինը Խարբերդի կը վերաբերի։**

3. Խորէս — 3 տուն հայ։
4. Հէլիմ — 8 տուն հայ։
5. Գարա Թիւլպէ — 6 տուն հայ 5 տուն ասորի։
6. Թըլթըլա — 2 տուն հայ։
7. Սըրաթուտ — 2 տուն հայ։
8. Նաունքա — 4 տուն հայ։
9. Բերազ — 3 տուն հայ։
10. Իւլպիչ — 20 տուն հայ, 6 տուն ասորի։
11. Քէքէրտիչ — 3 տուն հայ։
12. Հութ — 3 տուն հայ, 2 տուն ասորի։
13. Քօրդիէ — 2 տուն հայ։

ՋՐԱՒՔԱՆԻ ԳԻՒՂԱԽՈՒՄԲ.— 1. Պէրվէտօլ՝ 5 տուն հայ։ — 2. Կէյիքան՝ 2 տուն հայ։ — 3. Քօլիկ՝ 5 տուն հայ։ — 4. Գարաջոր՝ 2 տուն հայ։ — 5. Հաւանք՝ 5 տուն հայ։ — 6. Պլիլա՝ 6 տուն հայ։ 7. Մըշրազ՝ 3 տուն հայ։ — 8. Գարսթուր՝ 3 տուն հայ։ — 9. Կուտիչ՝ 3 տուն հայ։ 10. Փէրտէսօ՝ 10 տուն հայ, 6 տուն ասորի։ — 11. Սէյտ Մահմուտ՝ 12 տուն հայ։

Բաց աստի, Կէրկէրի այլ մի քանի գիւղերուն այսինքն Խնչտուր (Խաչտատուր), Քարակլի, Ծըրմըդանի, Զափաքի, Փիրախի, Շաֆքանի, Աապաւունի, Ազմայի, Հալուրի և.ն.ի մէջ կան 100 տունի մօտ հայեր, որոնք Սևէրէկի, Եդեսիոյ և Ջնդուշի կը վերաբերին։

Իւլպիչի մօտ Ջօք (Ջոքարիա) անուանեալ եկեղեցի մը և որուն քիչ մը վարը 15—16 մէթր բարձրութեամբ Ս. Թէոդորոս անուն նման թիւրք մինարէներու, բարձր աշտարակ մը կայ, որուն մէջ չի տեսնուիր ոչ խորան և ոչ ալ սատիճաններ, միայն մի քանի տեղեր քանդակեալ խաչեր և յունական գրեր։

*Սոյն (Քեմախթա) գաւառակի մէջ կայ մի քանի անուանի ուխտավայրեր, որոց մին է «Մօրաֆա»ն։ Ասիկա Եփրատի աջ եզերքը քարայր մ'է, որուն վրայ բարձրացած է սեպաձեւ ժայռեր հաստաբուն կաղնիներով։ Քարայրին մուտքը խիստ դժուար է և մէջը մտնելու համար անցք չի գտնուելուն՝ պէտք է մարդ մէջքին չուան մը կապուի ու վերէն կախուելով մէջը իջնէ։ Երբ մէջը իջնես, աչքիդ առջեւ կը պարզուի արհեստին բնութեան օգնութեամբ չինած սքանչելիքը։ Շէնքը Եփրատի մակերեսէն* 20—25 *մեթր բարձր գտնուելով՝ դուռէն (ծերպէն) զատ ուէ լուսանցք չունի։ Ներքին կողմը ունի առանձին խորշեր ու բնակարան, որոնց մենակեացներուն ճգնարան ըլլալն անկասկած է։*

*Տարւոյն ամէն եղանակին ալ այցելուք անպակաս են հոս, աւելի խենթերը կը բերուին հոս և զօրս չղթայակապ իջեցնելով՝ մէկ երկու օր անսըւաղ պառկեցնելէ յետոյ՝ չարերը լուցած դուրս կ'ելնեն։*

*Մօռաֆայի մօտն է իր կրտսեր եղբայր «Մօրդմիթ»ը։ Սա՛ ալ նմանապէս մատրաձեւ քարայր մըն է, հոս ալ իջնելու համար չուան կապուիլ պէտք է։ Երբ մէջն իջնէ մարդ կը լսէ ջրոյ դդջիւն մը. որ այրին արեւմտեան կողմէն փրփրալից կ'իջնէ Եփրատին մէջ։*

*Քեմախթա գաւառակին մեծ մասը լեռնային ըլլալուն՝ երկրագործութիւնը չէ այնքան գովելի թէեւ տեղ տեղ արգաւանդ հող գտնուելով բաւական սերմնացանութիւն կ'ըլլայ։*

*Քեմախթայի վերջին նահիյէներէն գլխաւորաբար կ'արտադրուի մանած, բամպակ, գխտոր, ծխախոտ, քիգրէ, թուամազ կենդընեաց իւղ և մօրթ։*

*Ինչպէս Տիրայի նոյնպէս միւս գիւղախմբից բոլոր արհեստաւորները հայերն են, առուծախք հայոց ձեռքն է։ Սակայն սոցա կրօնական և կրթական կացութիւնը խիստ ողորմելի է, ինչու որ իրենք մանաւոր քահանայ չունենալով՝ երբ կրօնական որ և է խորհրդոյ և գործոյ համար քահանայի պէտքն ըզգան՝ ասորի քահանայից կը դիմեն։ Աւ դպրոց և ուսումն ալ դուն խորհէ։ Ցարդ՝ Իւլպիշի մէջ ի շնորհըս Հայոց Միացեալ Ընկերութեան՝ գործով ոչ իսկ սոսկ անուամբ վարժարան մը կը գտնուէր զոր* 10— 15 *տարի առաջ բնիկ քահանայ մը Պոլիս երթալով բանալ յաջողած էր։*

*Արդ՝ քանի որ սոքա ալ ազգին և եկեղեցւոյն մի անդամն են, պէտք է սոցա կրթական և կրօնական վիճակը անխնամ չի թողուի և այս նուիրական պարտաւորութիւն հասուցանիլն կամ Խարբերդցւոյն կամ Մալաթիացւոյն է, փափաքելի է տեսնել սոյն երկու քաղաքացւոց անձնուիրութիւնը։*

## Բ.

## ՀԻՍՆԻՄԱՆՍՈՒՐ

*Հիւսնիմանսուր՝ որ կեդրոնն է համանուն գաւառակին՝ կը գտնուի Մալաթիայ հարաւակողմը* 18 *ժամ և Պեհեսնիի արևելեան կողմը* 8 *ժամ հեռաւորութեամբ, Եփրատի աջ եզերքը ու Տաւրոսի շրջթաներէն Գարատաղի առջևը, գեղեցիկ ու լայնածաւալ դաշտի մը վրայ։*

*Սոյն քաղաք կը բաժնուի գլխաւոր երկու թաղերու այն է՝ տաճկաց և հայոց։ Քաղաքին մէջտեղ*

կը գտնուի բարձր հողակոյտ մը՝ որուն վրայ հաս-
տատուած է մէկ երկու հարիւր տուն հայոց և տաճ-
կաց։ Հոս է նաև հայոց եկեղեցին և դպրոցը, որ
յայտ. քաղաք իրենց դրից և գեղեցկութեանց համար
եզակի են համանիններու մօտ, սակայն 1893 ի եր-
կրաշարժին բաւական վնասուեցան ինչպէս բլրոյն
վրայի ամբողջ տուներն ալ։ Հայոց եկեղեցւոյ պատ-
ուանդանը կառուցուած է բողոքականաց ժողովարա-
նն։ Հողակոյտը ձեռաչէն ըլլալուն կասկած չկայ ո-
րովհետև փորելու ատեն երկաթի կարններ, տէփեր,
արհեստաւորաց գործիքներ են կը գտնուին։

Քաղաքը ունի 2000 տուն բնակիչ, որոց 1/4 ը
կը բաղկանայ քրիստոնեաներէ, այս վերջինք հինգ
եկեղեցւոյ կը վերաբերին, այսինքն 400 տուն լու-
սաւորչական հայ, 30 տուն հայ կաթոլիկ, 10 տուն
ասորի կաթոլիկ, 40 տուն բուն ասորի և 20 բողո-
քական։ Սոցա իւրաքանչիւրը ունի իւր ուրոյն ե-
կեղեցին ու դպրոցը։ Հայոց եկեղեցիէն ալ գեղե-
ցիկ է (ըստ նիւթականին) կաթոլիկներու գմբեթա-
ւոր եկեղեցին։

Գալով դպրոցի, կրնանք ըսել թէ Հիւսնիման-
սուրցիները աւելի եռանդուն են քան զՄալաթիացի-
ները, որովհետև տեղւոյն հայք՝ ինչպէս իրենց եկե-
ղեցին մէկ, նոյնպէս և իրենց սիրտն ու հոգին մէկ
ըլլալով՝ անդուլ կ'աշխատին իրենց կրթական գոր-
ծուն յառաջացման։

Հիւսնիմանսուրի դաշտը, ինչպէս ըսինք, ըն-
դարձակ է, բայց Փարատողէն՝ մարդ կարող չէ ա-
ռանց հեռադիտակի ոեւէ լեռ նշմարել շրջակայքը։
Այսուհանդերձ խիստ սքանչելի է սոյն դաշտը, մա-
նաւանդ երբ մէկը Ջէկեօլ և Աւեօլ ըսուած ուղի-
ներուն գլուխը կանգնած՝ կը դիտէ քաղաքին գե-

ձեցկաշատ որթատունկեր կամ այգիները, պարտէզները և դաշտին պարարտահող ակօսներուն մէջ բարձրացած լիահասկ և ոսկեգոյն ցանքը և երփներանգ ծաղիկները։ Պակաս մը կայ միայն, այսինքն ի սոյն արգաւանդ դաշտը ոռոգող առատ ջուր չկայ թէև արեւելքէն Փիրին լճակը և արեւմուտքէն էկիլ չայը ըսուած գետակը բաւական տեղ թրջեն։ Այս վերջինը որչափ որ գարունը կ'ուռճի, սակայն ամառը բոլորովին կը ցամքի գրեթէ. իսկ Փիրինն ալ հակառակ իր առատութեան և զովութեան դաշտին խոր մակերևոյթէն հոսելով հազիւ արտերու 1/4 ը կը ջրէ։ Իցիւ թէ Փիրին՝ սոյն ականակիտ ջուր քաղաքին հիւսիսային կողմէն հոսէր, որ թէ այն բազմաթիւ արտերն ոռոգէր, և թէ ամբողջ քաղաքացւոց խըմելու ջուրը մատակարարելով՝ հանգոյն Մալաթիոյ Տէրմէնսիին քաղաքըն հեռացնէր այն աղտեղութիւները ու հասարակ եղած աչքի ցաւը, որ արդիւնք են անջրդութեան և այս անջրդութենէ է որ քաղաքը իր երկրորդ (տար եաման) անունը ստացած է իր վրայ։

Հիւսնիմանսուր ունի իրեն վերաբերող 200 էն աւելի գիւղեր որոնցմէ Վարդանայի մէջ կայ 15 տուն հայ, Խրաֆի մէջ՝ 3 տուն, Կուրիկի մէջ՝ 4, Շապիի մէջ՝ 3, Սամուսի(*) մէջ՝ 15, Քիլիսանի մէջ 5, Տարաղանի մէջ՝ 4, Կոզանի մէջ՝ 2, Մարմարայի մէջ՝ 3, Կանթարայի մէջ՝ 8 և Կէօլ—Պունարի մէջ՝ 3 տուն։

---

(*) Սամուսատ՝ Փոքր Ասիոյ հին քաղաքներէն մէկն է (այժմ աւերակ)։ հիմակ ունի հազիւ 2—300 տուն բընակիչ եւ հիմա կը վերաբերի Հիւսնիմանսուրի․ վերջին ութ գիւղերը Սամուսատի նահիյէին վրայ են։

Կ'ըսուի թէ Հիւսնիմանսուրցիները Սամուսատէն գաղթած են, բայց ո՛չ, զայս ապացուցանող ըստոյգ աղբիւր չըլլալէ զատ՝ Սամուսատի բազմամարդ և կանգուն եղած ատենն իսկ Հիւսնիմանսուր գոյութիւն ունէր և չէն էր։

Հիւսնիմանսուրի Ջէկ գիւղին (որ կը գտնուի քաղաքէն դէպի հիւսիս մէկ ժամ հեռաւորութեան վրայ) Կէլինճիկ անուանեալ լերան վրայ քար այր մը կայ, սոյն այր՝ խորանդունդն իջնելով կուպայ կը հասնի գիւղին առջևի վտակին եզրը և կը վերջանայ։ Սոյն լերան վրայ ուրիշ այր մ'ալ կայ, որուն մէջ լի է արուեստական ճարտարագործութեամբ քանդակեալ մարդոց, անասնոց և օձերոցի, դաշտի կենքի և այլ տարրկայից պատկերներ և տեղ տեղ յունական գիրերով արձանագրութիւններ, զորս կարդալու համար կանխաւ լաւ հմտութիւն ունենալ պէտք է, որովհետև դարերու հոլովմունքէն գիրերը մամռապատած և անընթեռնելի են ըրած։

Հիւսնիմանսուրէն Մալաթիա տանող ճամբուն առաջին իջևանի Ապա— էլ— խարապ գեղի և Գէօսէլէր Կէտիւկի միջոցը 2·30 ժամ շրջապատ ունեցող լճակ մը կայ, որուն ջուրը թէև աստի - անտի ալ կը հաւաքուի, բայց մեծաւ մասամբ արևմտեան կողմի լերան ստորոտէն բղխելով վարը Շարապին-Ուչադը ի տակ նեղ կիրճէ մը անցնելով Գեախթայի գետակին կը խառնուի։ Ասկից 4—5 տարի առաջ սոյն լճակը ցամքեցնելով արտի վերածելու համար մասնաւոր կողմէ փորձեր եղած, բայց գործուն մէջ նախ շատ դժուարութիւն և ապա մեծաքանակ ծախսերու պէտքն տեսնելով՝ բաւական օրեր հարիւրաւոր գործաւորներով աշխատելէ ետքը թողուցած են։ Լճակին կեդրոնը վրան շատ տեսակ ծառերով

*պատեալ պզտիկ բլրակ (Հողակոյտ) մը կը տեսնուի, որուն տակը ջուր է։ Ջուրը ջինջ ու ցուրտ և խորութիւնը տեղ տեղ 1—100 մեթր է։ Իր մէջ ունի մանր այլ համեղ ձուկեր ու ջրային զանազան կենդանիք։ Կ'ըսուի թէ Մալաթիոյ և շրջակայքի մէջ տեղի ունեցած երկրաշարժերու կեդրոնն է այս լճակը։*

*Այս լճակէն ժամ մը վար Քէօսէ Ուշաղը (Քեախթա) անուանեալ գիւղի լերան վրայ հաստատուած է եկեղեցի մը (այժմ աւերակ) որուն քիչ մը վարը կը գտնուի դառն ջուր մը Իջմէ անուամբ, ուր կ'այցելեն շրջակայ գիւղացիք և քաղաքացիք։ Այս ջուրը թէև դառնութեանը պատճառով չի խմուիր, սակայն մէջը հանքային բաղադրութիւն ունենալուն՝ եթէ ախտաւորները լուացուին՝ կը բուժուին։*

*Հիւսնիմանսուրի գլխաւոր արտադրութիւնք են բամպակ, մանած, արմտիք, գխտոր, չամիչ, քիղրէ, բուրդ և թաւամազ կենդանեաց մորթ։*

## Գ.

## ՊԵՀԵՍՆԻ

*Պեհեսնիի կեդրոնական մասը՝ Մալաթիոյ հարաւելմտեան կողմը 22ժամ հեռաւորութեամբ չուրջանակի լեռներով ու բլուրներով շրջապատուած խորաձորի մը վայրէջքը հաստատուած փոքրիկ քաղաք մ'է։*

*Քաղաքին դիրքը խիստ վտանգաւոր է, տուները խիտ առ խիտ իրարու վրայ շինուած ըլլալուն*

համար, որովհետեւ այնպէս մը շինուած է որ՝ միայն գաւիթը, միւսին տանիքը եւ հասարակութեան ճամբան է։

Պեհեանի կը բաղկանայ 2000 տուն մօտ բնակիչներէ, որոց գրեթէ 1/4 ը քրիստոնեայ են։

Կեդրոնին օդը կարելի եղածին չափ վատառողջ է։ Ամառը սաստիկ տաք կ՚ըլլայ. ջուրջը բուական պարտէզներ գտնուելով՝ ժողովուրդը տանց մէջ շինուած հնչղերուն տակ կը բնակի, զի ամրան սաստիկ տաքութեան եւ քաղքին գարշահոտութեան համար, եթէ կարելի է ըսել սխալէր եւ պարտէզներու մէջ որչափ որ պտղատու ծառեր հասած են, հասուն եւ զայնս ոռոգող ջուր չգտնուելուն համար՝ ոչ գետինը խոտ եւ ոչ ծառերուն վրայ զօրութիւն կայ։ Այլ սակայն խիստ պատուական այգիք կը գտնուին հոս ի մէջի այլոց անուանի է Բէյպամպէր իւզիւմի ըսուած խաղողը, որուն համեմատ խաղող նահանգին եւ ոչ մէկ կողմը չի գտնուիր, մանաւանդ տաք չամիչը որ իր խոշորութեամբ եւ փայլունութեամբ այն գաւառակին առանձնաշնորհ մ՚է բնութենէն։

Պեհեանի հայոց մէջ ալ 20—25 տուն կաթոլիկ եւ 10—12 տուն բողոքական կը գտնուին. ինչպէս լուսաւորչականք նոյնպէս եւ վերջինք իրենց սերուն եկեղեցին եւ վարժարանն ունին։ Պեհեանի վարժարանաց նիւթականը ըստ կարելւոյն վնաս չունի, սակայն բարոյականը խիստ ողորմելի է։ Սոցա մէջ միայն կաթոլիկներունը մասամբ մխիթարական է, եւ այս ի շնորհս եւ անդուլ ջանից եւ խնամքով Արժ. Տ. Սահակ վարդապետ Պէնէհեանի մելիքնեցւոյ։ Պեհեանցիներու (հայոց) գործածած լեզուն ամբողջութեամբ թրքերէն է, այնպէս որ հայերէն ամենապարզ բառերն անգամ չեն հասկնար։ Զենք գիտեր

թէ Պէհեսնիի այս ամէն կերպով թշուառ ժողովուրդը ե՞րբ պիտի զարթնու ազատութեան այս մշուշապատ խաւարէն և գէթ իր մայրենի լեզուն սորվելու հոգ ու խնամք պիտի տանի՝ բարեկարգելով դըպրոցաց բարոյականն ալ, ինչպէս կ՚ընեն ուրիշ ամէն առաջախօս գաւառացիք։

Պէհեսնի գաւառակը հինգ գիւղախումբի բաժնըւելով՝ 150—160 գիւղ ունի։ Գիւղախումբերէն Սիւրկիւ և Հիւյէտի մէջ միւտիւրներու յատուկ պաշտօնատուն կայ։ Գիւղերէն Թուտի մէջ՝ 20 տուն հայ։ Ասոնք չունին ոչ եկեղեցի և ոչ դպրոց։ Պէհեսնիի կաթոլիկ կղերը վերջին տարիներս յաջողած է զասոնք որսալ, գիւղին մէջ դպրոց մը բանալ խոստանալով։ Թուրք հայերն մեծաւ մասամբ կտաւագործ են և տարեկան բաւական կ՚արտադրեն պատուական կտաւ։ Թուտի մէջ կը տեսնուի հին բերդի մը հետքը։

Քէյսունի մէջ ալ կայ 5—6 տուն հայ. հոս կայ նաև սրբավայր մը «Կարմիրվանք» անուամբ (այժմ մասամբ աւերակ)։ Քէյսուն ջրալից և լի պարտէզներով Պէհեսնիի ամենէն գեղեցկադիր գիւղն է։ Կ՚ըսուի թէ ի հնումն քաղաք էր և Պէհեսնիի արդի բընակիչք անկից են գաղթած։

Սիւրկիի առջևէն կը հոսի վտակ մը, որուն մէջ կը գտնուի Ալա Պալըգ ըսուած մանր այլ համեղ ձուկեր։ Նպատակ կայ սոյն վտակը մասնաւոր գծով Հօրէնի (արդա) դաշտն իջեցնելու, որուն համար արդէն երկրաչափներ գալով տեղն ու գիծը որոշեր են։ Եթէ իրականանայ սոյն նպատակը, Մալաթիոյ համար խիստ օգտակար պիտ՚ ըլլար, զի յիշեալ դաշտը անջրդի ըլլալուն համար մեծ մասը խոպան և անմշակելի է հիմա։

*Սիւրկիւի հիւսիւսային կողմը ընդարձակ և գեղեցիկ հովտի վրայ հաստատուած Խարապ Շէհիր անուն պարսպապատ քաղաքի մը պատերն տեղ տեղ կանգուն է դեռ, ուր հիմա կը բնակին վերջին Թուրք և Ռուս պատերազմէն Կարնոյ կողմերէն եկող 300 ի մօտ Թուրք մուհաճիր (գաղթական)ներ:*

*Պեհեսնի գաւառակին մէջ նշանաւոր է Կէօկ սու անուանեալ գետակը: Ասոր մէկ մասը կը կազմէ վերոյիշեալ Սիւրկիի վճակը և միւս մասն ալ Էլպիստանի կողմէն գալով Ուզան գիւղին մէջ կը միանայ և դէպի հարաւ հոսելով կը խառնուի Եփրատի մէջ: Այս ջրոյն վրայ շինուած կայ մի քանի կամուրջներ, ի միջի այլոց, Կէօլ Պաշիի տակ՝ ... քէօփրիւ անուանեալ հոյակապ կամուրջը:*

*Պեհեսնիի գլխաւոր արտադրութիւնն է խաղողէ բաստեղ, սուճուք, մանած, կտաւ, գորգ, կապերտ և ամենէն աւելի կարմիր չամիչ:*

## Դ.

# ԱՂՃԱՏԱՂ

*Այս գաւառակի կեդրոնը՝ Մալաթիայէն դէպի յարեւմուտք 8 ժամ հեռաւորութեամբ և հարաւէն հիւսիւս ձգուած Տաւրոսի շղթաներէն համանուն լերան քաղաքին հանդիպակաց կողման ստորոտը բլրակի մը վրայ շինուած Արղա աւանն է, ուր շինուած է իր հեռագրատնով, կառավարական պաշտօնատուն մը փառաւոր զօրանոցով մը, 1 Թուրք վարժարան և 1—2 մզկիթ. Արղա աւանն իր մէջ գտնուած հնութիւննե-*

րէն և հողակոյտէն կ'ապացուցուի թէ ի հնումն և նշանաւոր վայր մ'էր։ Գիւղի բլրակին խորէն կը գտնուին հին գիրերով արձաններ, եկեղեցեաց հիմունք, վէմ քարեր, խաչեր ևն.։ Արդայի դաշտը կը միանայ Հարբրայի Հիւմայունի սահմանին հետ։

Արդա գաւառակի բնակիչք ընդհանրապէս քիւրտ են, որոնք կը բաժանին գլխաւոր երկու մասանց, այսինքն Քիւրնէ և Քիւրէճիւկ։ Ասոնցմէ Ա.ը բոլորովին Սիւննի, իսկ Բ.ը Շիի են սոյն երկու բաժանմունքէն զատ՝ որք առանձին գիւղախումբեր են ուրիշ պզտիկ նահիյէ մ'ալ կայ, այն է Հագիմ խանը։

Քիւրնէ և Քիւրէճիւկցիք թէև ի սկզբան ապստամբ ճանչցուած էին յաչս կառավարութեան և բատայգ էր սոյն ապստամբութեան, սակայն վերջին տարիներս՝ շնորհիւ օգոստափառ կայսեր, բոլորովին ընկճեալ, նուաճեալ և ամէն կերպիւ հըլու հնազանդ են։ Բայց և այնպէս իրենք մեծ ազդեցութիւն ունին, թէ շրջակայ և թէ հեռաւոր քիւրտ ցեղերուն վրայ, այնպէս որ իրենցմէ աննըշան մէկը իսկ ուր որ ալ երթայ առանց զէնքի անվնաս և ազատ կ'երթայ, մինչդեռ ուրիշ ցեղախումբեր որչափ ալ զէնքեր կրեն վրանին, նորէն Աղճատաղցիներու խիստ պզտիկին առջև զինաթափ կ'ըլլան։ Այսուամենայնիւ Աղճատաղցիք յետին ծայր ասպնջական են։ Իրենց ամենէն աղքատին տունն անգամ մէկը երթալու ըլլայ ամէն մէկ յարգ ու պատիւն ընելով և ունեցած ամբողջ հացը հիւրին առջև բերելով կը կերակրէ և այնպէս ճամբու կը դրնէ։ Եթէ հիւրը քաղաքացի կամ ուրիշ ցեղէ է, կը զինուի և յաղարկաւորութեան կ'երթայ։

Քիւրնէի մէջ մին 40 միւսը 30 տունէ բաղկաց-

եալ հայաբնակ երկու գիւղ կայ, որոնց առաջինը Մը-
շովկայ — Մուշովկայ(*) և Բ. ը Անասուր կ'անուանի։
Մուշովկայ շինուած է Գուրշունլը ըսուած խորաձորի
մէջ։ Բնակիչքը հաստակազմ և առողջ մարդիք են,
և կը պարապին երկրագործութեամբ։ Իրենց հին ե-
կեղեցին, որուն որ դարու գործ ըլլալը չի գիտցուիր,
աւերակ ըլլալով վերջին տարիներս ան-
շուք և պզտիկ եկեղեցի մը շինած են։ Ունին եր-
կու քահանայ։ Քահանայք այդ պարզամիտ գիւղացի-
ները հաւատացնելու չափ հազիւ ընթերցանութիւն
ունին։ Ասոնք ըստ զեղծականի ձեռնադրուելով, այ-
սինքն քահանայութիւնն հօրենական և պապենական
ժառանգ ըլլալով՝ գոհացուցիչ նուէր կ'ընդունին
գիւղացիներէն։

Գալով դպրոցին, բնաւ մի հարցներ, թէև մէկ
երկու տարին մի անգամ Մոլլաթիայէն մանկավարժ
մը կը տանին, բայց ան ալ 3—4 ամսուան համար,
որովհետև երբ ձիւնն ելլէ, գարունը գայ, տղան դաշ-
տը կ'երթայ, վարպապետն ալ քաղաք։

Այս գիւղին վերև, գահաւանդի մը ծերպէն բա-
ւական առատութեամբ վճիտ ջուր մը կ'ելլէ և գըլ-
գլայէն կը թափի ձորին մէջ։ Ջրոյն երկու կողմը,
վերէն մինչև վար մշտադալար և մազանման խոտ
մը կայ։ Ջրոյն վիժած գահաւանդին նաև բոլորո-
վին կորուկ է, ուստի հնար չէ զարմանալ այսպի-

---

(*) Մուշովկայ ի հնումն քաղաք մ'ըլլալն յայտնի է։ Բնակչաց մէկ մասը Մուշէն գաղթելով երբ հոս կու գան, բնիկները տեսնելով ասոնց բազմութեամբ գալը, կը հարցնեն թէ «Մուշ ո՞վ կայ, ալ մարդ մնա՞ց»։ Բայց աւելի կը յարմարէր զատ անուանել «Մշուշով կայ», ինչու որ այդ խորաձորը մշուշապատ է գրեթէ։

սի անակնունելի տեղի մը ջուր բղխելուն համար։ Գիւղացիք «Մանկամալիկ» կ'անուանեն այս դաւաւանդը յիշեալ մազանման խոտին անուամբ և կը պատմեն թէ հալածանաց դարերէն միոյն մէջ՝ քանի մը հրոսակներ գիւղին վրայ յարձակելով գեղեցիկ աղջիկ մը կը հալածեն առևանգելու համար։ Աղջիկը հալածչած ձեռքէն պրծելու յուսով իւր բոլոր զօրութեամբը փախչելու ատեն երբ կը հասնի դարաւանդին առջև, սորը կը ճեղքի ու աղջիկը մէջը կը մտնէ թէ ոչ իսկոյն կը միանայ ըստ առաջնոյն։ Հըրոսակք տեսնելով իրենց բանական որսին կորուստը, կը հիանան և ետ դառնալու ատեն կը լսեն ընտարերկեայ որոտում մը, որուն կը յաջորդէ ուժգին պայթում մը սարի գլխէն և քարերու շերտերու հետ իրր պատիժ կը տեղայ իրենց գլխուն վրայ սոյն ջուրն ալ ու կը մեռցնէ զիրենք։ Եւ ահա ի նշան այդ անմեղ աղջկան մազերուն, սոյն մազանման խոտերը կ'աճին մինչև այսօր։

Իսկ Անսուր Մելասի ձախ եզերքը Գարապէյ լերան Կէվուր տէրէսի = հայոց ձորի բերանն է կառուցուած։ Գիւղին հիւսիսային կողմը Իպօ Ծուզ ըսուած տեղւոյն նեղ կիրճի մը զառիվերը կը տեսնենք հին և դարաւոր եկեղեցւոյ մը պատերն ու խորանը, որուն քիչ մը վերը նոյնպէս աչքի կը զարնուին տասնէ աւելի ձեռափոր քարայրներ յարաց ոմանք խցիկի, ոմանք մատրան և ոմանք ալ խանութի ձև ունին, այսպէս նաև այրերու դիմացի ընդարձակ սարահարթի վրայ և Իօռէն ըսուած գիւղի շրջակայքը և իրեն՝ Անսուրի մէջ մէկ կողմէ կը տեսնուին նուիրական հնութիւնք, մինչև 1150 տարուան տապանագրեր պարզապէս կը տեսնուին գերեզմանի մը վրայ։

*Մալաթիոյ հայոց արդի ծանօթ գերդաստաններէն ոմանք, ինչպէս Անտուրլեանք, Պաղտօեանք, պըլըրգեանք, Սարաֆեանք, Մ. Ցուսիկեանք, Հովակիմեանք, Օտապաշեանք և.ն. ասկէ 150—160 տարի առաջ Անտուրէն գաղթած են։ Անտուր ալ ի հնումն քաղաք մ'է եղեր։*

*Անտուրցիներուն հոգևոր պէտքն կը հոգացուի Մուշովկայի կամ Հաքիմ խանի քահանայից կողմէն։ Իրենք եկեղեցի չունենալնուն համար՝ առիթէն օգուտ քաղելու նպատակաւ ասկէ 10—15 տարի առաջ Մալաթիոյ լատին կողմէ թէ փայտաշէն եկեղեցի մը կառուցուած է (ուր հիմա կենդանեաց պաշար լեցուած կը գտնէք) և թէ այլ և այլ նուէրներով (մետաղ, վարդարան, մանր խաչ և պատկեր) զիրենք խաբխբած և որսացած է իծոց իր եկեղեցւոյն։ Բայց ամենքն ալ զուր ջան և անօգուտ վաստակ է եղած։*

*Անտուրցիները խիստ պարզամիտ և նախապաշարեալ մարդիկ են։ Ասոնց վրայ պատմուած պատմութիւնները զուարճալի բաներ ըլլալուն համար մէկ քանի հատը գրել ուզած ենք։ Գիւղին վերև ունին ուխտավայր մը Ս. Կանանոս անուամբ. իրենց երդում առաջարկելու և ճշմարտութիւնը իմանալու համար լաւ է յիշեալ սրբոյն վրայ երդուընցնել, որովհետև Աստծոյ վրայ կ'երդնուն Ս. Կանանոսի անուամբ չեն երդնուր։ Եթէ պատճառն հարցուի կ'ըսեն թէ «Աստուած բոլորին Աստուածն է, իսկ Ս. Կանանոս միայն մեր պաշտպանն ու մեր սուրբն է»։ Դպրոց և կարդալ գրել ըսուածն այս մարդոց համար երազ համբելու է, այնպէս որ ա.ը տեսնելու ըլլան մօրուաց սանտր կը կարծեն և միայն գիտեն թէ*

*գիրքը կարդալու և Թուղթն ու մելանը գրելու առարկայք են։*

*ՀԱԳԻՄԽԱՆ.— Ինչպէս վերը ըսինք Աղճատաղի Գ. այլ պզտիկ նահիէն է աս։ Հագիմ Խանի կեդրոնըն Մալաթիայէն Սեբաստիա տանող ճամբուն երկրորդ իջեւանն է։ Հոս կայ 50—60 տուն հայ, որոնք մեծաւ մասամբ արհեստաւոր են։Ասոնք ասկէ 150—200 տարի առաջ Երզնկայէն, Մուշովկայէն և Անտուրէն գաղթած են, սակայն 50—60 տարիէ ի վեր ալ այլ և այլ տեղեր (Մալաթիա, Սեբաստիա, Եոզղատ, Կիւրիւն ևն.)կը գաղթեն։Հիմակուայ մնացածները տարւոյն 9 ամիսը ծիւղիւնկիւս ըսուած գիւղին մէջ ունեցած այգեստանեաց և պարտէզներու հսկելու համար հոն մնալով՝ ձմիչխանը կը վերադառնան։ Դարուս վերջին քառորդի սկիզբները շինած են եկեղեցի մը, ունին երկու քահանայ. Ասոնց դպրոցն ալ բաղդատելով Մուշովկային և Անտուրի քիչ մը մխիթարական է։ Վարժապետութեան դերը երբեմն քահանայք կը կատարեն։*

*Վերոյիշեալ երեք հայաբնակ գիւղերէն Հագիմ խանցիներու լեզուն պարզ, Մուշովկացիներունը նուրբ, և Անտուրցիներունը արբադոյն է։ Սակայն Անտուրցիները խիստ արագախօս են, այնպէս որ, խօսքերնին իմանալու համար մի քանի անգամ լսել կամ կրկնել հարկ է և երեք գիւղին ալ լեզուն աւելի մօտ է Սեբաստիոյ գաւառաբարբառին ինչպէս սոյն հայաբնակ գիւղերու ,նոյնպէս Աղճատաղի իւրաքանչիւր կողմէ շատ ու շատ բնական և արհեստական, նուիրականն ու ոչ—նուիրական հնութիւնք։*

*Թողուք մէն մի կողմ գտնուած եկեղեցեաց աւերակներն ու հեաքերը, որոնց գեղեցիկ քարերով*

*արդի բնակիչք իրենց բնակարանները չինած ու ժարդարած են. միայն Շղու ըսուած նեղ կրճին երկու կողմէ հարիւրաւոր քարայրներ կը գտնուին որք ի հնումն մենակեացներու ապաստանութեան ծառայած են։*

*Անկից 15—20 տարի առաջ Քիւրնէի մէջ սերմնացան մը արտը հերկելու ատեն ձուլածոյ արծաթ հորթ մը գտնել՝ բայց չգիտնալով այդպիսի թանկագին բանի մը արժէքը, խորտակել ու չրջակայ քաղաքներէն միայն մէջ ծախելն կը պատմուի։ Գուրչունլուի հարաւակողման գահաւանդին վրայ Գրզ — Գուլէսի ըսուած դիտարանին պէս Քիւռ Ապտալլի դիմաց (յայնկոյս մեղաստայ) բարձր սարի մը գըլուխը կիսակործան բերդ մը և դիմացն ալ քարուկիր ընդարձակ շէնք մը կը տեսնենք։*

*Մալաթիայէն Էլպիստան տանող ճամբուն վրայ (Պէքիր Ուչագր և Հասըն Ուչագրի մէջտեղ) ժայռի մը հարթ երեսին վրայ գրուած կայ 40 տողէ աւելի կարմիր և խոշորագիր արձանագրութիւն մը որոյ երկու եզրը կարկընաւոր բոլորակ խաչանման նկար մըն ալ։ Բայց դարուց հոլովման և ձեանց ու անձրեւաց բախմանէն տեղ տեղ եղծուելով՝ անօրինակելի և անընթեռնելի է եղած։*

*Տէրէ Ֆէնկիի (Քիւրճիւկ) մօտերը առատօրէն կը գտնուի ամիանդ ըսուած մետաղէն. սակայն ալ վըրայ ոչ ուշադրութիւն դարձած է և ոչ ալ դարձընող կայ։*

*Աղճատացիները իրենց առուտուրը գլխաւորաբար Մալաթիոյ, Տարէնտէի, Էլպիստանի և Կիւրինի հետ կ'ընեն։ Գաւառակին մեծ մասը լեռնային ըլլալուն՝ որչափ որ երկրագործութիւն կ'ըլլայ նէ, բայց բոլատցիներէ միւս գիւղացիք այնքան վարժ*

չեն նոյն նահապետական և ամենահին արհեստին։ Աղճատաղցւոց մեծ գործն ու հարստութիւնը անաս-նապահութիւնն է։ Գաւառակին ամէն կողմը, մա-նաւանդ Քիւրիւճէկի և Այվալըի մէջ գործուած գորգ ու կապերտներն առատ շահ կը բերեն։ Արդարև շատ հետաքրքրական և զարմանալի են աղճատաղ-ցիներու գործուածքներն ու հիւսկէնները, զի թո-ղունք հասարակ կապերտները, գորգերը, քուրձերը գուլպաները են. աչքերդ կը շլացնեն եօթնալեաեան (Եէտի թող չիչէյի) անուանեալ երփներանգ կապեր-տըն և հանգոյն ծիածանի եռաչերտ, հնգաչերտ և եօթնաչերտ ու բազմագոյն թելերով նկարուած և ոսկեթել ծայրերով վերջացած բէրտէններու ծաղիկնե-րըն խիստ գնահատելի և գովելի են։ Ուստի պէտք չէ զարմանալ երբ կ'ըսենք թէ ո՛չ միայն Մամ-իւլ-Ազիզ նահանգի, այլ տէրութեան երկրին մէջ գտ-նուած և ոչ մէկ քիւրտ ցեղ կրնայ մրցիլ աղճա-տաղցիներու հետ նոյն արհեստի մասին։

* * *

Գաւառակաց մէջ Մալաթիոյ հետ ամենէ աւելի առուտուր և յարաբերութիւն ունեցող և ամենէն մօտ եղողն Աղճատաղն ըլլալուն համար՝ ասոր գիւ-ղերն ալ նշանակել ուզած ենք։ Որք են.

## ՔԻՒՐԷՃԻԿԻ ՄԷՋ

Արդօ, Գարա Թէրզի, Պէքսիմ Պէրէ, Թօփալ Հիւսէյին, Պալահաճի, Հարուն Ուշաղը, Էօքսիւզ Ու-շաղը, Պէքիր Ուշաղը. Քիրլի Ուշաղը, Ամուգլու Ու-շաղը, Գօղլուճա Ուշաղը, Թիմուրճիլէր. Թաթար Ու-շաղը, Ջինար, Բալանկա, Հաղըգլը. Թանըգլը, Քէ-փէզ, Քէօր Սլէյմանլը, Քէհեալար, Քէլէնլէր, Գա-

տիր Ուչաղը, Իքինճիլէր, Պայրամ Ուչաղը Թաւիկ-րան, Գուպէթ Ուչաղը, Փօլատ, Խանչարլը Ուչաղը, Քէլլէր Ուչաղը, Տէվէլէր, Կաճիգլը, Թումուգլը, Սարը Հաճի, Զօպան Ուչաղը, Մէզէրէ, Շէմշիկ, Գօլ-լու, Պիլէմ Ուչաղը, Գասըմ, Փհնիքլի։

## ՔԻԻՐՆԷՑԻ ՄԷՋ

Եէչիլ Գալէ, Պէօյիւք Քէօյ, Քիւչիւք Քիւրնէ, Լէվէնտ, Սագալը Ուզունլար, Օսման Ուչաղը, Ան-ճար, Պաղ, Սավգան Ուչաղը, Այրամ Ուչաղը, Էնկի-զէկ, Ֆէթհաճգ, Քէրիմլի, Հալավիք, Կէլինճիք, Գուրչունլու, Քիւրճան, Գըզըլ Եաթաք. Սէօկիւտ, Զահմատին, Թախթալը, Իպօճուգ. Գայնարքա, Հա-սան Չէլէպի, Քէօքճիւ Քէօյ, Ղլղէթ Ուչաղը, Ճէվիզ-լի, Գատրր Իպրահամ, Եօզարը Քիւրտ Ապտալլը, Աչաղը Քիւրտ Ապտալլը, Ուզուն Հասէն, Կէօկճէօթ Ուզան Ուչաղր, Փօլատ Ուչաղը. Շէյխ Ուչաղը, Է-պէլէր, Քէօսէլէր, Պէօյիւք Անճար, Եօզարը Էօ-րիւքքիւ, Կարա Մաղարա, Ալիճրի Ուչաղը, Շէմս Ուչաղը, Րէսուլ Ուչաղը, Գիլիք Ուչաղը, Թուիք Ուչաղը, Տօղանլար, Մեհմանլը, Աղմաղարա, Պաղճէ Տամը, Խարթութ, Բալաղ Ուչաղը, Գալօլար, Մու-րատլը, Սուրսաթ, Անսուր, Մուչովկայ, Այվալը, Գըզըլ Մաղարա, Սէլիմլը Եօզարը, Սէլիմլի Աչաղը, Էլվար Ուչաղը, Պէճիր, Սօֆուլար, Գարլըգ, Զօրա-ղը, Գօլհագ, Պըյըգ Պօղազը, Պաչ Ուզան, Թէրսէ Խան, Կէօկէ Պագան. Գարնճալօգ. Զայ Քէօյիւ. Սուլ-թանլը. Նամէգլը. Ֆըրընճլար։

## ՀԱԳԻՄ ԽԱՆԻ ՄԷՋ

Գալէ Մահալէսի. Եէնիճէ. Էրմէնի. Քօչու Ու-զուն. Ճիւզիւնկիւր. Սարը Քըզ. Պըտրէն. Պասագ.

կէնճուշաղը․ Էսիլու․ Տուճր․ Շէրղը․ Պօզուգը․ Ալ-հիչ․ Ջանագ Բունար․ Քիրման Ուշաղը․ Հաճիլէր Ուշաղը, Մուլլա Իպրահամ, Սըզան Ուղաղը, Թաթ-գըգ, Սաման, Ուղուրճըգ, Գօզ Տէրէ, Գարա Կիւ-չիւք։

ԳԻԽՂՕՐԷՔ ՉԻՖԹԼԻԿԻ

Չիֆթճի Պաշի, Հէքիւքէ, Գրգան, Չիյարէթ, Ջէյվէ, Շէյխլէր, Մուսթուրը, Բէրթէկ, Աւշար, Ըլըճագ, Աշաղը Էօրիւքճիւ, Էօրէն, Գօրան Կէօլ, Տէ-րէ, Ալմաչաթը, Էսէնլը, Էկին, Մէհմանըլ, Պահրի, Եաղմարլու, Գալէնտէր, Կէօլ Բունար, Քէօր Սլէյ-մանլը, Պապէր, Տէտէ, Գալը Կասէ, Գարա Բունար, Ալմաչաթը, Քէօսէ Հաս, Միւզէվիր Քէօյը։

# ՔԱՂԱՔԱԲՆԱԿ ԵՒ ԳԻՒՂԱԲՆԱԿ ՀԱՅՈՑ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՔ ՔԻՒՐՏԵՐՈՒ ՀԵՏ

*Մալաթիոյ հայուն վրայ ամէն կերպիւ վստահութիւն և հաւատարմութիւն ունին իր շրջակաբընակ բոլոր գիւղացիները։ Հայք՝ ասոնցմէ աւելի վրանաբնակ կամ չուողներէն Քըրիւ (քիւրտ. կնքահայր) (*) կը կոչուին և ի նշան սերտ յարաբերութեան զաւակնին թլփատելու ատեն կնքահայրութեան կը հրաւիրեն զհայս, թլփատելն նոցա գիրկը դնելով և որոց վասն ոչ միայն իրենց բուն կնքհօր՝ այլ անոր բոլոր ազգատոհմէն ամէն պատիւ ու յարգ կ'ընծայեն, ինչպէս, եթէ այս վերջիններէն մին ոևէ գործով կամ ստիպմամբ իրենց մօտ գայ՝ անոր համար անհրաժեշտ կամ խոյ մը, կամ այծ մը, կամ գառն մը մորթելէ զատ՝ եթէ ծախելու ապրանք ունի թէ իր գիւղին կամ օպային մէջ և կամ շրջակայ գիւղերը տանիլ ցրուել և առանց քիւրային ոևէ յօգնութիւն տալու ինք անձամբ առնելիքները հաւաքելով բեռ կը բառնէ և իր կողմէ մասնաւոր պարգև մը (պարկ, կապերտ. գորգ, ևն.) տալով և անվտանգ տուն ժամանեցնելու համար մինչև քաղաք հետը կուգայ։*

*Կալերու ժամանակ որևէ գիւղացիք մինչև որ հայ արհեստաւորք չերթան, արմտեաց գինը չեն որոշեր, ինչու որ արմտեաց գինն պէտք է արհես-*

---

(*) Եւ կամ բըսմամ = հօրեղբօրորդի։

*տաւարները որոշեն ու ըստ այնմ որու որ արմտիք պիտի տան, կամ պարտատէրեր որ պիտի պահանջեն տան ու պահանջեն։*

*Արհեստաւոր կամ փերեզակ որեւէ գիւղի կամ գիւղախումբի մէջ առեւտրոյ համար շրջագայելու ատեն եթէ կորուստը ունենայ կամ կողոպուտ տայ՝ ինչ կ'ընեն—կ'ընեն այդ կորուստը կամ գողօնը գըտնելով՝ կը յանձնեն։ Եթէ կողոպտողը կամ գտնողը տալու դժուարութիւն ընէ, բռնի ու զէնի զօրութեամբ կ'առնեն։ Եթէ գողօնը կամ կորսուած նիւթ ու ապրանքները գիւղարնակ հայու լինի, տարբեր կերպով կ'առնուի, այսինքն գտնուած տեղէն ապրանքին եօթն պատիկ՝ արժէքն ալ կը հատուցուի ապրանքի տիրոջ։*

9 *Մարտ* 1899

# ՎԵՐՋ

# ՄԱԼԱԹԻՈՅ

# ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌԸ

Պատրաստեց՝

ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋԵԱՆ

16 Մայիս 1899

# Ա.

*Ա* — Յետադաս մասնիկ բայերու որ խօսակցութեան մէջ կատարեալի կամ անմիջական գործութիւն կուտայ։ Զոր օր. կ'երթամա', կուգամա' = Անա' կ'երթամ. անա' կ'ուգամ։ Երբեմն վերջնական պատասխան մը տալ կը նշանակէ. Օր. չիմ գարա' = երբէք պիտի չիգամ։

*Աբա*(*) — Եղբայր (բառ մանկական)։

*Աբէթ* — Այրած կտաւի կտոր։ *Աբեթինոտ* — Մսկլաւնոտ։

*Աբլօ* — *Աբըլօ* — Աբրահամ։

*Ագի* — Պոչ, ձետ։

*Անգահ* — Ագահ, որկրամոլ։

*Ադամա—մութ* — Արշալոյսէն առաջ գոյացած խիտ մթութիւնն որուն կը յաջորդէ արշալոյսը։

*Ադամա—տարուան* — Հին, դարաւոր։

---

(*) Մանկական բառերու գրեթէ ամբողջութիւնը կը յուսանք թէ' մօտերս պիտի տեսնուի Հ. Եփ. Պէննէեանի նոր աշխատասիրած Մալաթիոյ տեղագրութեան մէջ։ Ըստ որում մանկական բառերը հոս առանձին տեղաւորել ստիպողական չենք համարիր։

Ադլաս — Բենեզ, միտաքսէ գործուած։

Ազոխ — Ջնասած, թթու խաղող։

Ազլել — Ածիլել, սափրել։

Աթըլել — Նետել, արձակել։

Աժնութիւն — Աժանութիւն, Առատ տարի։

Ալ — Մերթ երեւելի եւ մերթ աներեւոյթ էակ, որ կ'երեւի ամուսնացեալներու քառասունքը չլմնցած, չիկահեր, սպիտակ լաչակով եւ Նիհար։

Ալուճ — Դեղնագոյն վայրի պտուղ, թթուանամ։

Առաքիա — Պահանք։

Անճարակ — Զքաւոր, աղքատ։

Աղնձել — Խարակել, մազերը այրել։

Աւլէ — դարձեալ։ Աւլէ եկաւ = Նորէն եկաւ։

Արայէշ — Որդոց (սամալըզ)։

Ախճին — Աղջիկ, դուստր։

Առվու — առու։

Ամու — Հայր կամ Հօրեղբայր։

Աղբիր — Աղբիւր։

Արգակ — Արեգակ։

Արախ = Օղի։

Առկա — Ակռայ։ Առկան կոյրելիք մարդ է = շատ խիստ, վայրագ մարդ է։

Աղօս — Աղիւս եւ աղուէս։ Աղօսի խելք ունի = աղուէսի չափ խելացի է։

Ապուր — Կերակուր։

Անորգել — Հայհոյել։

Ալիր — Ալիւր։

Աշել — Աշկել. սպասել։ Աշի աշէ, տեղերը դլօխդ քաշէ = սպասէ, սպասէ, յոյսդ կտրէ։

Աչք — Աչք։ Աչկս էլլա = աչքս ելնէ։

Ամպար — Ամբար։

Անկաճ — Ականջ։

Աշունք — Աշուն։

Արախճին — Ճերմակ կտաւէ շինուած գլխարկիկ. պարսկերէն «արագչին» բառէն։

Ասսեղ — Ասեղ։

Արգև — Անձրև։

Արայիշել — Պղնձեղէնի ևայլն խորս ու բորտ տեղերը մկրատել, բոլորտիքը շտկել։

Անշահ — Անօգուտ։ Անշահ տղուն մէկն է = անօգուտ տղայ մըն է։

Անծառ — Կնատ։ Անծառ մօրուք = ապիկար։

Աշխել — Կերակուրներու մնալով թթուիլը։

Աշկապուկ — Աչք-կապուկ խաղ։

Աշղ — բնական տաղանդի տէր, երգիչ, բանաստեղծ։

Աննուխ — Անանուխ։

Անկուտ — Առանց սակի, անխելք։

Անվլա — Անլուայ։

Աննի — Առանց աղի, անլի։ Աննի ապուր կլմանի = անհամ մարդ է։

Առպա — Շիտակ չեղող, անհաւասար կչիռ։

Առնէտ — Խօսքը շուտ հասկցող, նախանձոտ։

Արպանք — Ապրանք։

Ակոբ — Հայերէն չգիտցողի մը քով հայ կը նշանակէ։ Ակոբ մի տուր ու կորսուի = հաց մը տուր դրկէ։

Անպակ — Ամպակ, անշնորհք։

Անդէա — Տգէտ։ Ինչ անդէտ խանէ = տգէտ է։

Արմաղան — Օտար երկիր, մասնաւորապէս Երուսաղէմ գացողներուն բերած նուէրները։

Անբան — Անգործ։ Ավլած անբան մարդուն չէրէն պահէ = անգործ մարդուն...

Ավլած — Աստուած։

Աող — Աստղիկ, բաղդ։ Աողը բանուկ է = բաղդը յա

Ջող է, բարեբաղդ է։

Անլեզու — Լեզու չգիտցող։

Անդուղին, Անգալիան — Կորստեան վէմը, ուր երթողը ոչ կրնայ լուր ղրկել և ոչ ետ գալ։

Աճուտել — Լուացուելիք լաթը ձեռքով սեղմել։

Անարատ աշխարք — Ամէն տեղ։ Անարատ աշխարք ձանձուորեցաւ = ամէն տեղ տարածուեցաւ (վարքը, համբաւը)։

Անթափ — Հաց եփած ատեն թոնրին բարկ եղած ատեն ջուր թրծող հացը։

Ապրցու — Ցաւար, պլղուր կամ կորկոտ։

Աչք տալ — մէկուն չար նայուածք մ'ուղղելով վնասել, հիւանդացնել։

Աւազան — Եկեղեցւոյ Ս. աւազանը։

Աղնալէկ — Աղեղով մէկ անգամուան աղնուածը։

Աղող — 1. Լպուտի աղեղ, 2. ծուռ։

Անհուր — Առանց իւղի պահոց կերակուր։

Առէջ — Ջուլհակին մանածը չտկելը, գործելու պատրաստած մանածը։

Աշխարհք մանալ — Կարգուիլ, ամուսնանալ։

Առք — Եռք, երկաթի կամ պղնձի եռք տալ։

Առիք — Տանը վրան, տաստաղ։

Անտագա — Դերձակներու չափ մը, կանգունէ քիչ պակաս։

Ալզէր — Ներկարարի իւղ, գեղնարակ։

## Բ.

Բաժնուիլ — Եղբայր եղբօրմէ բաժնուիլ, զատուիլ։

Բալլի — Բանալի։

Բալըֆիլ — Պահուըտիլ։
Բալըֆուկ — Պահուըտուք խաղ։
Բանճար — Բանջար։
Բանտակ — Բեռ մը փայտին կէսը, մէկ կողմի կապոցը։
Բանտեղ — Բան բանելու, գործելու տեղ։
Բալուղայ — Նաշիհէ շինուած մանկանց ապուր։
Բարկ — Սաստիկ վառած կրակ։
Բրդոն — Կտոր։ Բրդոն բրդոն = բզիկ բզիկ։
Բաղլա — Բակլայ։
Բաղնիք — Բաղանիք։
Բերանփոխ — Իւղով կերակուր ուտելէ վերջ, երբեմն պահք կերակուր ուտելուն կ'ըսուի։
Բիլաւ — Պլղուրէ կամ բրինձէ շինուած կերակուր։
Բրինծ — Բրինձ։
Բռնիլ — 1. բռնուիլ, 2. կատարուիլ։ Գործը բռնաւ = գործը լմնցաւ, կատարուեցաւ։
Բոշա — Գնչուի բնութիւն ունեցող կին։
Բըթ-բըթ — Կաթելու ձայն (անձրեւի)։
Բահել — Գետինը բահով փորել։
Բահւոր — բահ բահող, մշակ։
Բանուած — Նկարուած։ Ոսկի բանուած = ոսկենկար։
Բանուկ — Շարունակ գործող։ Բանուկ ջաղացք = միշտ պարապ չկեցող, չահաւէտ ջրաղաց։
Բանպակ — 1. բամպակ, 2. ճերմակ (Նմանողութ.)։ Մազերը ճերմակ բանպակ կտրեր են = ծաղկեր են։
Բուք — 1. հով, 2. արտաշնչեալ օդ, 3. քուրայ։
Բուլվառ — բուրվառ, ծխանոց։
Բարտի — Ծառ (գաւառ.)։
Բզեզ — Իշամեղու։
Բրշէքլը — Ստեպղին։

Բոռ — Մանրուք հողի, չուքուրի եւայլն։
Բորոտ — Բողոքական իմաստով գործածելի։
Բողկ — Ուտելիք կծու բանջար։
Բողող — Բղուղ, հողէ աման (քիւփ)։
Բղքտել — Ցօշոտել։
Բթրթ — Կորկոտ, ալիւրէ եփած կերակուր։
Բունկալ — Հաւին բոյնը դրուած հաւկիթ մը, որու վրան հաւը իր հաւկիթները կ'ածէ։

## Գ.

Գալ — Գայլ։
Գագա — Ճերմակ ալիւրէ և իւղէ շինուած նախշուն չոր, ամուսնացեալ օրիորդք մարանց տունէն կը տանին կեսրոջ տունը, բաշխելու։
Գաւալակ — Եղէգով շինուած խոշոր սէլէ։
Գարեկ — Աչքի կոպերուն վրայ երբեմն ելած մանր ուռոյց, որուն վրայ բուպ կապելով կ'անցնի։
Գութա — Վարունգի համով ճերմակ երկայն բան-ջարեղէն։
Գեղ — Գիւղ։ Գեղացի = գիւղացի, ոչ կրթեալ։
Գլխուէր — Էրիկ, այր ամուսին։
Գրող — Հոգի առնող։ Գրողը տանէ = մեռնիս։
Գոռ — 1. Բաղնիքի աւազան ուսկէց կը վազէ լող-նալու տաք ջուրը։ 2. Սատակնոցի քար։
Գովել — 1. Գովեստ տալ։ 2. Մեռելի վրայ լալ, կոծել։
Գործելի — Ցրդիի ածուխ։
Գերեզմէր — Գերեզմանատուն։

## Դ.

*Դադրուկ* — Դիմացկուն, տոկուն։
*Դանակ* — Ջմելի։
*Դաշոն* — Տաշտ (խմոր շաղելիք)։
*Դարտակ* — Մէջը պարապ ցող եղէգնէ չինուած։
*Դգասկէն* — Տղաձկան, գուակ ծնող կին։
*Դպղա* — Հիւանդութիւն մը որ կապուտցնելով կը մեռցնէ իր զոհը (մանկիկ)։
*Դորդա* — Բակ, գաւիթ։
*Դունչ* — Կզակ, թուշ։
*Դոն* — Դուն։ Դոն ինչ կսսա = դուն ինչ կ'ըսես։
*Դոռ* — 1. Դուռ։ 2. Տուն-տեղ։ Դոռդ կղպուի = Դուռդ գոցուի, չքանաս։
*Դուդում* — 1. Դդում։ 2. Անկուտ, անխելք։
*Դդմիլ* — Խոֆիլ, հիւանդանալով դեղնիլ։
*Դդում-գլուխ* — Ապուշ։
*Դգալնոց* — Դգալ դրուելիք փայտէ կմն։
*Դեղնուց* — Հաւկիթին դեղին միջուկը։
*Դեղնութուն* — Դեղնցնող հիւանդութիւն։

## Ե.

*Եէկին* — Սաստիկ։ Եէկին հիւանդ — Սակտիկ...

## Զ.

*Զագար* — Զագար։
*Զարգարդար* — Ծաղկազարդ։

*Ջնել — Ջարնել, սպաննել։*
*Ջրբել — Սրբել, կեղտը հանել։*
*Ջորպա — Հաստ դաւազան, բիր։*
*Ջուալ — Իշուն ջուալը։*
*Ջլարել — Շտկել, յարդարել։*
*Ջօպի — Գիրուկ մարդ։*
*Ջօմպա — Երկաթ գործիք կլոր սեպաձեւ, որ ծակուելիք բան մը խարաղայով եւ ջօմպայով կը ծակուի։*

## Է.

*Էգի — Այգի, պարտէզ։*
*Էփել — Եփել, եռացնել։*
*Էնդի դէմ — Հանդերձեալ աշխարհ, դատաստան։*
*Էքսի — Դատարկապորտ, սլնքատ։*
*Էրկան — Երկայն։*
*Էրիշտէ — Խմորէ շինուած տեսակ մը ժահրէ։*
*Էս — Այս։ Էս մարդը = այս մարդը։*
*Էդ — Այդ․ Էդ խօսքը = այդ խօսքը։*
*Էն — Այն։ Էն բանը = այն բանը։*
*Էմէ — Հասկցար։ Գնասուք էկօ, էմէ = գնա եւ եկուր հասկցար։*
*Էհ — Էհ։ Էհ պէլքէ էդպէս է = էհ, կարելի է այդպէս է։*
*Էնել — Ընել, վնասել։ Էնողը կը գտնա = ընողը (չարիք եայլք) կը գտնէ (կը վնասուի)։*
*Էլլօր — Օրօր։*
*Էրկաթ — Երկաթ։*
*Էվել — Աւելի։*

*Էվիլ* — *Աւել։*
*Էանկող* — *Թոնրին տաքի կողուած հացը։*
*Էրկինք* — *Երկինք։*
*Էխտել* — *Մէկու մը յանցաքը վրան հաստատել։*
*Էրի-կնիկ* — *Այրի։*
*Էշկնտում* — *Ս. Սարգիսի չորեքշաբթին, էշերու մազը կնտելու սովրութիւն։ Այն օրը կ'ըսուի թէ Ս. Սարգիս իր քուռակը կնտած է։*

## Ը.

*Ըլլիլ* — *Ըլլալ։ Խելօք կըլլիս թէ չիս ըլլիր = Խելօք կըլլաս թէ չես ըլլար։*
*Ընծի* — *Ինծի։ Ընծի տուր — Ինծի տուր։*
*Ըռզաք* — *Ինչք, ապրանք։*
*Ըռանտա* — *Հիւսներու տախտակ յարդարելիք գործի (ռանտա)։*
*Ըժօք* — *Ուժով, զօրաւոր։*
*Ըմնալ* — *Հասկնալ, զգալ, իմանալ։*

## Թ.

*Թագաւէր* — *Թագաւոր։ Էրկնաւէր Թագաւէրս ղոն հանիս։*
*Թաղար* — *Ներկարարի կարաս։*
*Թարթ* — *Աւելցուք, մրուր։*
*Թանթաղ* — *Կոկուղ, կարմիր միս։*
*Թումիլ* — *Թմրիլ, խամրիլ։*

*Թուր* — Թուր (գըլըճ)։
*Թեքնել* — Երես չտալ, նախատել։
*Թունչ* — Թուչ։
*Թութ* — Թթենիի ծառ։
*Թէփել* — Թափել։
*Թթխմէր* — Թթխմոր։
*Թիփ* — 1. Թեփ 2. ոյժ։ Թիփը կտրի = ուժաթափ ըլլա։
*Թնկր* — Ուչ եփած մսի կամ բանջարի կըտուրի։
*Թիւ* — Թեւ։
*Թէզնիք* — Տանտիկնոջ գործ տնած տեն թեւերը անցուցած կապուէ թենոց։
*Թրիք* — Կովու աղբ, քակոր։
*Թըփ-թըփ* — 1. Կաթիլի ձայն 2. տաւարց թոնրի հաց եփելու ձայն (թափլամա)։
*Թմպլ* — Կլորտիկ, ապուր։ Թմպլ թմպլ զաւակներ ունի = կլորիկ, սիրուն զաւակներ։
*Թոմիլ* — Կծկտիլ մնալ։
*Թոֆտել* — Թոթվել, սրսկել։
*Թուխ* — Ամքիլ կենալ (հաւուն)։
*Թարխանա* — Թարխանա։
*Թէրթիչ* — Թարթիչ, աչքի արտեւանունք։
*Թոլ* — Թոյլ, մեղկ։
*Թրջոց* — Թուրջ, թրջոց դնել։

## Ժ.

*Ժանրէ* — Խմորէ չինուած մանր քարիի մեծութամբ ցաւար, որ իւղով տապկելով փիլաւի մէջ կը խառնուի (անուշահամ)։

ժանիք — դէմք, երես։
ժանկ — ժանգ։ ժանկոտ = ժանգոտած։
ժանկոչ — ժամակոչ։
ժողվել — ժողովել, հաւաքել։
ժառանգ — Վայելում, մեզօք պստկի համար կ'ըսուի. «ժառանգ չեն առնար»։
ժարմաղ — Ալիւր մաղելիք բարակ մաղ, չարմաղ։

## Ի.

Իս — Ես։ Իս ու դոն = ես և դուն։
Իրիսկին — Քահանայի կին։

## Լ.

Լարա — Նոսր և դիւրամարս կերակուր, որ խոցի կամ ուռոյցի վրայ կը դնեն։
Լակոտ — Շան ձագ։
Լակ — Կովու կերակուր, չիւով թեփով խառն։
Լալլօ — Խելքը շատ չեղող։
Լանթակ — Ալիւրի և բրինձի մանրուքէ կերակուր։
Լանկա — Վարունգի երկար տեսակ մը։
Լանկօ — Տխմար. ապուշ։
Լեղիճ — Խայթող խոտ մը, եղինճ։
Լէչէկ — Տափակ առարկայ եռանկիւն։
Լաւր — Լիսեռ, ճախարակին տափակ մէկ գործիքը, որ ճաղին վրայ կ'ամրացնեն։
Լեսան — Ցեսան (պիւէկի)։

Լողնալ — Լոկնալ։
Լօլօկ — Մրգեղէն (բառ. ն.կ.)։
Լովիկ — Լուբիայի հատիկ։
Լխմել-լխմոտել — Ձեռքով մէկը տճատել, չարչըր-
կել, առանց սատրիկ փասելու։
Լխլխալ — Ծերութենէ դողդղալ, զառամիլ։
Լխլխան — Լխլխացող պառաւ կամ ծերուկ։
Լզակ — Լծակ։
Լիտիր — Լիտր (պաթման)։
Լովկի տերև — Լուբիայի տերևով եփած կերակուր։
Լեղակ — Կապոյտ ներկ։
Լուսնկան — 1. Լուսին 2. հաց եփած ատեն մանր
տղոց համար եփուած չրջանակաձև չոր։
Լէպլէպ — Հիւսնի միջակ սղոց, երկու մարդով գոր-
ծածելի։
Լօ — Լու։
Լօթել — Լափել (կերակուր)։

## Խ.

Խաբել — խաբել։
Խազնել — խածնել։
Խամ — Ջհասած պտուղ։
Խազվալ — Ածուխի մանրուք։
Խալէմ — Ջրի դդում. օդապարիկի ձևով։
Խալխզոն — 1. խխունջ, 2. մսին իւղոտ մասնատա-
պակածը։
Խարուկ — Հինցած կտրտած մուճակ։
Խաշխաշ — Մեկոնի աֆիոնի հունտ։

Խարկել — Կրակով խարովել (իւթմէք)։
Խզաել — խզել, պատռել։
Խփել — Գոցել, փակել։
Խուփ — Գոցուած, ծածկուած։
Խլլինք — խլինք։
Խուփ գոռ — Բաղնիքի ջուր չվազած աւազանը։
Խլխլալ — Երերալ (ակռայի)։
Խմխիլ — Ջափազանց թրջիլ (անձրեւէն)։
Խլաբբիլ — խելքը վրայ գալ, յիշել։
Խորշուք — Ցաւարի, յարդի կամ ալիւրի խոշորուք։
Խոխալ — Աչք չվերցնել, նախանձիլ։
Խախտել — Տեղայը թուլցնել, երերցնել։
Խաւիզ — Ալիւրով և իւղով խիւս։
Խաւ — Ասուի կամ գլխարկի խաւ։
Խամ-խաս — Թերահաս պտուղ։
Խխտել — խեղդել։
Խոնջա — Հարսանեկան ծրար որ փեսին լաթերը կը
    պարունակէ։
Խրզել — խզարով կիսել, կտրել։
Խրզար — Փայտ կտրելու գործիք։
Խնծոր — խնձոր։
Խնկաման — խունկ դնելիք տուփ։
Խինդ — խենդ, յիմար։
Խշխշուք — Արտի կտրտուք։
Խթում — խթում, նաւակատիք։
Խորդ — խորդ մայր կամ եղբայր։
Խորվել — խռովել։
Խռկալ — խրռչել (կենդանեաց)։
Խորդալ — Քնացած տեղը խռռ-խռռ ձայնել։
Խոնճան — Վարտիքի կապ։
Խոնճենալ — Ցագնիլ։
Խեվ — խենդ։

Խլնալ — Խենդենալ։
Խոշրուք — Մարմնոյ վրայ ելած թեփի տեսակ խոցեր, հիւանդութիւն մը։
Խնկածխիկ — Խունկ ծխելիք աման։
Խարազա — Երկաթէ ուլունք որոյ վրայ երկաթ կամ պղինձ կը ծակուի։
Խարտել — Խարտոցով յղել, փայլեցնել։

## Ծ.

Ծալել — Լաթեղէնները իրարու վրայ բերելով ծըրարել։
Ծաղէկ — 1. ծաղիկ։ 2. Ծաղիկի հիւանդութիւն։
Ծամմոց — Ծամոց, պատառ։
Ծառ-ծակիչ — Ծառ ծակող թռչուն։
Ջասկել — Ծածկել, գոցել։
Ծաղկիլ — 1. Ծաղիկ բանալ։ 2. Ծաղիկի հիւանդութիւն ունենալ։
Ծանտր — Ծանր։
Ծխել — Խունկ կամ որևէ բան վառելով ծխել։
Ծոմ — Առանց ուտելիքի ծոմ պահել։
Ծէր — Ծայր։ Ծէրը ճոթը պէյլու չէ = ծայրը յայտնի չէ։

## Կ.

Կաթոք-չորվա — Կաթով բրինձով ապուր։
Կաթմրէ վարդ — Ճերմակ վարդ։

կաժ — Մանածի կապոց։
կալմէջ ընել — Շրջապատել, բոլորել։
կախ — Տանձի կամ խնձորի կիսուած չորցուածը։
կախուկ — Կողանդի նախորդ օրը կախուկ կ'ըսուի։
կավլուն — Կանգուն։
կաղվնալ — Ընկուզին կանաչ փեճիկը թուլնալ։
կամկա — Փայտի տաշուք։
կախարդ — Խարդախ, ջրի նայող մարդ։
կակակ — Հաւկիթ (մնկ. բառ)։
կակղնալ — 1. կակղանալ, 2. սիրտը իջնել, խանդրիլ։
կամա — Թուր։
կամար — Մահիկաձև, շրջանակաձև։
կայնիլ — 1. կենալ, 2. ոտքի ելնել։
կանանչ կարմիր գօտի — Ծիածան
կանչել — Երթած տեղէն ետ դարձնել, ետ կանչել։
կապայ — Կապոյտ բենկէ չափիկ։
կապ — 1. չուան, 2. ամուսնացողները զուգաւորութենէ արգիլող կախարդական կապ։
կարաս — Խոշոր բղուղ։
կաքաւ — Կաքաւուկ։
կաքկրճալ — Հաւուն կրկչալը, հաւկիթ չինելը։
կաֆ կարել — Սպառնալիք ընել։
կրել — Շալակով կամ ուսով բեռ տանիլ։
կթել — 1. կով կթել, 2. մեղու կթել, 3. մէկը խաբելով ձեռքէն դրամ առնել։
կթան — Կաթ տալող կով կամ այծ։
կթառուք — Նորածին մանկանց ազգականները հաւաքուելով ոսկի կամ լաթեղէն կը նուիրեն՝ ատոր կ'ըսուի կթառուք «կթուքը ե՞րբ է»։
կարկատան — Լաթեղէնի մաս, ծուէն։
կըժ — Ծառերէ վազած խէժ (քիթրէ)։
կթտել — Կարկատանը խոշոր խոշոր կարել։

կթնոց — Կռուց։ կթնոցել = կթցահարել։
կլորտիկ — Բոլորովին կլոր։
կծիկ — Դերձանի կլոր գունդ։ կծկել = կծիկ շինել։
կծկտիլ — Պզտիկնալ, ամփիլ մնալ։
կսամաշկ — Հաւուն կիսատ ածած հաւկիթը։
կրծան — Կուրծքը կապելիք անձեռոց, տղայք կե-
   րակուր չթափելու համար վրանին։
կրծել — Ակռայով խածնել բան մը, փրթուրել։
կլլա — Ստակ ձգելիք արկղիկ։
կլող — Թաց աղբի կտոր։
կլլտել — Կլտտել։ կլլել = կուլ տալ,
կոճակ — Ծարմանդ։
կռուրտիլ — Կռուիլ։
կոտիլ — Ջեփիլ (կերակուրի ընդեղէն կամ միս)։
կոփել — Տաշել, յարդարել։
կժալ — Ջուրին կամ կերակրոյ եփած ատեն հանած
   ձայնը։
կարագ — Անլի իւղ։
կապէտ — Կապոյտ։
կաղնտ — Կաղանդ։ կաղնտճէք = կաղանդի օրը պըզ-
   տիկներուն տրուած ստակ կամ այլ ինչ։
կաղնտել — Կաղանդի օրը մէկու մը նուէր տալ։
կնտել — Մազերը խուզել, կարել։ (Կունտ ընել բա-
   յէն)։
կորդ — Կար կարելու ատեն երկու կտաւին ծայրե-
   րը իրարու եկած տեղ։
կավար-կավար — Առու՝ ուսկից ջուրը կը վազէ ա-
   կօսները։
կովլակ — Կովուն լակ տալիք փայտէ աման։
կճեպ — Պղնձեղէնի վրի կեղեր։
կոզել — Հացը թոնրին վրայ կպցնել։
կուրպան — Զոհ, մատաղ։

Կոպ — Աչքի կոպերը (փարագ)։
Կորիզ — Բամպակին մէջի մանր հունտը։
Կոխկռտել — Ոտքին տակ առնել, աւրել։
Կռա-կռա — Ագռաւի մեծութեամբ գոյնզգոյն թռչուն։
Կեղվել — 1. Կեղեւը հանել։ 2. Կաշին քերթել։
Կիսնորդ — Ընկեր, զուլաղ (օրթագ)։

## Հ

Համբա — Ընկեր, վիճակակից։
Հանկոչտ — 1. Հանգոյց։ Ամուսնական միութիւն։ Աստուած հանկողնին ամուր ընէ, Աստուած ի-միասին երկար կեանք տայ։
Հալըս — Անաւօտ, հաւախօս։
Համպրել — Համրել, թուել։
Հաւսար — Հաւասար, վիճակակից։
Հաւսրել — Հաւասարել, շտկել։
Հաւնիլ — Հաւանիլ։
Հաւտամ — Հաւատալ։
Հաւտում — Հաւատարմութիւն։
Հում — 1. Չեփած։ Հում անհաճոյ խօսք։
Հերսայ — Հերիսայ, կերակուր։
Հերսաթիլ — Սրդողիլ, սրտաբեկիլ։
Հերու — Անցած տարի։
Հողլաթ — Մանկանց ոտքերուն տակ դրուած լաթը, որ տաքցուած չախաղը կը պարունակէ։
Հուանտ — Հիւանդ։
Հունան — Հոն։ Հունան հուսան = հոս ու հոն։
Հուլում — Ուլունք։

Հոստեղ-հոստեղուկ — հոստեղ, հոս։
Հոնտեղ-հոնտեղուկ — հոն։
Հոդտեղ-հոդտեղուկ — Այդտեղ, հոդ։
Հարսամուտուն — Հարս բերուելիք տունը։
Հաւեղ — Խաղող։
Հաւուն կաթը — Ամենէն հազուագիւտ բան։ Միր էգին հաւուն կաթը կայ = մրգեղէն եւայլն ամէն ինչ։
Հալէ — Իւղով, բուլղով եւ նաշիհով շինուած անուշ։
Հնթալ — հոտոտել։
Հըմմա — հիմա։
Հարդէ — Մինչեւ որ։ Հարդէ չիգամնէ չերթաս=մինչեւ որ չիգամ՝ չերթաս։
Հարդեւ — Անձրեւ։
Հնընալ — Վշտակրիլ, մտածել։
Հնընուք-հնհնուք — Վիշտ։
Հոտ-հոտրանք — հոտ, գարշահոտութիւն։
Հերիկմատ — Երկրագործի գործիք, երկու ճիւղէն։
Հէնք — Ջուլհակին շտկած մանածը, որ պիտի գործուի։
Հենել — Մանածը շտկել, գործելու պատրաստել։
Հիննէ — հինա։ Հիննէ դնել = հինայել։
Հագուգայ — Ագուգայք։
Հաստուան — հաստատուն։
Հրել — Մէկը նստած կամ կայնած տեղը հրել։

## Ջ

Ջան — Ջայն։ Ջան ձուն մի հանէք = լուռ կեցէք։
Ջանձուօրիլ — Անուն ստանալ, համբաւը տարածուիլ

Ձուածեղ — Ձուազեղ, հաւկիթով նօսր կերակուր։
Ձիթ — Ծամելիք ձիւթ (սագըզ)։
Ձըյնիլ — Ծնանիլ (միմիայն չան համար)։
Ձոր — Ջրատ տեղ ուր կնիկները կտաւ կը ճերմըկ-ցնեն։
Ձուիք — Տան պատերուն վրի ծածկոց, քիւ։
Ձայնել — Ցորենին մէջի քարը մաքրել, ձեռքը տաշ-տին մէջը լուալով։
Ձնծախ — Ձիւն և կարկուտ, սաստիկ պաղ նշանա-կող։

## Ճ.

Ճակատ — Դէմը, ճակատ։
Ճարի — Աչքը բաց, աշխոյժ, գործունեայ։
Ճամբայ — Ճանապարհ, միջոց։
Ճաթիլ — Ճաթիլ, փշրիլ։
Ճիրագ — Ճրագ։
Ճնկր-ճնկր — 1. Սաստիկ հովի ձայն։ 2. Մէկուն յանդգնութեամբ ուրիշին դէմ գնելը։
Ճղայ — Մատաղ ճիւղ, մորչ։
Ճըռ-ճըռ — Կաթիլ կաթիլ իյնող ջրի ձայն։
Ճուվալակ — Ոստայնակ։
Ճերմկուց — Հաւկիթին մէջի ճերմակ մասը։
Ճուվալ — Մազէ կամ բրդէ աման (ջուվալ)։
Ճըվր-ճըվր — Ճնճղուկի ձայն։
Ճու-ճու-ճու — Հաւերը ներս կանչելու ձայն։
Ճունճուղուկ — Ճնճղուկ։
Ճոթ — Ծայր։ Ծէրը, ճոթը պէլլու չէ=ծայրը յայտ-նի չէ։

Ճիւշմարիտ — Ճշմարիտ, իրաւ որ։
Ճարնաճուրճուր — Ցատանոց։
Ճնճղուկ-հացիկ — Բազմատերև ուտելու խոտ մը։
Ճուպար — Մէկու մը ցաւած տեղին կտաւով լաթ դնել։
Ճրռ-ճրռ — 1. ճախարակի ձայն, 2. բամպակի մեքենայ։
Ճաղ — Ճախարակին երկաթէ թելը մանած մանելիք
Ճուտապա — Թարխանա եփած ատեն պղինձին տակը փակած մասը։
Ճմռել — Լուանալիք բաները ձեռքով տրորել։

# Մ.

Մարդամօտ — Քաղաքավար, ընտանի մարդ։
Մառնիլ — Մեռնիլ։
Մագոգ — Ոստայնանկի գործիք, որ կտաւ գործած ատեն միջին թելերուն համար կը նետուի, կկոց։
Մասուրա — Մագոգին մէջ ագուցուած դարտակ մը, մանածով փաթթուած։
Մառոն — Ս. Միւռոն։
Մանծախնոց — Շուկան մանած ծախելիք տեղերնին։
Մանծ — Մեծ։ Մանծ մարդ=երևելի, մեծ մարդ։
Մախրել—Աղտեղի ամանը մոխիրով լուալ, մաքրել։
Մախիր — Մոխիր։
Մաղել — Մաղէ անցնել, ցորենը մաքրել։
Մանկուք — Պզտիկ տղայ, մանկտիք։
Մանկօ — Անխելք, ապուշ։
Մանտրտիլ — Մեռնիլ։ Մանուկ մանտրտիս = չիզօրանաս։

*Մահանա* — Պատճառ, առարկութիւն։

*Մանուշակ* — մանիշակ։

*Մատնոց* — Դերձակին մատը անցուցած փոքրիկ մետաղէ գտակը։ Մատնի — մատանի։

*Մարխ* — Եղեւինի տաշուք՝ իւղոտ մասը, որ պղինձ հալուած ատեն հնոցին մէջ կը ձգուի։

*Մանուխ* — Կատուի ձագ։

*Մժել* — Ալիւրը տաշտին մէջ ջրով խառնել, շաղել։

*Մլօն* — Ջաղացպան։

*Մկնտօն* — մեծ պահոց առաջին Երկուշաբթին տուները կը մաքրեն, կը թոթուեն եւ մկներուն ծակերը բոհրած ցորեն կը լեցնեն։ Կ'ըսուի թէ այդ օրը մկներու տօնախմբութիւնն է։

*Մրխած* — մրոտած, մգլոտած։

*Մնալ* — մենամարտելով յաղթուիլ։

*Մայիս* — Կովու ազբ, թրիք։

*Մենծանալ* — Հպարտանալ, կոկոզանալ։

*Մառ-մառոտ* — Պղնձեղէնի անհարթ տեղերը (տամար)։

*Մառելնոց* — մեռելոցի օր։

*Մարմնոց* — մոմմենի։

*Մուրատ* — Խնդիրք, իղձ։

*Մարզակ* — Տուն շինուած ատեն սիւներուն վրայ շարուած ցրդիի ճեղքուած կտորներ։

*Մուղալ* — Ծառերու առաջին պտուղը, երախայրիք։

*Մուրաական* — Մուրացիկ, աղքատ։

*Մուր* — Ածուխի կեղտ, արատ։

*Մուկ* — Խելօք, խորամանկ։

*Մեղօք* — Եկեղեցւոյ օրինաց հակառակ եղած խնամութիւն։

*Մտարել* — Խորհիլ, մտածել։

*Մթնտիլ* — Մութնալ, խաւարիլ։

*Մութնուլուս* — Առաւօտեան աղօտ լոյսը։

Մուշակ — Մշակ, բանւոր։
Մրխիկ — Մանր ոջիլ։
Մկլտող — Մողէզ։
Մամա — Մեծ մայր, մօրը մայրը։
Մամլող — Մեղկ, ձեռքէն բան չեկող մարդ։
Միշմիշ — Ծիրանի (զէրտալի)։
Մաշկ — 1. Հաւուն կիսատ ձգած հաւկիթը։ 2. Ընդեղէն։
Մուրջում — Մրջիւն։ Մրջումրոն — Երեսի վրայ գոյացած խաւ ի խաւ հիւանդութիւն մը։
Մորթել — Կտրել մարդ կամ ոչխար։
Մշտար — Ցոռի, գէշ։
Մղտեսի — Երուսաղէմ գացող, մահտեսի։
Մրսէ՛ — Երնէկ։ Մրսէ՛ գլխուդ = Երնէկ գլխուդ։
Մանուկ — Ամէն գործի մանող, աչքը բաց։
Մանակ — Մենաւոր, առանձին։
Մորչ — Ծառի մատաղ ճիւղ։
Մաղման — Մաղ մանող և գործող։
Մջիկ — Միջինք։ Այս օրը ամէն տուն ընտանեաց թուոյն համեմատ մէկ մէկ հատ հաւկթաձև քիւֆթէ շինելով՝ ատոնց մէկուն մէջ մատանի մը կամ դրամ մը կը պահեն. պահուածը որո՛ւ որ ելնէ, ա՛ն բաղդաւոր է, կամ ընտանեաց «աէօվլէթ»ը այդ տարին անոր գլուխն է։
Մէրիլ — Մորիլ, զառանցիլ։

## Յ.

Յորտեղ — Ուրտեղ։ Յորտե՞ղ էիր = Ո՞ւր էիր։

## Ն.

Նա — Այն (արական)։ Նէ — Այն (իգական)։ Նա մարդը, նէ կնիկը։ Շատ անգամ կը գործածեն այս՝ բայց անգիտակցաբար։

Նազ — Հաճոյանալու ձեւ մը, կոտրտուք։

Նազուկ — Ճուհալակի գործիք, մանածը վրան փաթթելով վերջը կծկելու համար։

Նախշուն — Նկարուն, գոյնզգոյն։ Նախշուն մամ = Մէկու մը ներկայութենէն չախորժելով կ՚ըսեն թէ «հաեր նախշուն մամ զրկեցինք կարծես, որ անմիջապէս եկաւ»։

Ներկիզ — Նարկիզ (ծաղիկ մը)։

Նարեկ — Աղօթագիրք Նարեկացւոյն, որ հիւանդի մը վրայ կարդալով շուտ կը բժշկուի։ Սուրբ Աւետարան կարդալէ աւելի ազդու կը համարուի։

Նաճար — Հիւսն։

Նամլիկ — Դանակին բերանը, երկաթ մասը։

Նեղուիլ — Նեղը մնալ, սախպուիլ։

Նեղուց — Նեղ, նեղ տուն։

Նեղսիրտ — Սիրտը նեղ մարդ, բարկացոտ։

Նեղանալ — Սրդողիլ, նեղուիլ (հոգւոյ)։ Հոգիս շատ նեղանայ = հոգիս շատ կը նեղուի։

Նստել — 1. Նստել։ 2. Էշ կամ ձի քուրակը ձգել։

Նիշէ — Նաշիհ, անթեփ ցորենին միջուկը։

Նիշտէր — Նշդար։ Նիշտէրել = Նշդարել։

## Շ.

Շալակ — Կռնակով տանելիք բեռ։

Շալլաւու — Նօսր (կտաւեղէնի համար)։

Ճալտուարան — Ճատրուան։

Ճահ — Օղուտ, վաստակ։ Ճահուորցնել = Վաստըկ-ցնել։

Ճամփուր — Հաց եփելու երկաթ ձող, գործիք։

Ճանքարոզ — Ճաղակրատ մարդու խօսք, ունայն խօ-սակցութիւն։

Ճանսխտոր — Տեսակ մը խստոր անպէտ։

Ճան բայնիք — Ձմեռ տանն տղայք կրակարանը մէջ-տեղնին դնելով՝ վրանին հաստ սաւան կ'առնեն, որպէսզի ամէն տեղերնին հաւասար տաքնայ (իթ-համամը)։

Ճիլաէն — Ոչխարի ստամոքս։

Ճիրէ — Թութի քամուած հիւթ։

Ճլիւ — Թութին քամուած ցամաք մասը։

Ճիւառ — Անուն աներևոյթ էակի, որ երբեմն մար-դիկ խաբելով (ծանօթ մարդու կերպարանք մըտ-նելով) հեռաւոր տեղեր կը տանի. այս միջոցին եթէ խաբուողը խաչքրելով «յանուն Յիսուսի Քրիստոսի» ըսէ՝ կ'ազատի վտանգէն, եթէ ոչ բարձր լերան մը գլուխը հանուելով վար կը ձգուի։

Ճիփել — Ճփել, տրորել։

Ճորվա — Մածունով, կաթով կամ ոսպով կերակուր՝ նօսր։

Ճառ — Մէզ։ Ճռել = միզել։

Ճրիք — Պաղ ատեն քիթէն վազած ջուր։

Ճրուք — Օրանի մանկանց մզուքը հողին մէջ։

Ճրբիկ — Ցեխոտ ատեն լաթի վրայ ցայտող տիղմ։

Ճրթիկ — Ցաւած աչքի չոր, աճքի ջուր։

Ճոր — Աչքի ջուրը պնդանալով դեղնագոյն հիւթ եղած։

Ճլլի — Վիզ։

*Շղուա* — Մատաղ տանկ կամ ճիւղ։
*Շերեփ* — Շերեփ։ Շերեփով խառնել — Խառնակութիւն ձգել, գործ հրահրել։
*Շահել* — Ընտանեաց անդամներուն հսկել, կառավարել։
*Շոան* — Մզող, ներքեւը մզող։

## Ո.

*Ոլորտիլ* — Պտտիլ, շրջագայիլ (օ-ի հնչումով)։
*Ոխակալ* (օ-ի պէս) — Քէն պահող, չարամիտ։
*Ուրունկուն* — Իրիկուն։
*Ուխտէնել* — Ուխտել, խոստանալ։
*Ունտ* — Սև փոքր հունտ, հացի վրայ ցանելիք։
*Ուսնիլ* — Սորվիլ, տեղեկանալ։
*Ուտել* — 1. Ուտել։ 2. Մէկուն սակը չտալ։
*Ուք* — Տէ, մանրիկի փոխան։ Էրթամուք գամ = Երթամ տէ գամ։
*Ուֆ* — Ցաւ յայտնելու արտայայտում։ Ուֆ մասս կտրեցաւ։

## Չ.

*Չաթ-չաթ* — Պայթուցիկի ձայն։
*Չախ-չախ* — Խեղանդամ, կաղ։
*Չիր* — Ծիրանի կամ սալորի չորացածը։
*Չորթան* — Չորացած թան։
*Չամչամ* — Լոկնալ. (բառ. մեկ.)։
*Չէմիչ* — Չամիչ։

## Պ.

Պապ — Համբոյր։ Պապնել = Համբուրել։
Պադոտ — Իւղոտ աման։
Պակասաւոր — Կնիկ մարդու կ'ըսուի, մօր որովայ-նը մարդոցմէ պակաս մնալուն համար։
Պակսութիւն — 1. Նուազութիւն, 2. Թերութիւն։ Անուն պակսութիւն = անպատւութիւն։
Պաստեղ — Թութին հիւթէն (շիրէ) շինուած նօսր կը-տաւի տեսակ անուշեղէն (պաստըղ)։
Պակսորդ — Պակաս մնացած մաս։
Պաղիլ — 1. Պաղիլ, 2. մտերմութենէ պաղիլ, դադ-րիլ։
Պամիա — Տնկ. (պամիա)։
Պաչ-պաչիկ — Համբոյր (մնկ. բառ.)։
Պապա — Հայր։
Պատկից — Տանը մօտ դրացի։
Պարտկել — Ցանցանքը գոցել, տեղաւորել։
Պարվանիկ — Տեղը կապոյտ և ոսպնաձև ճերմակով նախշուն շապիկի անուն։
Պաքսիմաթ — Չորացած հաց ճամբորդի համար։
Պեխեր — Պեխ, ընչացք։
Պեհել — Պահել, ծածկել։
Պզտիկ-պզտլիկ — Պզտիկ, փոքր։
Պճլիկ — Պզտիկ (բառ. մնկ.)։
Պլիկ — Բլիթ, չոր (սիւմիւթ)։
Պլլուիլ — Փաթթուիլ։
Պչկալ — Պժգալ, զզուիլ։
Պուրգա — Ծախարակ (Չըյրըգ) ճաղին վրայ ամբա-ցնելիք խողովակ. լարին պէս։
Պունկ — 1. Ծարաւ, 2. արտորանք։ Պունկը իյնալ

= ծարաւիլ։ Պունկ = արտորալ։
Պխերիկ — Բուխերիկ։
Պուրպուտ — Սաստիկ պաղ։
Պուլպուլուկ-Պլպլուկ — կոկոն ծառոց կամ ծաղկանց։

## Ջ.

Ջարուխ — Տրեխ։
Ջաղալա — Ջհասած միրգ, սալոր, ծիրան ևն.։
Ջաղարոք — Ջրաղաց։
Ջխուէր — Ջրհոր։
Ջոմչոմ — Լոգանք (բառ. մնկ.)։
Ջրեմ — 1. Ջուր խմցնել 2. երկաթէ գործիքներ ջրել։
Ջրուաթ — Մէզ։ Ջրուաթ ընել = մզել։
Ջրիշուն — Կուղբ։
Ջրձգնել — Ջուր սրսկել։

## Ռ.

Ռէհէն — Ռահան, հոտաւէտ ծաղիկ մը։

## Ս.

Սազ — Նուագարան։
Սազուիլ — Վրան գլուխը զարդարել, հագուիլ։
Սալ — Խաւիխաւ քար։

Սալվար — Սալար։
Սատկիլ — Զարաչար մեռնիլ։
Սաղմէս — Սաղմոս։
Սխտործեծ — Սխտոր ծեծելիք փայտէ սանդ։
Սամի — Եզան վիզը կապելիք ծուռ ձողեր (սամը)։
Սանտրել — 1. Գլուխը սանտրել, 2. քարը յղկել։
Սանտ — Սանդ։
Սիր — Սեր, մածունի։
Սոփսոփալ — Պարծենալ գիտցածին վրայ։
Սիմ — Մետաղէ կեղծ սրմա (պրս. սիմ բառէն)։
Սիւմպիւլ — Սմբուլ, խաս։
Սղկել — Մանրել, փոշի ընել։
Սմետր — Պլղուրին մանր մասը։
Սակել — Ցորեն կամ այլ ինչ մաքրել, զատել։
Սոթտուիլ — Թեւերը սոթտել։
Սպաննախ — Խոտ, չամին։
Սէկ — Օրրանի մանկանց փիշերը առքէն վրայ դըր-
ուելիք լաթ։
Սմքիլ — Կծկուիլ մնալ։
Սիկլիկ — Լաթի վրայ կարկտանձեւ զարդարանք։
Սրջել — Շրջել, բանի մը միւս կողմը դարձնել։

## Վ.

Վար — Ցած։ Վար մարդ = ստորին մարդ։
Վարպետօրդի — Խելօք, փորձառու։
Վլանում — Լուանում։ Վլաւք = Լաթ լուալ։
Վարդըվառ — Վարդավառի կիւրակէ։
Վրնջալ — Եռ բերցուած տաքն վրայէն քաշուած
ջուան. մալուխ։

# Տ.

Տասկել — Դոցել, ծածկել։
Տապկել — Տապակել։ խորովել։
Տապկուիլ — 1. Խորովուիլ, 2. վշտերէ կրծուիլ։
Տատա — Մեծ հայր, հաւ։
Տատեխ — Քալել։ Տատեխ ըրէ = քալէ (մնկ. բառ)։
Տարոս — Նոյն բառը։ Ամուսնացողի մը՝ տարոսը եթէ մէկուն երթայ ան ալ կը կարգուի։
Տատամփակ — Բոլորովին տափակ։
Տանկօ-տանկլօզ — Անխելք, ապուշ։
Տեղաւորիլ — Տեղ մը հաստատուիլ։
Տաղտրնիլ — Ցրուիլ, բաժնուիլ։
Տորէն — Տունկ որուն արմատը կարմիր ներկ է։
Տափան — Ցորէնը ցանուելէն վերջը յարդարելու համար հաստ և ծանր փայտ (թափան)։
Տանկազան — Երևակայական հրէշ. օրօրոցի մանուկները անհանգիստ եղած կամ լացած ատեններն, «տանկազանը կուգայ» սպառնալիքը կ՚ընեն որպէսզի վախէն ձայներնին կտրի։
Տարվենալ — Բաղդախաղի մէջ կթտուիլ։
Տանծիկէս — Տանձին կիսուած չորացածը։
Տորպակ — 1. Տոպրակ 2. ամորձիք։
Տլքիլ — Մրգեղինաց փտիլ, հատիլ։
Տկել — 1. Լաթեղէնի մը ծայրը շրջել 2. ջուրը լաբել։
Տերփու — Աչքերը (միջոց) խոշոր խարտաց։
Տև — Թև, հէքեաթներու մէջ պատմուած հրէշ։
Տքալ — Հիւանդացած ատեն կոկորդէն ձայն հանել։
Տքուն — Անքուն։
Տոտիլ — Սրդողիլ, սիրտը կոտրիլ։

## Ց.

*Ցանել* — 1. Ցանել, 2. խրատել օգտակար խօսքեր ցանել։ Ինչ ցանիս նէ էն կը քաղիս։
*Ցնթփիլ* — Արտորալ, աճապարել։
*Ցախ* — Ատելի մարդու մօրուք նշանակող։
*Ցրել* — Ապականել, լուծում տալ։
*Ցողել* — Թեթև կերպով լուանալ բան մը։
*Ցօղել-ցօխել* — Ջուրով ամուր լուանալ, ճմռել։
*Ցաթիլ* — Ծագիլ։ Արեգակը ցաթեցաւ = արեգակը ծագեցաւ։
*Ցամաք* — Լոկ։ Ցամաք հացի կարօտ=լոկ չոր հացի։

## Փ.

*Փարատիչ* — Թոնիրին մրխածը լուալու ցնցոտի։
*Փախուկ* — Խենթի պէս (Թախտալըղ)։
*Փռգտալ* — Փռնգտալ, փռնչել։
*Փոխինդ* — Մոխինդ, պլղուրին մանր ալիւրը ռուպով խառնելով տեսակ մը ուտելիք կ'ըլլա ։
*Փսփսալ* — Ականջին տակը ծանր խօսք խօսիլ։
*Փէզէվէնկ* — Գէշ կնկայ միջնորդ։
*Փսիկ* — Պզտիկ կատու։
*Փառաւօն* — Պատիւ սիրող մարդ։

## Ք.

*Քաղքցի* — Քաղաքացի կրթեալ նշանակող։
*Քաղել* — 1. Խոտ կամ պտուղ քաղել 2. պղնձեղէն նօսր ամաններու բերանը մուրճով կռել, թանձրացնելու համար։

Քէմփ — Կնկան քայլը։
Քինծ — Տունկերու հասունը փոշիացնող կով կերակու-
    րի եւ ճաշը կը ցանեն։
Քուլա — 1. Աղուած բամպակի դէզ 2. ձեռնափամպ։
Քթուիլ — Գլուխը պտտիլ, ոչ իլ ապշիլ։
Քթան — Վուշ։
Քանան — 1. Օճախին տակը դրուած սալքարը, 2 լա-
    րով շինուած նստարան։
Քար — 1. Քար 2. խօսք, պատասխան։ Քարը ծոցն
    է = պատասխանը պատրաստ է։
Քաքա — Կըկղանք (մնկ. բառ)։
Քիրիզմիր — Բաղնեաց մէջ շատ պատողներու ոտ-
    քին տակը գոյացած կամ քսուած գէշ կու, որ
    ոտքերը սատրիկ կը ցուց է։
Քրզմտիլ — Նիհարնալ, չէնքը շնորհքը փախչիլ։
Քրզմուած — Շնորհքը փախած։
Քմմել — Լաթը լուալէն ետքը ցամքեցնել, սեղմել։
Քերոց — Երկաթէ կամ փայտէ սուր գործի։
Քերծել — Հացը եփած ատեն ետեւի կողմը կեղուել։
Քերծուած հաց — Ետեւի կողմը կեղուած հաց։
Քէնց-քանց — Բաղդատական մասնիկ։ Իմ գիրքս
    քէնց քուկդ մեծ է = Քուկինէդ մեծ է։

# Օ.

Օրղնել — Օրհնել։ Օրղնուած ջուր — Օրհնուած ջուր։
Օրհմիլ—Բանէ մը մէկէն ի մէկ վախնալ, սարսալ։
Օղորվիլ ըրողվիլ — Տեղ մը սեղմուիլ։

*Օրսկապ — Օրրանի մանկանց քնացած ատեն օրօրուցին վրէն կապուած բարակ գօտի։*

*Օսք — 1. Կաթսայի տաշտի կամ այսպիսի բանի մը տակը գետին գալիք կողմը 2. Թթով մալէզ եփած ատեն պղինձին փակած թանձր մասը։*

# ՎԵՐՋ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

## ՄԱՍՆ Բ.

## ՄԱՍՆ Գ.

### ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՄԻՒՍ ԳԱՒԱՌԱԿԱՑ ԿԱՄ ՎԻՃԱԿԱՑ ՄԱԼԱԹԻՈՅ